## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути) — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1979 թվականի նոյեմբերի 27-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. ԲԱՅԲԱԿՈՎԻ զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1980 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎԻ զեկուցումը «ՍՍՀՄ 1980 թվականի պետական բյուջեի մասին և ՍՍՀՄ 1978 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԸ:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝ ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. ԳՐԻՇԻՆԸ, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎԸ, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ի. Զ. ՍՈԿՈԼՈՎԸ, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Ռ. ՌԱՇԻԴՈՎԸ, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստր ընկ. Ի. Գ. ՊԱՎԼՈՎՍԿԻՆ, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. ԱԼԻԵՎԸ, ՍՄԿԿ Օմսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Ի. ՄԱՆՅԱԿԻՆԸ, Ղազախստանի կոմկուսի Ցելինոգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ե. ՄՈՐՈԶՈՎԸ, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Ա. Պ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԸ:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի առթիվ ընդունեց համապատասխան որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ընկ. Ն. Ա. ՏԻԽՈՆՈՎԻՆ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածությունից փոխադրեց անդամ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻՆ ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1980 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ 1980 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Հիմնականում հավանություն տալ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1980 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ 1980 թվականի պետական բյուջեի նախագծերին:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին՝ վերոհիշյալ նախագծերը մտցնել ՍՍՀՄ Գերագույն սովետի հերթական նստաշրջանի քննարկմանը:

2. Ամբողջովին ու լիովին հավանություն տալ սույն պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված դրույթներին ու հետևություններին, դրանք դնել 1980 թվականի պլանի կատարման, կուսակցության տնտեսական քաղաքականության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի դրույթների իրականացման ուղղությամբ բոլոր կուսակցական, պետական ու տնտեսական մարմինների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեության հիմքում:

3. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ընդգծում է, որ անհրաժեշտ է ապահովել հանրային արտադրության հետագա դինամիկ և համամասնական զարգացումը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու կուրսի հետևողական իրականացումը: Հատուկ ուշադրություն պետք է նվիրվի գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա աշխատանքի արտադրողականության աճին, արտադրության ինտենսիվացման արագացմանը, էկոնոմիկայի պլանավորման և կառավարման կատարելագործմանը:

Անհրաժեշտ է հաստատակամ աշխատանք կատարել վառելիքահումքային բազայի, էներգետիկայի, մետալուրգիայի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության և արդյունաբերական մյուս ճյուղերի հետագա զարգացման ուղղությամբ: Առավելագույնս օգտագործել ռեզերվներն ու հնարավորությունները երկաթուղային տրանսպորտի և տրանսպորտի մյուս տեսակների աշխատանքը բարելավելու համար: Հարկավոր է բարձրացնել հիմնական արտադրական ֆոնդերի փոխհատուցումը, ռացիոնալ ու խնայողաբար օգտագործել աշխատանքային, հումքային, վառելիքաէներգետիկ ու ֆինանսական ռեսուրսները, այն ամենը, ինչ ունի մեր ժողովրդական տնտեսությունը: Ընդլայնել ժողովրդական սպառման լավորակ ապրանքների թողարկումը:

Անհրաժեշտ է այսուհետ ևս անդուլ ուշադրություն նվիրել ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործմանը, որոնք նպատակամղված են գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանն ու հետագա զարգացմանը, էկոնոմիկայի այդ կարևորագույն ճյուղի արտադրանքի արտադրության ավելացմանը: Բարելավել գյուղատնտեսության մեջ տեխնիկայի և գյուղատնտեսության զարգացմանը հատկացվող միջոցների օգտագործումը: Կազմակերպված անցկացնել անասունների ձմեռումը, թույլ չտալ գլխաքանակի նվազում, լավ նախապատրաստվել գարնան դաշտային աշխատանքներին: Ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, անասունների ու թռչունների մթերատվության բարձրացումը, հողագործության ու անասնապահության մթերքների գնումների 1980 թվականի պետական պլանների կատարումն ու գերակատարումը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն անհրաժեշտ է համարում վճռականորեն բարելավել գործերի վիճակը կապիտալ շինարարության մեջ, բարձրացնել կապիտալ ներդրումների արդյունավետությունը, կրճատել նոր սկսվող կառույցների թիվը, ուժերն ու միջոցները կենտրոնացնել գործարկվելիք օբյեկտներում, ինչպես նաև գործող ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման վրա, բարձրացնել շինարարության որակը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում:

Կուսակցական կազմակերպություններին՝ կատարելագործել քաղաքական և կազմակերպական աշխատանքը արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտական հիմնարկություններում, այն նպատակամղելով մասսաների աշխատանքային ակտիվության բոլ ամենայնի զարգացմանը, կազմակերպվածության և կարգապահության բարձրացմանը, կադրերի անձնական պատասխանատվության ուժեղացմանը հանձնարարված գործի, էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի, ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի համար:

Սոցիալիստական լայն մրցություն ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու, տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար:

***

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ բանվորներն ու կոլտնտեսականները, մտավորականությունը, երկրի բոլոր աշխատավորները լենինյան կուսակցության ղեկավարությամբ կբազմապատկեն իրենց ջանքերը մեր հայրենիքի տնտեսական հզորության հետագա ամրապնդման համար մղվող պայքարում, տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին՝ 1980 թվականը, կնշանավորեն կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում ձեռք բերած նոր նվաճումներով:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵԼՈՒՅԹԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

*Ընկերնե՛ր: Այն հարցը, որը մենք այսօր քննարկում ենք, տնտեսական և քաղաքական մեծ նշանակություն ունի: Եկող տարին ոչ միայն այժմյան հնգամյակի եզրափակիչ տարին է, այլև այն բազան, որի վրա կառուցվում է հաջորդ հնգամյակը: Դա կուսակցության XXVI համագումարի ակտիվ նախապատրաստության տարին է: Հենց այդ դիրքերից պետք է մոտենալ կատարված աշխատանքի գնահատմանը և 1980 թվականի խնդիրներին:*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը լսեց ընկերներ Ն. Կ. Բայբակովի և Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումները: Գոհունակությամբ կարելի է նշել, որ հնգամյակի սկզբից կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, մենք զգալիորեն առաջ ենք ընթացել ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման, մեր հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման ասպարեզում:* (Ծափահարություններ):

*Իններորդ հնգամյակի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ երկիրը չորս տարում կստանա 323 միլիարդ ռուբլով ավելի ազգային եկամուտ, 600 միլիարդ ռուբլով ավելի արդյունաբերական արտադրանք: Գյուղատնտեսության համախառն արտադրանքը կաճի ավելի քան 40 միլիարդ ռուբլով:*

*Սովետական մարդկանց ստեղծարար գործունեության թափը հատկապես վառ է դրսևորվում շինարարության վիթխարի մասշտաբներում: Ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումները չորս տարում կանցնեն 500 միլիարդ ռուբլուց: Դա թույլ կտա էապես ընդլայնել հիմնական արտադրական ֆոնդերը: Մինչև 1979 թվականի վերջը դրանք կկազմեն ավելի քան մեկ տրիլիոն ռուբլի և կնորացվեն գրեթե մեկ երրորդով, այդ թվում արդյունաբերության մեջ՝ 30 տոկոսով և գյուղատնտեսության մեջ՝ 41 տոկոսով:*

*Այս տոկոսների ետևում մոտ հազար նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ են: Դրանց թվում են այնպիսի ինդուստրիալ հսկաներ, ինչպիսիք են՝ Սայանա-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանը, Կամայի ավտոմոբիլի գործարանը, «Ատոմմաշ» գործարանը: Դրանց թվում են Լենինգրադի, Կուրսկի, Չեռնոբիլի և Հայաստանի ատոմային էլեկտրակայանները, Լիսիչանսկի և Պավլոդարի նավթավերամշակման գործարանները, Կուրսկի կաշվի գործարանը, Լիպեցկի և Ժիտոմիրի մսի կոմբինատները, Կախովկայի գլխավոր մայր ջրանցքը և շատ ուրիշներ:*

*Շարունակվում է տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների դինամիկ զարգացումը: Չորս տարում Արևմտա-Սիբիրական, Բրատսկի, Պավլոդար-Էկիբաստուզի, Օրենբուրգի, Նիժնեկամսկի և այլ կոմպլեքսներ ապահովեցին նավթի ու գազի հանույթի ամբողջ աճը, էլեկտրաէներգիայի արտադրության, երկաթի հանքաքարի, ածխի հանույթի, բեռնատար ավտոմոբիլների և տրակտորների արտադրության զգալի մասը: ԲԱՄ-ում տեղադրվել է ավելի քան 1.500 կիլոմետր երկաթուղագիծ:*

*Հնգամյակի առաջին օրերից շեշտը դրվեց ժողովրդական տնտեսության*



*բազային ճյուղերի վրա՝ ավելացավ սև և գունավոր մետաղների, էլեկտրաէներգիայի արտադրությունը, ածխի ու նավթի հանույթը: Այսպես, այս տարի կարդյունահանվի 585 միլիոն տոննա նավթ (ներառյալ գազի կոնդենսատը), կամ 94 միլիոն տոննայով ավելի, քան 1975 թվականին: Արագ աճում է գազի հանույթը, որն այդ նույն ժամանակամիջոցում կավելանա 40 տոկոսով և կանցնի 400 միլիարդ խորանարդ մետրից: Էլեկտրաէներգիայի արտադրությունը կաճի 20 տոկոսով և կկազմի 1.245 միլիարդ կիլովատ-ժամ:*

*Տեխնիկական առաջընթացը որոշող ճյուղերի առավել արագ զարգացման հաշվին կատարելագործվել է արդյունաբերական արտադրության կառուցվածքը: Եթե արդյունաբերության արտադրանքի ծավալը 1979 թվականին, 1975 թվականի համեմատությամբ, ավելանում է 20 տոկոսով, ապա մեքենաշինության և մետաղամշակության մեջ այն կաճի 40 տոկոսով, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության մեջ՝ 25 տոկոսով:*

*Աճել է ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը. է՛լ ավելի հագեցված է դարձել կուլտուր-կենցաղային առարկաների շուկան:*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը բոլոր հիմքերն ունի բարձր գնահատելու մեր ինդուստրիայի առաջավորների, արդյունաբերության բոլոր ճյուղերի լավագույն կոլեկտիվների աշխատանքը:* (Ծափահարություններ):

*Հետևողականորեն իրականացվել է կուսակցության ագրարային քաղաքականությունը: Գյուղն ստացավ 1,5 միլիոն տրակտոր, 426 հազար հացահատիկի կոմբայն, ավելի քան 1 միլիոն բեռնատար ավտոմոբիլ, 317 միլիոն տոննա հանքային պարարտանյութ, ավելի քան 7 միլիարդ ռուբլու մեքենաներ անասնապահության և կերի արտադրության համար: Գյուղատնտեսությունը էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտոր դարձնելու տեմպերի մասին համոզիչ կերպով վկայում է նաև այն փաստը, որ աշխատանքի էներգազինվածությունը կաճի 1,4 անգամ:*

*Դրա շնորհիվ մենք կարողացանք ավելացնել գյուղատնտեսության մթերատվությունը, ավելի պակաս ծախսումներով հաղթահարել եղանակի քմահաճույքները, որոնցից առանձին տարիներ տուժում են մեր երկրի գլխավոր շտեմարանները: Գյուղում կատարված փոփոխությունները, կուսակցության եռանդն ու կամքը, ժողովրդի քաջարի աշխատանքը թույլ տվեցին չորս տարում հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը հասցնել 209 միլիոն տոննայի, որը գրեթե 27 միլիոն տոննայով ավելի է, քան իններորդ հնգամյակում: Նույնիսկ ներկա՝ շատ դժվարին տարում հավաքվեց 179 միլիոն տոննա հացահատիկ:*

*Համաժողովրդական շնորհակալություն Ղազախստանի աշխատավորներին: Երկրի շտեմարաններում արդեն կա 1 միլիարդ 261 միլիոն փութ ղազախստանյան լավորակ հացահատիկ:* (Երկարատև ծափահարություններ):

*Պլանները հաջողությամբ կատարեցին և հացահատիկի մթերումների մեջ ծանրակշիռ ավանդ մուծեցին Ռուսաստանի Ֆեդերացիայի Օրենբուրգի, Օմսկի, Չելյաբինսկի, Ամուրի մարզերը, Ուկրաինայի Խմելնիցկու, Տերնոպոլի և Լվովի մարզերը:* (Ծափահարություններ):

*Պետությանն զգալի քանակությամբ հացահատիկ վաճառեցին Ալթայի և Կրասնոդարի երկրամասերի, Բաշկիրական Ինքնավար Հանրապետության տնտեսությունները:* (Ծափահարություններ):

*Լավ արդյունքների հասան Ադրբեջանի, Մոլդավիայի գյուղի աշխատավորները, Ուզբեկստանի, Թուրքմենիայի, Տաջիկստանի բամբակագործները, Ուկրաինայի, Բելոռուսիայի կարտոֆիլաբույծները, Վրաստանի թեյագործները, մի քանի այլ հանրապետություններ ու մարզեր:* (Ծափահարություններ):

*Բարեխղճորեն, հարվածայնորեն էին աշխատում նաև այն հանրապետությունների ու մարզերի շատ կոլտնտեսություններ, սովխոզներ, որոնք առանձնապես տուժեցին վատ եղանակներից:*

*Թույլ տվեք ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի մասնակիցների անունից խորին երախտագիտություն հայտնել գյուղատնտեսության աշխատողներին, քաղաքների բնակիչներին և զինված ուժերի ռազմիկներին, որոնք օգնեցին գյուղին,*

բոլոր նրանց, ովքեր արիաբար պայքարում էին 1979 թվականի բերքի յուրաքանչյուր տոննայի համար։ (Երկարատև ծափահարություններ)։

Ժողովրդական տնտեսության հաջողությունները թույլ տվեցին պլանաչափորեն իրականացնել սոցիալական կարևորագույն հարցերի լուծման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման՝ կուսակցության կուրսը։ Այս իմաստով առավել ընդհանրացնող ցուցանիշը բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն են, իսկ դրանք չորս տարում կաճեն ավելի քան 13 տոկոսով։

Կատարվում են բանվորների և ծառայողների աշխատավարձի, ինչպես նաև կոլտնտեսականների եկամուտների բարձրացման՝ հնգամյակի առաջադրանքները։ Այս տարի ավարտվում է ոչ արտադրական ճյուղերի 31 միլիոն բանվորների ու ծառայողների համար նոր, ավելի բարձր դրույքներ և ռոճիկներ մտցնելը։ Լրացուցիչ արտոնություններ են տրված սև և գունավոր մետալուրգիայի, ածխարդյունաբերության և թերթաքարի արդյունաբերության, տեքստիլ արդյունաբերության, գյուղատնտեսության աշխատողների առանձին կատեգորիաներին։ Բարձրացված է շինարարության մեջ գծային անձնակազմի աշխատավարձը։ Վերջերս որոշվեց ավելացնել աշխատավարձը երկրի արևելյան շրջանների երկաթուղիներում, երկարամյա ծառայության համար վճար մտցնել հաղորդակցության ճանապարհների մինիստրության ձեռնարկություններում։

Աճել է ժողովրդական սպառման ապրանքների վաճառքը։ Մանրածախ ապրանքաշրջանառությունը համադրելի գներով կաճի 18 տոկոսով, կենցաղային սպասարկումների ծավալը՝ մեկ երրորդով։

Հսկայական գումար՝ ավելի քան 410 միլիարդ ռուբլի կկազմեն սպառման հանրային ֆոնդերը։ Այդ միլիարդների հաշվին հայտնի է՝ ավելի լրիվ բավարարել բնակչության սոցիալական և կուլտուրական պահանջմունքները, ապահովել ժողովրդական կրթության հետագա զարգացումը, աշխատավորության բժշկական օգնության և նրա հանգստի կազմակերպման բարելավումը, կենսաթոշակների և կրթաթոշակների վճարումը։

Նախատեսվածից ավելի միջոցներ են հատկացվել բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարությանը։ 423 միլիոն քառակուսի մետր բնակարան՝ այսպիսին է չորս տարիների արդյունքը։ Կառուցվել են բազմաթիվ մանկապարտեզներ, դպրոցներ, հիվանդանոցներ, ակումբներ, գրադարաններ։ Ուսումնասիրման և տարածման է արժանի մոսկվացիների փորձը, որոնք անցել են առավել բարձրահարկ, լրիվ հավաքովի տների շինարարության։ Դա թույլ է տվել ոչ միայն նկատելիորեն իջեցնել ծախսումները, այլև բարելավել բնակարանների որակը, տների ճարտարապետական տեսքը։

Այսպիսով, ընկերնե՛ր, հնգամյակի սկզբից մեծ աշխատանք է կատարվել ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների կողմից մշակված՝ կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականության իրականացման ուղղությամբ։ (Երկարատև ծափահարություններ)։

Հաջողություններն առկա են, և հաջողությունները փոքր չեն։ Դրանցում մենք լավ հիմք ենք տեսնում 1980 թվականի ժողովրդատնտեսական խնդիրների լուծման համար, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ուղիով վստահորեն առաջ ընթանալու համար։ (Ծափահարություններ)։

Պլանի նախագծով նախատեսված տեմպերը ապահովում են ազգային եկամտի, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի բացարձակ աճի էական ավելացումը։ Դրական է նաև այն, որ նախագծով նախատեսվում է ուժերը կենտրոնացնել այնպիսի հիմնական տեղամասերում, ինչպիսիք են էներգետիկան, տրանսպորտը, սև ու գունավոր մետալուրգիան։ Գյուղատնտեսությունը կստանա շատ մեքենաներ և պարարտանյութեր։ Քիչ միջոցներ չեն հատկացվում թեթև և սննդի արդյունաբերությանը։ Կավելանան բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները։ Պահպանվում են բնակարանային շինարարության արագ տեմպերը։ Ավելի լավ կբավարարվի բնակչության պահանջարկը մի շարք ապրանքների նկատմամբ։ Նախատեսվում է ընդլայնել արտաքին տնտեսական կապերը ՏՓԽ-ի երկրների, ինչպես նաև ուրիշ պետությունների հետ։

Ելնելով այս ամենից, կարելի է հիմնականում հավանություն տալ 1980



թվականի պլանի և բյուջեի նախագծերին։ Կարծում եմ, որ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը կպաշտպանի այս հետևությունը և կհամաձայնի այն բանին, որ երկու նախագծերը մտցվեն Գերագույն սովետի նստաշրջանի քննարկմանը։ (Ծափահարություններ)։

Բայց ասվածը արդյոք նշանակո՞ւմ է, թե մենք լրիվ բավարարված ենք պլանի նախագծով և չորս տարվա աշխատանքի արդյունքներով։ Ո՛չ, չի նշանակում։ Ներկայացված նյութերից երևում է, որ մի շարք ուղղություններում 1980 թվականի առաջադրանքները հնգամյա պլանից ցածր են։ Պահպանվում է լարվածությունը ժողովրդական տնտեսության որոշ տեղամասերում։

Չի կարելի, իհարկե, հաշվի չառնել այն օբյեկտիվ դժվարությունները, որոնց առջև կանգնեց էկոնոմիկան 1979 թվականին, որը, թերևս, ամենաբարդն էր տասներորդ հնգամյակում։ Բայց եթե խոսելու լինենք տնտեսության մեջ նեղ տեղերի պահպանման և թերությունների գլխավոր պատճառի մասին, ապա դա այն է, որ արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հետագա բարձրացման բնագավառում չհաջողվեց առաջ ընթանալ այնպես, ինչպես նախատեսվում էր պլանով։

Բնավ էլ ամենուրեք չէ, որ մինիստրություններն ու գերատեսչությունները կարողացել են հաղթահարել իներցիայի ուժը, վճռականորեն մինչև վերջ հասցնել ամբողջ աշխատանքի շրջադարձը դեպի որակը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, լավագույն վերջնական արդյունքների ձեռքբերումը։

Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվում են վիթխարի միջոցներ։ Երկիրը աշխարհում առաջին տեղն է դուրս եկել վառելիքի և հումքի շատ տեսակների արդյունահանմամբ, չուգունի, պողպատի, ցեմենտի, հանքային պարարտանյութերի արտադրությամբ, մի ամբողջ շարք այլ ցուցանիշներով։ Անընդհատ մեծացվում են արտադրական ֆոնդերը, ներգրավվում նորանոր աշխատանքային ռեսուրսներ։ Բայց ահա մենք վերջնական արդյունք ավելի քիչ ենք ստանում, քան պետք է ստանայինք, քան թույլ են տալիս մեր հնարավորությունները։ Այստեղից էլ անհամամասնությունները, դեֆիցիտները, անբավարար ռեզերվները։

Այդ կապակցությամբ կկամենայի կանգ առնել առանձին պրոբլեմների վրա, գլխավորապես այն տեսանկյունից, թե դրանց լուծման համար ինչ է անհրաժեշտ անել արդեն 1980 թվականին և տասնմեկերորդ հնգամյակում։

Այստեղ, ընկերնե՛ր, արդեն խոսեցին թերությունների մասին։ Կսկսեմ այն հարցից, որ հատուկ սրություն է ստացել։ Դա տրանսպորտի, առաջին հերթին՝ երկաթուղային տրանսպորտի աշխատանքն է։ Իհարկե, տրանսպորտը միշտ կարևոր դեր է խաղացել, իսկ այժմ, այն պայմաններում, երբ արդյունաբերությունը աննախընթաց կերպով շարժվում է դեպի Սիբիր ու Հեռավոր Արևելք, երբ խորանում են մասնագիտացումն ու կոոպերացումը, նրա նշանակությունը է՛լ ավելի է մեծանում։

Տեսնելով առաջացած դժվարությունները, կուսակցության Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1977 թվականի հունվարին հատուկ որոշում ընդունեցին ընթացիկ հնգամյակում երկաթուղային տրանսպորտի զարգացման միջոցառումների մասին։ Բայց ոչ հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը, ոչ էլ պետպլանը չապահովեցին նրա պատշաճ կատարումը։ Հետևանքը եղավ այն, որ կոպիտ կերպով խախտվում են կարևորագույն բեռների փոխադրումների պլանները։ Դրանցից են վառելիքը, հանքաքարը, բնափայտը, հացահատիկը։ Դրա համար պատասխանատվության քիչ բաժին չի ընկնում ընկ. Ի. Գ. Պավլովսկու, ինչպես նաև մինիստրության մյուս ղեկավարների վրա։ Նրանք պարտավոր են, շեշտեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, անհապաղ կարգուկանոն հաստատել երկաթուղիներում, ամրապնդել կարգապահությունը բոլոր օղակներում։ Շտապ միջոցառումներ են պահանջում ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի համակազմի համալրումը, վագոնների նորոգման ընդլայնումն ու բարելավումը, կայարանային տնտեսության զարգացումը։ Անհրաժեշտ է նաև խիստ բարձրացնել արդյունաբերության, շինարարության, առևտրի ձեռնարկությունների պատասխանատվությունը վագոնները ժամանակին բեռ-

Կշտամբանքի տեղիք են տալիս մեքենաների ու սարքավորումների մի քանի տեսակների տեխնիկական մակարդակը և որակը։ Կան փաստեր, երբ արտադրության համար ընդունվում են կառուցվածքային թերամշակումներով մեքենաներ։ Թարմ օրինակը Չեբոքսարիի տրակտորի գործարանի, այն նորակառույց գործարանի արտադրանքն է, որի հետ մեծ հույսեր էին կապվում։ Սակայն ծանր տրակտորների առաջին արտադրաքանակը քիչ պիտանի եղավ այն աշխատանքներում, որոնց համար դրանք հիմնականում նախատեսվում էին։ Դրա պատասխանատվությունը կրում են մինիստր ընկ. Ի. Ֆ. Սինիցինը և գործարանի դիրեկտոր ընկ. Վ. Տ. Դեսյատովը։

Որոշ մեքենաշինական գործարաններ շատ են ձգձգում նոր, ժամանակակից արտադրանքի թողարկման նպատակով կատարվող վերակառուցումը։ Ձգձգվեց, մասնավորապես, Պավլոդարի տրակտորի գործարանի փոխադրումը «Կ—701» հզոր տրակտորի թողարկմանը, որն իրեն լավ է դրսևորել խոպանի հողագործության պայմաններում։

Թե՛ մեքենաշինության մեջ և թե մետալուրգիայում կան մի շարք ուղղություններ, որտեղ նվազագույն ծախքերով կարելի է ստանալ ժողովրդատնտեսական զգալի վերջնական արդյունքներ։ Ընկ. Լ. Ի. Բրեժնևը ուշադրությունը բևեռեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է բարձրացնել մետաղաարտադրանքի ամրությունը, ուժեղացնել պայքարը կոռոզիայի դեմ, ավելի արագորեն զարգացնել փոշեմետալուրգիան, ինչպես նաև մետաղի փոխարինիչների արտադրությունը։ Այդ ամենը կատարվում է կիսատ-պռատ, ես կասեի, երկչոտաբար։

Ժողովրդական տնտեսության պահանջմունքները բավարարելու համար պետպլանը, համապատասխան մինիստրությունները պետք է ապահովեն, որ տասնմեկերորդ հնգամյակում վճռական շրջադարձ կատարվի դեպի մետաղի որակն ու խնայողությունը։ Այլ ուղի չկա։

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը մեծ ուշադրություն նվիրեց պետական այնպիսի մի խոշոր պրոբլեմի, ինչպիսին է կապիտալ շինարարությունը։ Ամեն տարի դրան հատկացվում է ազգային եկամտի ավելի քան մեկ հինգերորդ մասը, և այդ միջոցների օգտագործումից են կախված թե՛ մեր էկոնոմիկայի ցուցանիշները, թե՛ երկրում գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը, և թե արտադրության արդյունավետությունը։

Մենք շատ ենք կառուցում։ Դրա հետ մեկտեղ կապիտալ շինարարության ասպարեզում տիրող իրավիճակը մեզ չի կարող գոհացնել։ Հաճախ շինարարության ժամկետները ձգձգվում են։ Թերավարտ շինարարությունը զգալիորեն գերազանցել է նորմատիվները։ Ռեսուրսները հաճախ հատկացվում են ամենևին ոչ առաջնահերթ կառույցների։ Այստեղ թույլ են տրվում ոչ միայն սխալներ, տեղայնություն, այլև բացահայտ կամայականության դեպքեր։

Կենտրոնական կոմիտեն որոշ կոնկրետ փաստեր ունի և կհանձնարարի հետաքննել դրանք։

Երկրկոմների, մարզկոմների, քաղկոմների քարտուղարները պարտավոր են համապատասխան հետևություններ անել, վճռականորեն խափանել կապիտալ ներդրումների վատնումը, պետական կարևոր օբյեկտներից բանվորներին կտրելը և նյութեր վերցնելը։

Վերլուծությունը ցույց է տալիս, այնուհետև նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, որ մի շարք դեպքերում հարակից ճյուղերում կարողությունների շինարարությունը կատարվում է չհամաձայնեցված։

Հսկայական ջանքերի գնով կառուցվել են պարարտանյութերի արտադրության խոշորագույն գործարաններ։ Իսկ հիմա պարզվում է, որ ընկ. Լ. Ա. Կոստանդովի մոտ անգործության են մատնված միլիոնավոր տոննա պարարտանյութերի արտադրական կարողություններ։ Բանից պարզվում է, հումքն ու գազը չեն բավականացնում։ Իսկ ի՞նչ էին մտածում առաջ։ Ինչու էին դրամ տալիս գործարանների կառուցման համար, եթե վստահ չէին, որ դրանք կարող են աշխատել։ Մենք իրավունք ունենք այս հարցը տալու թե՛ ընկ. Կոստանդովին և թե պետպլանի աշխատողներին։

Կամ ուրիշ օրինակներ։ Ռուզաևկայի և Պենզայի քիմիական մեքենաշինության (մինիստր՝ ընկ. Կ. Ի. Բրեխով) գործարանների վերջին տարիներս



գործարկված կարողությունները 1979 թվականի առաջին կիսամյակում օգտագործվել են կեսից էլ պակաս չափով։ Հիմնական պատճառը կադրերով ապահովված չլինելն է։ Եվ դարձյալ հարց է ծագում. մի՞թե չէր կարելի նախապես մտածել կադրերի ներգրավման մասին։

Այն տպավորությունն է ստեղծվում, որ պետպլանը պատշաճ կերպով չի հակազդում գերատեսչականության և տեղայնության ճնշմանը, որոնք թուլացնում են պլանի ուժը, խանգարում էկոնոմիկայի համամասնական աճին։ Պետպլանի ղեկավարությունը պետք է մեծ հաստատակամություն ցուցաբերի պաշտպանելու համապետական շահերը։ Եվ դրանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն լիովին կաջակցի նրան։ (Ծափահարություններ)։

1980 թվականի պլանի նախագիծը քննարկելիս առաջարկվեց կրճատել նոր սկսվող կառույցների թիվը, առավելագույնն անել գործարկվելիք օբյեկտները ավարտելու և կարողությունները շուտափույթ շահագործման հանձնելու համար։ Այժմ խնդիրները այսպիսիք են։

Արտադրական օբյեկտներ կառուցելու մասին որոշումները պետք է ընդունվեն միայն դրանց ապագա անխափան աշխատանքն ապահովող բոլոր գործոնները՝ հումքը, տրանսպորտը, աշխատուժը, ռեալիստորեն հաշվի առնելուց հետո։ Իսկ երբ որոշումն ընդունված է, պետք է կապիտալ ներդրումները, նյութական ու ֆինանսական ռեսուրսները նորակառույցներին հատկացնել նորմատիվներին լրիվ համապատասխան։

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը վստահություն հայտնեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի այն մասնակիցները, որոնք ուղղակի կամ անուղղակի կապված են կապիտալ շինարարության հետ, ամենայն պատասխանատվությամբ կմոտենան ժողովրդական տնտեսության այդ ոլորտում ծառացած խնդիրների կատարմանը։ (Ծափահարություններ)։

Այնուհետև ընկ. Լ. Ի. Բրեժնևն անցավ բնակչությանը պարենամթերք, հատկապես միս մատակարարելու պրոբլեմներին։ Նա ասաց. բարձրորակ սննդամթերքի անխափան մատակարարման ապահովումը, բավարար քանակությամբ և լայն տեսականիով արտադրելը ամենակարևոր խնդիրներից մեկն է, որոնք բխում են աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու կուսակցության կուրսից։

Լուծելով այդ խնդիրը, մենք, բնականաբար, շեշտը դրել ենք գյուղատնտեսության վերելքի վրա։ Միայն վերջին երեք հնգամյակների ընթացքում գյուղում ներդրվում է մոտ 400 միլիարդ ռուբլի։ Գյուղին զգալի կապիտալ ներդրումներ կհատկացվեն նաև տասնմեկերորդ հնգամյակում։

Միաժամանակ մենք իրավունք ունենք, մենք պետք է բարձրացնենք պահանջկոտությունը միջոցների ու տեխնիկայի ռացիոնալ օգտագործման համար, այն բանի համար, որ գյուղում նյութատեխնիկական բազայի ամրապնդումը է՛լ ավելի շոշափելիորեն անդրադառնա երկրին պարենամթերք մատակարարելու մակարդակի վրա։

Բոլորին հայտնի է, թե ինչքա՜ն բարդ ճյուղ է անասնապահությունը։ Բայց չէ որ դրա համար նաև շատ բան է արվում։ Թեև հացահատիկի, որպես սնդի, նկատմամբ անմիջական պահանջմունքները վաղուց արդեն լիովին բավարարվում են, մենք շարունակում ենք ավելացնել հացահատիկային կուլտուրաների արտադրությունը, ավելացնել՝ անասնակերի համար։ Կառուցվել են հազարավոր նոր ֆերմաներ և կոմպլեքսներ։ Շատ մեծ է նաև անասունների գլխաքանակը։ Մի քանի տարի առաջ ստեղծվեց հատուկ ճյուղ, որը մեքենաներ է արտադրում անասնապահության և կերարտադրության համար։

Իսկ ահա փոխհատուցումն առայժմ ակնհայտորեն ցածր է։ Արդեն մի քանի տարի մսի արտադրությունը շատ դանդաղ է աճում։ Պատճառների թվում նշում են կերերի անհաշվեկշռվածությունը ըստ սպիտակուցների։ Կասկածի տակ չեմ դնում այդ պրոբլեմի առկայությունը։ Բայց վստահ եմ, որ մեր ամբողջ տնտեսության ներկայիս մակարդակի դեպքում, անասնապահության համար կատարվող ծախսերի ներկայիս մասշտաբների դեպքում կարելի է շատ ավելի արագորեն լուծել այդ պրոբլեմը, ինչպես նաև մյուս պրոբլեմները։

Անասնապահության զարգացմանը նպատակամղված կոնկրետ միջոցա-

ումներն ամենայն խորությամբ քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվա-
կանի հուլիսյան պլենումում։ Գյուղատնտեսական ճյուղի ղեկավարների, տե-
ղական կուսակցական և սովետական մարմինների, մասնագետների, անաս-
նապահության բոլոր աշխատողների կարևորագույն պարտականությունն է
կատարել պլենումի որոշումները, զգալիորեն ավելացնել մսի արտադրու-
թյունը երկրում։ (Ծափահարություններ)։

Այնուհետև ընկ. Լ. Ի. Բրեժնևը մի քանի նկատառումներ հայտնեց գյուղա-
տնտեսական արտադրանքի որակի վերաբերյալ։ Թերևս քիչ գտնվեն այնպիսի
ճյուղեր, որտեղ վերջնական արդյունքները այդ աստիճան պայմանավորված
լինեն որակով։ Սակայն պետք է խոստովանել, որ մինչև այժմ կոլտնտեսու-
թյուններն ու սովխոզները պատշաճ ուշադրություն չեն դարձնում գործի այդ
կողմին։ Նրանք, ըստ երևույթին, բավականաչափ չեն էլ խթանվում պայքարելու
մթերքի բարձր որակի, նրա պահպանության համար։ Հավանաբար հասունացել
է թե՛ նյութական և թե բարոյական նման խթանները կատարելագործելու
հարցը։ Պլանային ցուցանիշները, ինչպես նաև գները պետք է շատ ավելի մեծ
չափով որոշվեն որակով։

Գյուղատնտեսության մեջ շատ բան, ինչպես հայտնի է, կախված է
մթերքի նախնական մշակումից, որը կատարվում է բերքը հավաքելուց անմի-
ջապես հետո, այն է չորացումից, տեսակավորումից, մաքրումից։ Եթե դա չի
արված, կամ վատ է արված, ապա կորուստները, որակի խիստ անկումը ան-
խուսափելի են դառնում։

Բացի այդ, հավաքված մթերքի (հատկապես բանջարեղենի և մրգի) մի
մասը, որը պիտանի չէ փոխադրելու և երկար պահելու համար, կարող է անմի-
ջապես վերամշակվել, դրանցից կարելի է պատրաստել հյութեր և տոմատի մա-
ծուկ, աղ դնել, թթու դնել և այլն։ Մինչդեռ կոլտնտեսություններում և սովխոզ-
ներում նախնական մշակման կարողությունները մնում են շատ թույլ։ Նշանա-
կում է, պետք է ավելացնել պետական ու կոլտնտեսային ներդրումների այն
բաժինը, որը հատկացվում է այդ կարողությունների ստեղծման համար։ Առա-
ջավոր տնտեսությունների փորձը համոզչորեն հաստատում է նման մոտեց-
ման արդյունավետությունը։

Էական բարելավման կարիք ունի նաև պետության գնած մթերքի պահ-
պանման սիստեմը։ Դրա մի մասը ավելի ձեռնտու է մի որոշ ժամանակ պահել
անմիջականորեն կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Այդ միջոցով կա-
րելի է ոչ միայն բարձրացնել արտադրանքի որակը և կրճատել կորուստները,
այլև նվազեցնել կենտրոնացված պահեստների բեռնվածությունը, ավելի հա-
վասարաչափ օգտագործել տրանսպորտը և աշխատուժը։ Հետևաբար, պետք
է ընդլայնել պահեստների ու մթերանոցների շինարարությունը կոլտնտեսու-
թյուններում և սովխոզներում։

Վերջին հաշվով սպառողը գյուղատնտեսական մթերքի թե՛ որակի և թե
քանակի մասին դատում է ըստ այն բանի, ինչ տեսնում է և ինչ կարող է գնել
խանութում։ Ահա թե ինչու հարկավոր է հասնել այն շղթայի բոլոր օղակների
անխափան, համաձայնեցված աշխատանքին, որը դաշտը կամ ֆերման կա-
պում է սպառողի հետ։ Այստեղ հավասարապես կարևոր է ամեն ինչ՝ տրանս-
պորտն ու տարայի արտադրությունը, մթերքի պահպանումն ու մշակումը,
վերջապես, առևտուրը։ Պետք է ավելի եռանդագին կատարել ՍՄԿԿ Կենտկոմի
վերջին երկու պլենումների ցուցումները, հաղթահարել արմատացած թերու-
թյունները, որոնք գոյություն ունեն այդ օղակներից գրեթե յուրաքանչյուրում։

Պահանջվում է բարելավել սննդի և կաթնեղենի արդյունաբերության աշ-
խատանքը։ Օրինակ, ինչո՞ւ է կրճատվում հացաբուլկեղենի և հրուշակեղենի
տեսականին։ Կամ ինչո՞ւ են կաթնամթերքների, կարագի, պանրի մատակա-
րարման ընդհատումներ թույլ տրվում այն դեպքում, երբ հսկայական քանա-
կությամբ կաթ է արտադրվում։ Կարծում եմ, որ ընկերներ Վ. Պ. Լեյնը և Ս. Ֆ.
Անտոնովը կհասկանան, որ այս հարցերը հասցեագրված են նախ և առաջ
իրենց, և գործնական լուծում են պահանջում։

Կյանքը ցույց է տալիս, նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, որ գյուղատնտեսական
արտադրությունը չի կարելի դիտել սննդամթերքի մթերումների, փոխադր-



ման, պահպանման, վերամշակման և առևտրի սիստեմից անջատ։ Այդ ամենը
մի միասնական պարենային կոմպլեքս է։ Որպես միասնական ամբողջություն
էլ այն պետք է պլանավորվի։ Կապիտալ ներդրումների և մյուս ռեսուրսների
բաշխումը պետք է ենթարկել վերջնական նպատակին՝ բնակչության պարենա-
մթերքի մատակարարումը բարելավելուն։ Այն որպես միասնական կոմպլեքս
էլ պետք է կառավարել, ապահովելով, որ մթերքը անխափան ու արագ արտա-
դրությունից հասնի վաճառասեղաններ։ Պլանային ցուցանիշների, նյութա-
կան խրախուսման սիստեմը պետք է կառուցել այնպես, որ յուրաքանչյուր
օղակի աշխատողներ շահագրգռված լինեն հնարավորին չափ ավելի մեծ քա-
նակությամբ և բարձրորակ մթերք հասցնելու սպառողին։ Հենց այդ դիրքերից
էլ պետք է լուծվի պարենային հարցը նոր հնգամյակում։ (Ծափահարություն-
ներ)։

Կենտրոնական կոմիտեին անհանգստացնում են նաև բնակչությանը որոշ
արդյունաբերական ապրանքներ մատակարարելու գործում եղած ընդհատում-
ները։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ծավալը, իհար-
կե, աճում է։ Բայց որակի և տեսականու նկատմամբ պահանջները ակնհայտո-
րեն առաջ են անցնում նրանից, ինչ առաջարկում է արդյունաբերությունը։

Վերջին ժամանակներս ՍՄԿԿ Կենտկոմում, թերթերի խմբագրություննե-
րում նամակներ ու գանգատներ են ստացվում այնպիսի ապրանքների առև-
տրում եղած ընդհատումների մասին, որոնք, չգիտես ինչու, ընդունված է ան-
վանել «մանրուք», այն է՝ հասարակ բուժամիջոցներ, օճառ, լվացքի փոշի,
ատամի խոզանակ ու մածուկ, ասեղ, թել, երեխայի բարուրներ, թեթև արդյու-
նաբերության այլ ապրանքներ։ Սա, ընկերնե՛ր, աններելի է։

Մեղավոր են այդ ապրանքներն արտադրող մինիստրությունները և ամե-
նից առաջ թեթև արդյունաբերության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Ն. Ն.
Տարասով)։ Մեղավոր է նաև առևտրի մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Ա. Ի.
Ստրուև)։ Առևտրի ուղղակի պարտականությունն է ավելի ակտիվորեն ներգոր-
ծել արտադրության վրա, հասնել այն բանին, որ առևտուրը արդյունաբերու-
թյունից ստանա սպառողին իրոք հարկավոր ապրանքներ, ավելի օպերատիվո-
րեն մանևրի ռեսուրսներով։

Դրությունը անհրաժեշտ է շտկել արդեն 1980 թվականին։ Պետք է գտնել
անփութության, անպատասխանատվության, անձեռնահասության հետևանքով
առաջացող ամեն մի «դեֆիցիտի» կոնկրետ մեղավորներին և պատժել նրանց։
(Բացականչություններ՝ ճիշտ է։ Ծափահարություններ)։

ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների և ժողովրդական վերահսկո-
ղության անցկացրած ստուգումը ցույց է տալիս, որ ամենօրյա պահանջարկ
վայելող շատ ապրանքներ կարելի է հաջողությամբ արտադրել տեղերում։
Ուստի մինիստրությունների և գերատեսչությունների, պլանային ու առևտրա-
կան կենտրոնական մարմինների պատասխանատվությունը բարձրացնելու
հետ մեկտեղ լայն սպառման ապրանքների արտադրությամբ ավելի հանգա-
մանորեն, իսկ որ գլխավորն է՝ ձեռներեցությամբ պետք է զբաղվեն տեղական
արդյունաբերությունը, սպառողական կոոպերացիան, սովետներն ու նրանց
մշտական հանձնաժողովները։ Դա թույլ կտա ավելի լավ, ավելի արդյունավետ
օգտագործել տեղական հումքը, հատկապես հեռավոր շրջաններում։

Ամփոփելով ասվածը, ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ, անդրադառնալով
որոշ պրոբլեմների, ինքը մտադիր էր ոչ միայն մեկ անգամ ևս մատնանշելու
առկա դժվարությունները։ Գլխավորն այլ բան է. որ աշխատանքի ինչ տեղա-
մաս էլ վերցնես, ամենուրեք տեսնում ես հաջող առաջընթացի հսկայական
հնարավորություններ, վիթխարի ռեզերվներ։ Բայց դրանք օգտագործելու հա-
մար անհրաժեշտ է բարձրացնել կառավարման մակարդակը, բառիս ամենա-
լայն իմաստով։

Գալիք հնգամյակում հարկ կլինի խոշոր փոփոխություններ իրականացնել
էկոնոմիկայի կառուցվածքի և համամասնությունների մեջ, կատարելագործել
ստեղծված ճյուղային և տերիտորիալ կապերը, ի հայտ բերել այն օղակները,
որտեղ նվազագույն ծախսումների գնով կարելի է ստանալ առավելագույն և
արագ արդյունք։ Այս ամենը պետք է խորապես կշռադատի, հաշվարկի և կոնկ-

րեր պլանային առաջադրանքների ու թվերի լեզվով թարգմանի Միության պետպլանը՝ երկրի պլանային բարձրագույն մարմինը։ Հետևապես, մենք ամենքս շահագրգռված ենք բարձրացնելու պետպլանի դերը, բարելավելու նրա աշխատանքը։ ՍՄԿԿ Կենտկոմը ավելի քան մեկ տարի առաջ որոշում ընդունեց պետպլանի աշխատանքի մասին։ Այդ որոշման պրակտիկ իրականացումը պետք է արագացնել։ Դա կօգնի պետպլանին ավելի լավ նախապատրաստելու նոր հնգամյակը։

Հնգամյակի սկզբունքային հիմքը, շեշտեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը, պարզ է՝ ժողովրդի բարեկեցությունը հետևողականորեն բարձրացնելու համար անհրաժեշտ է կրկնապատիկ, եռապատիկ եռանդով կենսագործել արդյունավետության և որակի բարձրացման՝ կուսակցության կուրսը։ Այդ կուրսը այլընտրանք չունի և այն պետք է անշեղորեն կիրառվի տասնմեկերորդ հնգամյակում։ (Ծափահարություններ): ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի համար կարևոր է կանխավ տեսնել, թե կուսակցության կուրսը, նրա որոշումները կոնկրետ ինչպես է առաջարկվում մարմնավորել պլանային առաջադրանքներում, ինչ կերպ, ինչի հաշվին է առաջարկվում բարձրացնել տնտեսության արդյունավետությունը։ Մենք ուզում ենք իմանալ՝ ինչպես է նախատեսվում լուծել թե՛ գոյություն ունեցող պրոբլեմները, թե՛ այն պրոբլեմները, որոնց մենք կարող ենք բախվել 80-ական թվականներին։ Ուստի ՍՍՀՄ պետպլանին հանձնարարված է հաջորդ տարվա հունվարին ՍՄԿԿ Կենտկոմին ներկայացնել տասնմեկերորդ հնգամյակի ընդհանուր կոնցեպցիան՝ հաշվի առնելով մինչև 1990 թվականն ընդգրկող հեռանկարը։ Ընդ որում՝ առաջադրանք է տրված մշակել գլխավոր պրոբլեմների լուծման ոչ թե մեկ, այլ մի քանի տարբերակ, դրանցից յուրաքանչյուրի պլյուսների և մինուսների օբյեկտիվ գնահատականով։

Ժողովրդական տնտեսության առջև ծառացած հրատապ խնդիրների լուծման գործում, հատկապես հաջորդ հնգամյակի նախաշեմին, կուսակցությունը ակնկալում է մեր գիտնականների՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, հանրապետական և ճյուղային ակադեմիաների, բոլոր գիտահետազոտական ինստիտուտների գործուն օգնությունը։ Ավելի եռանդուն պետք է աշխատի նաև գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն։

Պլանավորումը և ամբողջ տնտեսական մեխանիզմը բարելավելու կարևոր ու կոնկրետ միջոցառումները սահմանված են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներով, որոնք ընդունվեցին ամռանը։

Այդ փաստաթղթերը, որոնք նախապատրաստվեցին ի կատարումն ՍՄԿԿ XXV համագումարի ցուցումների, ՍՍՀՄ նոր սահմանադրության դրույթների, ամբողջ կառավարչական և պլանային գործունեությունը նպատակամղում են ժողովրդատնտեսական վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը, հասարակական աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը։ Տնտեսական մեխանիզմի վերակառուցումը տնտեսական-քաղաքական խոշոր խնդիր է։ Հարկավոր է, որ թե՛ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, թե՛ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունն անդուլ վերահսկեն այդ որոշումների իրականացումը։ Կարևոր է, որ վերադաս մարմինները չսահմանափակեն այն իրավունքները, որոնցով օժտված են ձեռնարկությունները, միավորումները, աշխատավորական կոլեկտիվները։

Խոսելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքային ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը խնդիր դրեց արագացնել ձեռքի աշխատանքի, ամենից առաջ ծանր աշխատանքի մեքենայացումը, ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել կուլտուր-կենցաղային պայմանների նկատմամբ, հատկապես Սիբիրի, Հեռավոր Արևելքի և Ղազախստանի նոր յուրացվող շրջաններում, լրջորեն բարելավել աշխատանքի կազմակերպումը, ժամանակին պատրաստել որակյալ կադրեր։

Վերջին ժամանակներս, նշեց նա, ընդլայնվել է այն պրակտիկան, երբ տեղական մարմինները մարդկանց ձեռնարկություններից ու հիմնարկներից ներգրավում են զանազան աշխատանքների՝ բերքահավաքի, մթերող կազմակերպություններում, շինարարության մեջ, բարեկարգման գործում և այլն։ Որոշ դեպքերում դա գործի համար օգտակար է, այլ դեպքերում՝ ոչ։ Բայց



ամենագլխավորն այն է, որ այս գործում շատ է թույլ տրվում անկազմակերպվածություն, անպատասխանատվություն։ Այստեղից էլ՝ աշխատանքի մեծ կորուստները, ձեռնարկությունների նորմալ աշխատանքի խախտումները, դրանց ղեկավարների ձգտումը «ետ գցելու» ավելորդ աշխատուժը։ Ժամանակն է այստեղ հաստատելու կարգ ու կանոն, վերացնելու դիմազրկությունն ու խնամակալությունը։ Դա վերաբերում է նաև քաղաքի և գյուղի շեֆական կապերի իրականացմանը։ (Ձայներ՝ ճիշտ է։ Ծափահարություններ):

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը մեծ ուշադրություն նվիրեց բոլոր մակարդակներում, աշխատանքի բոլոր տեղամասերում կարգապահության հետագա ամրապնդմանը։ Մեր առջև ծառացած խնդիրները պահանջում են մասնավորապես ուժեղացնել, խստացնել վերահսկողությունը պլանային առաջադրանքների, ընդունված որոշումների կատարման նկատմամբ։

Այլապես մենք ամեն տարի ստիպված կլինենք անդրադառնալ միևնույն հարցերին։ Ելնելով դրանից, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարությունը իր նիստերում ավելի հաճախ կլսի աշխատանքի այս կամ այն ուղղության համար պատասխանատու ընկերներին։ Հավանաբար, նույն կերպ կվարվեն ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, մինիստրություններն ու գերատեսչությունները։ Հուսով եմ, որ ամբողջ ասվածից հետևություններ կանեն նաև հանրապետությունների, երկրամասերի և մարզերի կուսակցական կոմիտեները։

Կան տարբեր աշխատողներ։ Մեր կադրերի մեծ մասը, անտարակույս, կուսակցական, գործիմաց մարդիկ են, որոնք կարողանում են աշխատել, լուծել առաջադրված խնդիրները։ Բայց հանդիպում են նաև այլ կարգի աշխատողներ։ Որքան էլ նրանց հետ խոսես, որքան էլ նրանց բարեխղճության, պարտքի ու պատասխանատվության կոչես, միևնույն է, ոչինչ չի օգնում։ Եվ այստեղ հարկավոր է գործել ավելի վճռաբար, կիրառել այլ միջոցներ, փոխել նրանց, ովքեր գլուխ չեն բերում հանձնարարված գործը, ավելի համարձակորեն առաջ քաշել եռանդուն, ստեղծագործաբար մտածող, նախաձեռնող ընկերների։ (Երկարատև ծափահարություններ):

Մի խոսքով, կարգապահությունը և կարգ ու կանոնը միշտ հարկավոր են։ Իսկ հիմա, երբ վիթխարիորեն աճել են տնտեսավարման մասշտաբները, երբ տնտեսական փոխադարձ կապերի ցանցը դառնում է ավելի ու ավելի բարդ, խիտ ու ճյուղավորված, դրանք առանձնապես հարկավոր են։ Եվ ոչ միայն խոսքեր կարգապահության մասին։ Ոչ միայն կարգ ու կանոնի կոչեր, այլ ամենից առաջ՝ փութաջան, ամենօրյա կազմակերպչական աշխատանք, կատարման հստակ ստուգում, կադրային ճկուն ու կշռադատված քաղաքականություն։ Անհրաժեշտ է օպերատիվ, սուր կերպով արձագանքել տնտեսավարության դրսևորումներին, սահմանված պլանների, կանոնների ու նորմաների խախտումներին։ Հուսով եմ, որ այսպիսի հարցադրումը լիակատար ըմբռնում և աջակցություն կգտնի պլենումի մասնակիցների կողմից։ (Երկարատև ծափահարություններ):

ՍՍՀՄ Գերագույն սովետի առաջիկա նստաշրջանում ենթադրվում է քննարկել մի շարք կարևոր օրենքներ՝ ժողովրդական վերահսկողության, գերագույն դատարանի, դատախազության, արբիտրաժի, փաստաբանական ծառայության մասին։ Այդ օրենքները, անտարակույս, կնպաստեն երկրում օրինականության և իրավակարգի ամրապնդմանը։ Ուրեմն և՝ դրանք ամենաանմիջական առնչություն կունենան նաև այն հարցերի հետ, որոնք մենք այսօր քննարկում ենք։ Չէ որ օրենքների խստիվ, անշեղ կատարումը ամբողջ տնտեսական մեխանիզմի հաջող գործունեության անհրաժեշտ նախադրյալներից մեկն է։ Կուսակցական մարմինների խնդիրը, կոմունիստների խնդիրն է՝ պարզաբանել նոր օրենքների բովանդակությունը, խոր դեմոկրատիզմը, ակտիվորեն օգնել դրանց կենսագործմանը, մասսաներին պայքարի հանել ամենափոքր ապօրինությունների, սովետական սոցիալիստական իրավակարգից կատարվող ամենափոքր շեղումների դեմ։

Կկամենայի հատկապես ընդգծել այն խնդիրների պատասխանատվությունը, որոնք դրված են ժողովրդական վերահսկողության մարմինների առջև։ Նկատի է առնվում նոր օրենքի կապակցությամբ ընդունել հատուկ որոշում,

որի նպատակը կլինի այն, որպեսզի ժողովրդական վերահսկողությունն է՛լ ավելի մեծ աջակցություն ստանա կուսակցական մարմիններից, որպեսզի ժողովրդական վերահսկիչների ամբողջ բազմամիլիոնանոց բանակը ավելի ակտիվորեն ներգրավվի տնտեսական աշխատանքի մակարդակի բարձրացման, պլանային առաջադրանքների կատարման համար մղվող ընդհանուր պայքարի մեջ։

Վերջում ընկ. Լ. Ի. Բրեժնևը անդրադարձավ ընթացիկ ժողովրդատնտեսական խնդիրների առնչությամբ կազմակերպական, մասսայական-քաղաքական, գաղափարախոսական աշխատանքի բնույթին։ Այդ աշխատանքի գլխավոր ուղղություններն են՝

սոցիալիստական մրցության բոլոր ամենայնի ծավալումը, նրա կողմնորոշումը դեպի որակական ցուցանիշները, պայքարը հանդիպական պլանների կատարման համար.

աշխատանքի արտադրողականության բարձրացմանը նպաստող՝ առաջավոր փորձի, աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների պաշտպանումն ու տարածումը.

խնայողության ռեժիմի հետևողական կենսագործումը, նյութական և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը.

պայքարը աշխատանքային կարգապահության խախտումների, անբանության և թափթփվածության դեմ։ Այդ պայքարում աճող դեր պետք է խաղան աշխատավորական կոլեկտիվները, և հարկավոր է ընդլայնել նրանց իրավունքները։

Մեր բոլոր ջանքերի կենտրոնում պետք է դրվի աշխատավորների մոբիլիզացումը հնգամյակի վերջին տարվա առաջադրանքների կատարման համար։ 1980 թվականի պլանի առաջադրանքները հեշտ ու հասարակ առաջադրանքներ չեն։ Բայց դրանք պետք է կատարվեն և գերակատարվեն։ Ի՞նչ է հարկավոր դրա համար։ Հարկավոր է ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր արտադրական բջիջում ստեղծել բարձր պահանջկոտության, կազմակերպվածության, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի իրադրություն։

Մենք բոլորս հասկանում ենք, որ սոցիալիստական էկոնոմիկան աներևակայելի է առանց կենտրոնացվածության հիմունքի ամրապնդման։ Դրա հետ մեկտեղ թե՛ քաղաքականության մեջ, թե՛ էկոնոմիկայում մեզ հարկավոր է դեմոկրատական ցենտրալիզմ, որը լայն ասպարեզ է բացում ներքևից եկող նախաձեռնության՝ կոլտնտեսությունների և սովխոզների, ձեռնարկությունների և միավորումների, տեղական մարմինների նախաձեռնության համար։ Դա բխում է ոչ միայն մեր աշխարհայացքից, այլև տնտեսական անհրաժեշտությունից։ Ներքևից եկող նախաձեռնությունը մեր անփոխարինելի ռեզերվն է տնտեսական զարգացումն արագացնելու գործում։

Երկրի մասին, նրա էկոնոմիկայի մասին մտածում, դրանց համար հոգով ցավում են հազարավոր ու հազարավոր աշխատավորական կոլեկտիվներ, սովետական միլիոնավոր ու միլիոնավոր գիտակից քաղաքացիներ։ Սոցիալիստական տնտեսական մեխանիզմը կոչված է ապահովելու աղբյուրի պես բխող եռանդի ու նախաձեռնության պատշաճ հորձանք։ Կատարելագործել աշխատանքի ոճն ու մեթոդները կուսակցության սկզբունքային ցուցումների ոգով՝ ահա բոլոր կուսակցական և տնտեսական ղեկավարների պարտքը։ Այդ է նրանցից պահանջում կուսակցության Կենտրոնական կոմիտեն։ (Ծափահարություններ)։

Եվ, ընկերնե՛ր, ավելի քիչ պարադայնություն և աղմկարարություն, ավելի քիչ այն ամենից, ինչ Վ. Ի. Լենինը անվանում էր «քաղաքական ճարճատյուն»։ Սովետական մարդկանց հետ խոսակցությունը պետք է լինի անկեղծ, լուրջ, փաստարկված։

Դրան է կոչում «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը։ Կուսակցական պրոպագանդան, կուսակցական ագիտացիան պետք է



լինեն առավելագույն չափով տարկայական, պետք է համոզիչ կերպով, գործիմացությամբ պատասխանեն մարդկանց հուզող բոլոր հարցերին։ Եվ այդ դեպքում կուսակցական խոսքը կարող է վերածվել աշխատանքային խանդավառության, տասնյակ միլիոնավոր կոմունիստների և անկուսակցականների աշխատանքային ջանքերի։ (Ծափահարություններ)։

Եկող տարի լրանում է Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը։ Այդ առթիվ նախապատրաստվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշում, որի մեջ նախատեսվում են քաղաքական կարևոր մի շարք միջոցառումներ։ Դրանց ընդհանուր հայտարարն է՝ 1980 թվականը դարձնել հարվածային աշխատանքի, լենինաբար աշխատելու տարի։ (Ծափահարություններ)։ Հենց դրան պետք է նպատակամղել բոլոր կուսակցական կոմիտեներին, բոլոր մեկուկես միլիոն սկզբնական կուսակցական կազմակերպություններին և կուսակցական խմբերին, սովետներին, արհմիություններին, կոմերիտմիությանը։ Աշնանը տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովները կրկին ցույց տվեցին, որ կուսակցությունը պատրաստ է նո՛ր մեծագործությունների՝ ի բարօրություն ժողովրդի։ Դրանում է մեր անշեղ առաջընթացի, մեր նոր հաջողությունների և նվաճումների գրավականը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

## Դաստիարակությանը՝ կոմպլեքսային մոտեցում

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ**

*ԿՈՄՈՒՆԻԶՄ ԵՎ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ... խոր և օրգանական է այս վեհ հասկացությունների կապը: Չէ որ կոմունիզմը, որպես համակողմանիորեն զարգացած, ներդաշնակ անհատների հասարակություն, մարմնացումն է ազատության և հումանիզմի, բարու և արդարության բարոյական ազնիվ իդեալների:*

*Բայց այդ ապագայի ակունքները սովետական մարդու անցյալի և ներկայի մեջ են, այդ ապագան ծնվում և առավել տեսանելի իրականություն է դառնում նոր աշխարհի համար մարտնչող անցյալ և ներկա բոլոր սերունդների պայքարով ու աշխատանքով: Իրենց կենսապայմանները վերափոխող նորարարների և առաջամարտիկների այդ դժվարին ճանապարհին կատարվում է նրանց բարոյական նորացումը, հղկվում նրանց հոգևոր աշխարհի «ադամանդաեզրերը», հատկանիշներ, որոնք այնքան պայծառ փայլում են հասուն սոցիալիզմի մեր հասարակությունում: «Կոմունիստական բարոյականության հիմքն է կազմում կոմունիզմն ամրապնդելու և ավարտելու պայքարը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 359—360):*

*Առաջնորդի այս խորագույն միտքը հաստատվել է ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման և զարգացման ողջ պատմական փորձով: Մեր հասարակության կյանքում բարոյական հիմունքների դերի հետագա աճը ևս կուսակցությունը կապում է կոմունիստական շինարարության նոր խնդիրների լուծմանը աշխատավորական հոծ մասսաների առավել լայն ու կազմակերպված մասնակցությունն ապահովելու հետ: ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ ասված է. «ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը դիտում է որպես կարևոր ճակատ»:*

### 1.

*ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կազմավորման ու զարգացման պատմական փորձը վերհանեց կոմունիստական բարոյականության ձևավորման մի շարք ընդհանուր օրինաչափություններ: Դրանցից են՝*

*— աշխատավորական ամենալայն մասսաների ներգրավումը սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաստատման ու կատարելագործման համար ծավալված հեղափոխական-վերափոխիչ գործունեության ոլորտ: Սոցիալիստական դեմոկրատիայի և կոլեկտիվիզմի զարգացման պայմաններում, կուսակցության ղեկավարությամբ և բանվոր դասակարգի առաջատար դերով իրագործվող այդ աշխատանքի ընթացքում ապրապնդվում է*



*հասարակական և անձնական շահերի միասնությունը, աշխատանքի, կառավարման, վերահսկողության, կարգապահության մարզում կուտակվում է աշխատավորների նոր, սոցիալիստական փորձ, որը և նրանց գիտակցության, արժույթների, վարքագծի դրույթներում ու շարժառիթներում հանգեցնում է կոմունիստական բարոյական նորմերի ձևավորման.*

*— գաղափարաքաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության սերտ կապի և ակտիվ փոխազդեցության ապահովումը՝ որպես անհատի ներքնապես հասուն գիտակցության, նրա կոմունիստական խոր համոզմունքների, գիտելիքների, զգացմունքների ու սովորույթների, մտքերի ու գործողությունների ձևավորման պարտադիր պայման.*

*— հոգածությունը բնակչության նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի աճի նկատմամբ՝ ապահովելով նրա գաղափարական, մտավոր ու հոգևոր պահանջմունքների մշտական բարձրացումն ու առաջանցումը և դրանց դերի բարձրացումը ամենօրյա պրակտիկ գործունեության կայուն կողմնորոշման հարցում.*

*— «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի հիմնական սկզբունքի հետևողական իրականացումը, վճռական պայքարը այդ սկզբունքի ամեն մի խախտման դեմ.*

*— գաղափարական և բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի ապահովումը հասարակության, աշխատանքային ու այլ կոլեկտիվների համար, նոր, սոցիալիստական ավանդույթների ներդրումը և տարածումը, առաջավոր հասարակական կարծիքի՝ կոմունիստական բարոյականության այդ հենարանի և կարգավորչի, ազդեցության ակտիվացումը.*

*— ընտանիքի, դպրոցի, աշխատանքային կոլեկտիվների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի սիստեմի, կուլտուրայի միջոցների, աճող սերնդի կրթության և ուսուցման բոլոր օղակների դաստիարակչական ջանքերի մշտական կոորդինացումը և այլն:*

*Հասկանալի է, որ անհատի կոմունիստական բարոյական հատկանիշները զարգացնող այս և այլ օրինաչափությունները նոր հասարակության ձևավորման ոչ բոլոր փուլերում են հավասարապես և բավական լայնորեն դրսևորում իրենց կոնստրուկտիվ ուժը: Դրանք իրենց հնարավորությունները լիովին բացահայտում, առանձնապես արդյունավետ են ներգրավում հենց հասուն սոցիալիզմի փուլում:*

*Ժողովրդական ամենալայն մասսաների վերադաստիարակումը, մարդու հոգևոր աշխարհի «վերաձևումը»՝ կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցման այս ամենաբարդ խնդիրը, նոր հասարակության առջև ծառանում է դրա ստեղծման առաջին իսկ օրից: Դրա բարդությունը ո՛չ միայն այն է, որ հին գաղափարները, հայացքները, զգացմունքները օժտված են վիթխարի դիմացկունությամբ, իներցիայի ուժով, այլև այն, որ պետք էր նոր հասարակություն կառուցել ոչ թե «հատուկ ջերմոցներում աճեցված առանձնապես առաքինի մարդկանցից», ինչպես պատկերացնում էին ուտոպիստ-սոցիալիստները, այլ «մասսայական մարդկային այն նյութից, որը փչացվել է դարերի ու հազարամյակների ստրկությամբ, ճորտությամբ, կապիտալիզմով, մանր մասնատված տնտեսությամբ... բոլորի դեմ բոլորի մղած պատերազմով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 502):*

*Մեր կուսակցությունը ծանր պայմաններում սկսեց սովետական մարդու դաստիարակությունը: Քաղաքացիական պատերազմը և օտարերկրյա ինտերվենցիան խորացրին արդյունաբերության քայքայումը, գյուղի թշվառ վիճակը: Քաղց, համաճարակ հիվանդություններ, սաբոտաժ և դավադրություն, անապաստան երեխաներ... ինչպե՞ս բարձրացնել դեպի սոցիալիզմ անծայրածիր, գերազանցապես գյուղացիական երկիրը, ինչպե՞ս հաստատել հասարակական կազմակերպման նոր ձևերը, աշխատանքային նոր կարգապահությունը, բարձրացնել արդյունաբերական արտադրության ծայրաստիճան ցածր մակարդակը, պայմաններ ստեղծել ողջ ժողովրդական տնտեսության մեքենայացման համար: Միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց ինչպե՞ս տալ նյութական, սոցիալական ու հոգևոր այն բարիքները, հանուն որոնց պրոլետարիատը պայ-*

քարեց, կատարեց մեծագույն հեղափոխությունը, ո՞րն է այն ուժը, որն ի վիճակի է ամրապնդել սովետական իշխանությունը, Ռուսաստանը դարձնել առաջավոր, սոցիալիստական տերություն, բանականության և հումանիզմի ջահակիր, օրինակ ծառայել բոլոր երկրների աշխատավորների համար։

Վ. Ի. Լենինի, կուսակցության ելակետն այն էր, թե որքան էլ ծանր էր դրությունը, բայց այն երկիրը, որտեղ քաղաքական իշխանությունը պրոլետարիատի ձեռքում էր, հանրայնացված էին արտադրության հիմնական միջոցները, ի վիճակի էր հաղթահարել բոլոր դժվարությունները։ Այս համոզմունքը խարսխվում էր հասարակական զարգացման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման օրենքների իմացության վրա։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ բանվոր դասակարգի հեղափոխական վերելքը, խանդավառությունն ու վճռականությունը պետք է միացնել հասարակության ամենաառաջավոր դասակարգի շուրջը աշխատավորական մասսաներին համախմբելու ամենօրյա համառ աշխատանքի հետ, նրա ջանքերը պլանաչափորեն սոցիալիստական հունով տանելու հետ։ Աշխատավորները պետք է կառուցեին իսկական դեմոկրատական պետություն, տիրապետին երկիրը կառավարելու դժվարին գործին, զարգացնեին նոր հասարակական հարաբերություններ, դասակարգային հակամարտությունից ազատ էկոնոմիկա, կուլտուրայի, գիտության, արվեստի բոլոր նվաճումները դարձնեին ժողովրդի սեփականություն, իրենց սոցիալական եռանդի և հոգևոր հզորության գործուն աղբյուր։ Եվ ստեղծագործական այս վեհ նպատակին՝ նոր հասարակության կառուցման գործին ծառայելն իսկ Վ. Ի. Լենինը համարում էր կոմունիստական բարոյականության էությունն ու նշանակությունը։

Սոցիալիզմի կառուցման ընթացքում ամենալայն մասսաների հասարակական գիտակցության մեջ կոմունիստական բարոյականության սկզբունքների և նորմերի հաստատումը համոզիչ վկայությունն էին մարքս-լենինյան տեսության, գիտական կոմունիզմի ուսմունքի ճշմարտացիության, կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության։ Սոցիալիզմի կառուցման ընթացքում խոր հեղաշրջում կատարվեց միլիոնավոր մարդկանց գիտակցության, զգացմունքների ու սովորույթների մեջ, հաղթահարվեց նրանց մանր սեփականատիրական, անհատապաշտական հոգեբանությունը, ձևավորվեց նոր վերաբերմունք աշխատանքի, կարգապահության, պետության նկատմամբ։ Առաջացան նոր պատկերացումներ կյանքի իմաստի ու նպատակի, պարտքի և պարտականությունների վերաբերյալ։

Նոր, սոցիալիստական բարոյականությունը ամայի տեղում չհաստատվեց։ Նրա ակունքը հեղափոխական պրոլետարիատի բարոյականությունն էր։ Ցարիզմի և կապիտալիզմի դեմ մղված դասակարգային սուր պայքարում, լենինյան կուսակցության ղեկավարությամբ, բանվորները քաղաքական ու բարոյական կոփման դպրոց էին անցել։ Ձևավորվել էին պրոլետարական մարտիկների հիանալի բարոյական հատկություններ՝ արիություն, անձնուրացություն, հանուն սոցիալիստական իդեալների ինքնազոհության պատրաստակամություն, ընկերասիրություն, ինտերնացիոնալ համերաշխության զգացում։

Նոր կյանքի հաստատման ընթացքում, փոփոխված պայմանների համեմատ, հարստացան կոմունիստական բարոյականության նորմերը, իրողություն դարձավ աշխատանքի, սոցիալիստական սեփականության, սովետական պետության, հասարակության մյուս անդամների նկատմամբ ու այլ արժույթների հարցում նոր վերաբերմունքը։

Այս խնդիրների լուծումը կուսակցությունը կապում էր հասարակության կյանքի առավել խոր տնտեսական հիմքերը վերափոխելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, մասսաներին պետության կառավարման գործում ներգրավելու, նրանց կենսապայմանները, նյութական դրությունը բարելավելու հետ։ Միաժամանակ այս պրոցեսը կարող էր հաջողությամբ ընթանալ միայն կուլտուրական հեղափոխությունը, ժողովրդական կրթությունը լայնորեն ծավալելով և ողջ գաղափարախոսական ու կուլտուր-լուսավորական աշխատանքը միլիոնների ամենօրյա ստեղծագործական պրակտիկայի հետ զուգակցելով։



Մասսայական գիտակցության վրա նոր բարոյականության նորմերի ազդեցությունն աճեց նաև շնորհիվ այն բանի, որ կուսակցությունն ապահովում էր առաջավոր փորձի, աշխատանքի և տնտեսավարման լավագույն օրինակների լայն տարածումը։ Այս խնդիրը Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական պրակտիկայի ամենակարևոր գծերից մեկը։ Լենինյան կուրսին հավատարիմ՝ կուսակցությունը բարձրացրեց տնտեսավարման ու աշխատանքի կազմակերպման, հաշվառման ու վերահսկողության սոցիալիստական փորձի հասարակական նշանակությունը, հետևողականորեն ձգտելով ստեղծել այնպիսի դրություն, որ առաջավոր փորձը որքան հնարավոր է ավելի լայնորեն ներգործի, մարդիկ լավագույն օրինակներով սովորեն նոր կյանք կառուցել։ Իսկ սոցիալիզմի կառուցման ընթացքում այդպիսի օրինակներ ամենուրեք և ավելի լայն մասշտաբներով ծնվում էին ձեռնարկություններում, կառույցներում, գյուղատնտեսական կոոպերատիվներում, բանվորական վերահսկողության սիստեմում ու մասսաների ստեղծագործության այլ ոլորտներում։ Կուսակցությունն աջակցում էր աշխատանքային, հայրենասիրական նախաձեռնություններին և լայնորեն տարածում դրանք։

Երիտասարդ սովետական հասարակությունը ստեղծում էր նաև աշխատանքի լավագույն օրինակների նյութական ու բարոյական խրախուսման նոր սիստեմ՝ «Պատվո տախտակներ», անձնուրաց աշխատանքի համար շքանշաններ, հարվածայինների պարգևավճարներ, բարոյական վեհ արարքների հասարակական ճանաչման նորանոր ձևեր։ Մասսայական ժողովներում ու միտինգներում, բանգյուղթղթակիցների շարժումը զարգացնելու միջոցով, քննադատվում էին թերությունները, մարդիկ սովորում էին սոցիալիզմի կառուցման դժվարին գործը։

Սոցիալիստական մրցությունը դարձավ մասսայական ստեղծագործության վառ մարմնավորումը։ Այն հաստատեց ու զարգացրեց աշխատանքի, կարգապահության, հանրային սեփականության նկատմամբ եղած նոր հայացքները, ամրապնդեց միլիոնավոր աշխատավորների ընկերական փոխօգնությունը։ Այդ պատճառով իսկ մրցությունը մարդկանց հոգևոր աշխարհի վերափոխման մեծ ուժ է պարունակում։ Վ. Ի. Լենինը առաջին կոմունիստական շաբաթօրյակները մարգարեաբար անվանեց սկիզբը «մի հեղաշրջման, որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական է, քան բուրժուազիայի տապալումը» (Երկեր, հ. 29, էջ 503)։

Սովետական մարդու բարոյական առաջընթացի, նրա ուժերի և ունակությունների զարգացման մեծագույն ասպարեզը ազատ աշխատանքն է։ Քայլառքայլ վստահորեն առաջադիմում էր ընդհանուր գործը, աճում մասսայական խանդավառությունը, առավել վառ բորբոքվում մրցության կրակը, աճում էին նաև իրենք՝ մարդիկ։ Նրանք աշխատանքում էին ճաշակում խինդն ու ընկերության երջանկությունը, բարեկամության ու անշահախնդրության ուժը, աշխատանքի հերոսների անունները մշտապես միլիոնավոր մարդկանց շուրթերին էին, լավագույնների օրինակը հուզում էր ամենալայն մասսաների միտքն ու սիրտը։

Կոմունիստական կուսակցության դաստիարակած սովետական մարդու հիանալի հատկանիշները վառ գույներով ու ներշնչանքով են բացահայտված Լ. Ի. Բրեժնևի Մալայա Զեմլյա, Վերածնունդ և Խոպան ստեղծագործություններում։ Այսօր հանուն խաղաղության, սոցիալիստական հայրենիքի բարգավաճման, պայքարի և աշխատանքի այդ լուսավոր ջահը ավագ սերնդի հետ միասին վստահորեն առաջ է տանում սովետական մարդկանց նոր սերունդը՝ Տյումենի նավթագործները, ԲԱՄ-ի, Կամազի, Արփա—Սևան թունելի, Սիբիրի և Հեռավոր արևելքի արդյունաբերական կոմպլեքսների շինարարները, ոչ սևահողային գոտին յուրացնողները, արդյունաբերության և գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի միլիոնավոր ու միլիոնավոր աշխատողներ։

## 2.

Վ. Ի. Լենինը հիմնովին մշակել է կոմունիստական դաստիարակության հատկապես բարոյական պրոբլեմները: Նա մասնավորապես շեշտել է, որ անհատի նոր բարոյականությունը, կոմունիստական հատկանիշները կարող են խարսխվել միայն գիտելիքների, համաշխարհային կուլտուրայի ողջ գանձարանի վրա: Բայց գիտելիքների և բարոյականության կապը ամենևին էլ ուղղագիծ և անմիջական չէ, այլ խորապես դիալեկտիկական: Անձնական խոր համոզմունք չդարձած գիտելիքները չեն կարող գործուն ազդեցություն թողնել անհատի ձևավորվող բարոյական նոր հատկանիշների վրա:

Մեր հակառակորդները շատ թուղթ են մրոտել, ճգնելով ապացուցել, թե կոմունիստական բարոյականությունը, իբր, ստվերում է թողնում մարդու պրոբլեմը և մտահոգվում է միայն հասարակության շահերի մասին: Անմիտ հակադրություն: Սոցիալիզմի օրոք հասարակական շահերը չեն հակասում անհատի ճիշտ գիտակցված շահերին. հասարակական շահերի առավել լիակատար բավարարումն անհնար է՝ առանց յուրաքանչյուր առանձին անհատի բարօրության ու երջանկության նկատմամբ աճող հոգածության: Բուրժուական և ոչ մի երկրում չկա այն մեծ հոգատարությունը մարդկային անհատի, նրա շահերի, կարիքների և պահանջմունքների նկատմամբ, որն առկա է և հետզհետե է՛լ ավելի է զարգանում սոցիալիստական հասարակարգում: Դրա համոզիչ վկայությունն է նաև ՍՍՀՄ նոր սահմանադրությունը, որով երաշխավորված են անհատի լայն ազատություններն ու իրավունքները:

Սովետական մարդու ազատությունը և իրավունքները սերտորեն կապված են նրա հասարակական վեհ պարտականությունների հետ: Դեռ ավելին, այդ լայն իրավունքների և ազատությունների հատուցումը անհատի բարոյական զարգացման համար ուղղակիորեն և անմիջականորեն պայմանավորված է այն բանով, թե տվյալ անհատը ինչպիսի՞ խորությամբ է գիտակցում հասարակական շահերի առաջատար դերը և ինչ հետևողականությամբ է պահպանում դրանք:

Մարդու ստեղծագործական ուժերի ծաղկում, սոցիալական այնպիսի հարաբերությունների հաստատում, որոնք ապահովում են հումանիզմի և արդարության հիմունքներով կյանքը վերափոխող մարդկանց ստեղծագործական ակտիվությունը— այս է կոմունիստական իդեալը, հանուն որի արդեն ավելի քան վեց տասնամյակ մեր ժողովուրդը պայքարում է հետևողականորեն ու համառորեն: Այդ գործունեության արդյունքը ո՛չ միայն տնտեսական ու սոցիալական վիթխարի թռիչքն է շահագործումից ազատ մի երկրում, որտեղ բազմազգ ժողովուրդները հաստատել են եղբայրական բարեկամության և բազմակողմանի համագործակցության հարաբերություններ, այլև որակական այն փոփոխությունները, որ կատարվել են մարդու բուն էության, նրա հոգևոր աշխարհի, աշխարհայացքի, բարոյականության մեջ:

Մասնակցելով արտադրական կոլեկտիվի, հասարակական կազմակերպությունների կյանքին ու աշխատանքին, սովետական մարդն ակտիվորեն ներգործում է տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զանազան կարևոր հարցերի լուծման վրա: Սոցիալիստական դեմոկրատիան աշխատավորությանը ռեալ հնարավորություն է ընձեռում լայնորեն մասնակցելու պետական ու հասարակական հարցերի լուծմանը: Այդ դեմոկրատիան և կոլեկտիվիզմի զարգացումը անշեղորեն բարձրացնում են մարդու մտածողության և պրակտիկ գործունեության քաղաքական ու կուլտուրական մակարդակը, խթանում նրա ստեղծագործական նախաձեռնության աճը:

Պատմական նոր պայմաններում հարստացել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներն ու նորմերը, ամրապնդվել է մեր բազմազգ երկրի ժողովուրդների հավասարության վրա խարսխված անխախտ բարեկամությունը, որի ստեղծման գործում անգնահատելի է ռուս բանվոր դասակարգի, նրա անշահախնդիր օգնության ու օրինակի դերը: Ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը, հասարակության յուրաքանչյուր անդամին պրոլետարական ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարական ու բարոյական ար-



ժույթներով տոգորելը կուսակցությունը միշտ էլ դիտել և դիտում է որպես կոմունիստական գիտակցականության զարգացման պարտադիր պայման:

Պրոլետարական ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների ու նորմերի պահպանումը ո՛չ միայն չի հակասում ազգային և համասովետական գիտակցությանը, այլև, ընդհակառակը, այն դարձնում է գաղափարական ու բարոյական միակ հնարավոր առողջ հիմքը, վեհացնում և ազնվացնում այն: Ինտերնացիոնալիզմն իսկ՝ դասակարգային համերաշխության, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության այդ գաղափարախոսությունն ու բարոյականությունը, դարձավ մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորման ու հաստատման գաղափարաբարոյական կարևորագույն հիմքը, նրան հատուկ հասարակական հպարտության ու հայրենասիրության զգացմունքով հանդերձ:

Բարոյական գիտակցության ձևավորման, զգացմունքների, վարքի դաստիարակման, մարդկանց միջև նոր հարաբերությունների հաստատման, սերունդների գաղափարական միասնության և հաջորդականության ամրապնդման գործում անգնահատելի է առաջավոր ավանդույթների դերը: Դրանց միջոցով են անցյալից ներկային փոխանցվում ժամանակի քննությունը բռնած հոգևոր բարձր արժույթները, ժողովրդի փորձը, գործելակերպը, բարոյական իդեալներն ու զգացմունքները: Նոր ավանդույթներում մարմնավորված են կենսագործունեության առավել ռացիոնալ և արդյունավետ սկզբունքները: Այդ պայմաններում կոմունիստական բարոյականության նորմերի ամրապնդմանը նպաստում են գիտելիքները, որոնք իմաստավորում են այդ չգրված օրենքները:

Անցյալի վերապրուկները հաղթահարվում են ո՛չ միայն նոր, ճշգրիտ գիտելիքների և հին, սխալ գիտելիքների ուղղակի բախումով, այլև հին սովորույթների դեմ նոր բարդ պայքարի ընթացքում: Չէ որ ավանդույթները «ներհյուսվում են» մարդու մտածելակերպի, վարքի շարժառիթների հետ: Առաջավոր ավանդույթների ուսումնասիրման և տարածման գործում եղած թերությունները սահմանափակում են մարդու վարքի զգացմունքային կայուն շարժառիթներ դաստիարակելու հնարավորությունը: Բարոյական դաստիարակությունը ներառում է ո՛չ միայն մարդու բանականությունը, այլև զգացմունքներն ու սովորույթները: Բարոյական կայուն վարքը հնարավոր է միայն դրանց միասնությամբ: Մեր հասարակության բարոյական նորմերը, լինելով գործնականորեն ու տեսականորեն հիմնավորված, չեն հակասում մարդկանց գիտակցության մեջ կյանքի անմիջական զգայական արտացոլմանը, այլ, ընդհակառակը, ամրապնդվում և հաստատվում են դրանց ամենօրյա փորձով: Այդ մեծապես պայմանավորված է նաև այնպիսի գործոնների ազդեցությամբ, ինչպիսիք են տնտեսական ու սոցիալական հարաբերությունների կատարելագործումը, կուլտուրայի զարգացումը, գիտելիքների հարստացումը, դեմոկրատական սկզբունքների ու նորմերի հետևողական կիրառումը պետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքում, յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում:

## 3.

Հասուն սոցիալիզմի պայմաններում անհատի բազմակողմանի, ներդաշնակ զարգացումն աստիճանաբար դադարում է հեռավոր իդեալ լինելուց: Այժմ մարդը առավել լիովին է օգտվում սոցիալիստական ապրելակերպի բարիքներից, ռեալ հնարավորություն է ստանում զարգացնելու ունակությունները, հաղորդակցվելու ստեղծագործական աշխատանքին: Սոցիալիզմի ստեղծած այդ հնարավորությունների մեծացումը, նյութական, սոցիալական ու կուլտուրական բարիքների հետագա աճը, ինչպես և դրանց առավել լիակատար հատուցումը մարդուն, ենթադրում է նրա է՛լ ավելի գիտակից, պատասխանատու վերաբերմունքը հասարակության հանդեպ ունեցած պարտքի, իր արտադրական, քաղաքացիական ու այլ պարտականությունների, գիտելիքների կատարելագործման, գաղափարական ու կուլտուրական ընդհանուր մակարդակի բարձրացման նկատմամբ: Հոկտեմբերյան հեղափոխության 60-ամյակին նվիրված զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Մարդուն համակել հասարակական

վեհ նպատակներին հասնելու ձգտումով, գաղափարական համոզվածությամբ, աշխատանքի նկատմամբ իսկական ստեղծագործական վերաբերմունքով. ահա ամենաառաջնահերթ խնդիրներից մեկը: Այստեղ է կոմունիզմի համար մղվող պայքարի շատ կարևոր ճակատը, և այդ ճակատում մեր տարած հաղթանակներով առավել մեծ չափով պայմանավորված կլինի թե՛ տնտեսական շինարարության ընթացքը, թե՛ երկրի սոցիալ-քաղաքական զարգացումը»:

ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումն ամբողջ սրությամբ դրեց հանձնարարված գործի, կոմունիստական շինարարության ընդհանուր հաջողությունների համար հասարակության յուրաքանչյուր անդամի պատասխանատվության հարցը, թերությունների դեմ պայքարելու հմտության ու պատրաստակամության, ստեղծագործական լայն նախաձեռնություն ցուցաբերելու անհրաժեշտությունը: Դրանով էլ պայմանավորված է զարգացած սոցիալիզմի վիթխարի ռեզերվներն առավել արդյունավետ գործադրելու հաջողությունը: Դա վերաբերում է թե՛ մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության նյութատեխնիկական վիթխարի պոտենցիալի հմուտ օգտագործմանը, թե՛ առաջավոր գիտության, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի նվաճումներն արտադրության մեջ ժամանակին ներդնելուն, թե՛ աշխատանքային կարգապահության, իրավակարգի, սոցիալիստական համակեցության նորմերի և կանոնների ավելի խստիվ պահպանմանը:

Հասուն սոցիալիզմի փուլում մեծանում է բարոյական սկզբունքների ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտների զարգացման վրա: Ամենից առաջ դա պայմանավորված է այն բանով, որ բարոյական գործոնը սկսում է առավել ակտիվ նպաստել մարդու հոգևոր աշխարհի, նրա ամենօրյա գործունեության շարժառիթների մերձեցմանը, դրանով իսկ խթանելով գիտելիքները, հույզերը, սովորույթներն ու պրակտիկ գործերը: Այսպիսին է մարդկային անհատի համակողմանի զարգացման ու կատարելագործման, նրա ազատ, ստեղծագործական ինքնահաստատման ռեալ ուղին:

Կոմունիստական բարոյականության կապը անհատի համակողմանի, ներդաշնակ զարգացման խնդիրների հետ դրսևորվում է նաև այդ հզոր ազդեցությամբ, որը դաստիարակում է բարոյական հատկանիշներ, առաջավոր հայացքներ և նպաստում է մարդու նյութական ու հոգևոր պահանջմունքների վեհացմանն ու ազնվացմանը, ապահովում հոգևոր պահանջմունքների առաջնայնությունը նյութական պահանջմունքների բովանդակության և կառուցվածքի հանդեպ: Այս հարցը չափազանց կարևորել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում: Մենք այսուհետ ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը: Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով: Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ: Սա չի կարելի անքաթող անել» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116): Այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել մի շարք կոնկրետ գործոններ, որոնք հանգեցնում են նման երևույթների: Ոչ միայն մարդու ընդհանուր ցածր կուլտուրան, մակերեսային գիտելիքները, բնակարանով, իրերով, հագուստով ուրիշներին շլացնելու ձգտումը, այլև, հատկապես երիտասարդության շրջանում, սոցիալականացման, քաղաքացիական հասունացման պրոցեսի ձգձգումն ու դանդաղումը կարող են ազդակ դառնալ հոգևոր պահանջմունքների բացակայության, կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքի գաղափարաբարոյական և հոգեբանական կողմնորոշումների տհասության: Այսպես, գիտատեխնիկական հեղափոխության, ինֆորմացիայի ծավալի հսկայական մեծացման, ողջ երիտասարդությանը ուսուցման սիստեմում ընդգրկելու պայմաններում տագնապալի անհամամասնություն է դրսևորվում մի կողմից նրա ֆիզիոլոգիական հասունացման և ինքնահաստատման ու ակտիվ ինքնարտահայտման ձգտելու ժամանակաշրջանների միջև և, մյուս կողմից, ինքնուրույն աշխատանքային գործունեության մեջ ակտիվորեն ներգրավվելու, այսինքն՝ նրա սոցիալակա-



նացման պրոցեսի ավարտման միջև, քանի որ այդ պրոցեսը առավել լիակատար ձևով է ընթանում հենց աշխատանքային կոլեկտիվներում: Բուն այդ անհամամասնությունը, որի դեպքում ուսանելիս ստացած քաղաքական, բարոյական և այլ գիտելիքներն ամրապնդվում են ինքնուրույնաբար կուտակած քաղաքական ու բարոյական կենսափորձով, որոշակի պայմաններում (ընտանիքի ազդեցությունը, տևական ժամանակով խնամակալվելը և այլն) կարող է հող ստեղծել սպառողական հոգեբանության առաջացման համար: Ահա թե ինչու երիտասարդության բարոյական դաստիարակության գործում վիթխարի նշանակություն ունի ուսման տարիներին նրան հասարակական-քաղաքական գործունեության և աշխատանքային դաստիարակության ոլորտում առավել ակտիվորեն ներգրավելը, ինչպես նաև դեմոկրատական հիմունքներով ուսումնական հաստատությունների կյանքում ու կառավարման մեջ նրա ինքնագործունեության զարգացումը, ամբողջությամբ վերցրած աճող սերնդի ուսուցման, կրթության ու դաստիարակության կապի էական կատարելագործումը, բարձրագույն և միջնակարգ դպրոցներում ուսուցման բուն մեթոդների ու ձևերի վերակառուցումը, պրոֆեսիոնալ ճիշտ կողմնորոշումը և վաղ մասնագիտացումը: Արդի պայմաններում այս հարցերը առավել հաջողությամբ են լուծվում պրոֆտեխկրթության սիստեմի միջոցով, որտեղ աշակերտական կոլեկտիվների գործունեությունն իր բովանդակությամբ ու ձևերով ավելի է մոտենում արտադրական կոլեկտիվների գործունեությանը:

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած դաստիարակչական աշխատանքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցում ապահովելու խնդիրը՝ հաշվի առնելով աշխատավորության տարբեր խմբերը, գաղափարաքաղաքական, բարոյական և աշխատանքային դաստիարակության սերտ զուգակցումը, լիովին համապատասխանում է և՛ հասուն սոցիալիզմի հասարակության նոր հնարավորություններին, և՛ կոմունիստական դաստիարակության բնագավառում ամբողջ աշխատանքի որակի բարելավման հարաճուն պահանջմունքներին: Կոմպլեքսային մոտեցումը ենթադրում է տնտեսական, սոցիալական, կուլտուրական և գաղափարախոսական բոլոր գործոնների ավելի ակտիվ, նպատակաուղղված և կոորդինացված կենսագործում, գործոններ, որոնք նպաստում են անհատի կոմունիստական խոր համոզմունքների, քաղաքացիական հասուն դիրքորոշման, թերությունների դեմ պայքարելու վճռականության, կյանքում նորը, առաջավորը հաստատելու գործին:

* * *

Սովետական մարդու բարոյական ուժը դրսևորվում է մեր ժողովրդի բոլոր սերունդների կողմից նոր հասարակարգի կառուցման աշխարհաշեն սխրանքներում: Այդ ուժի անսպառ աղբյուրը մարքս-լենինյան ամենահաղթ ուսմունքն է, լենինյան կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականությունը:

# ՀԻՆԳ ԵՐԵԿՈ ԵՎ ԵՐԿՈՒ ՕՐ

(Սոցիոլոգիական ակնարկ)

Ա.Դ.Ա. ԲԱՍԿԻՆԱ

**ԸՆՏԱՆԻՔՈՒՄ ԱԶԱՏ ԺԱՄԱՆԱԿԻ** պրոբլեմն ամենադժվարիններից է, չնայած հաճախ թվում է, թե այստեղ ոչ մի պրոբլեմ չկա: Ազատ ժամանակ լինի, իսկ թե ինչպես անցկացնել այն, «կմտածենք»: Երբեմն այդ «կմտածենք»-ը մեզ մոտ ամենևին էլ չի առաջացնում «հանգստի» բավարարվածության զգացում, չի համակում մեզ լավ տրամադրությամբ, կենսական այն մեծ եռանդով, որը կարողանար հանգել «լա՜վ հանգստացա» մտքին: Ինչո՞ւ: Որովհետև մեր հանգստի մեջ չկար ոչինչ, որը կարողանար զգացմունքներ արթնացնել, բորբոքել մեր երևակայությունը, սնունդ տար մըտքին ու մարմնին:

Ընտանեկան հարցերն ուսումնասիրող սոցիոլոգները միահամուռ գալիս են այն եզրակացության, որ ժամանակակից ընտանիքի զարգացման հիմնական ուղին հոգևոր կյանքի վերելքն է: Իսկ այդ կյանքի հիմնական իմաստը սոցիալապես ակտիվ, ստեղծագործող անհատի ձևավորումն է: Ահա թե ինչպես է բնորոշում տնեցիների ազատ ժամանակի նշանակությունը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սոցիոլոգիական պրոբլեմների ինստիտուտի սեկտորի վարիչ Զոյա Ալեքսեևնա Յանկովան: Առավել լավագույնը պետք է համարել այն ընտանիքը, ուր ամեն ինչ արվում է ընտանեկան և հասարակական ժամանցի կազմակերպման ներդաշնակ ձևերի զարգացման համար, երբ ընտանիքի բոլոր անդամների անձնական հատկանիշների ձևավորումը դառնում է ընտանիքի զարգացման բուն նպատակը:

Իսկ այժմ տեսնենք, թե ինչպիսին է սովետական միջին ընտանիքի ժամանցի սխեման: Ինչի՞ վրա են ընտանիքի հայրերն ու մայրերը ծախսում 365 երեկոներն ու 103 հանգստյան օրերը (չհաշված արձակուրդները):

Մեծ քաղաքներում կուլտուրական հանգստին տրամադրած ժամանակի մեկից երկու երրորդը մարդիկ անց են կացնում հեռուստացույցի առջև: Հեռուստադիտման հրապույրը մեծանում է այն բանի համեմատ, թե ինչպես է մարդն ընտանիք կազմում և ինչպես է նա «ներքաշվում» ընտանեկան կյանքում: Ասենք, որ չամուսնացած երիտասարդները ժամանցի այդ տեսակին են նվիրում իրենց ողջ ազատ ժամանակի 10—15, նորապսակները՝ մոտ 30—35 տոկոսը, իսկ, այսպես կոչված, հասուն ընտանիքների հայրերն ու մայրերը՝ կեսը: Սա մոտ երկու-երեք անգամ ավելին է, քան գրքերին, թատրոններին, կինոյին, թանգարանին և այլնին տրամադրվող ժամանակը:

Ազատ ժամանակ ավելի կանոնավոր են թերթեր կարդում, այնպես որ, միջին հաշվով, այդ ժամանակը հասնում է շաբաթական 2—3 ժամի: Ճիշտ է, կանայք ավելի քիչ են թերթ կարդում և ոչ այնքան կանոնավոր: Բայց այստեղ կա մի կայուն օրինաչափություն, որքան բարձր է կրթվածության մակարդակը, այնքան ընտանիքի նույնիսկ հույժ զբաղված մայրերն ավելի հաճախ են թերթը աչքի անցկացնում:

Քաղաքաբնակների ճնշող մեծամասնությունը կարդում է նաև ոչ մեծ ամսագրեր. գնում են կամ բաժանորդագրվում, կամ էլ վերցնում գրադարաններից: Ընդ որում, նրանք, ովքեր դեռ երիտասարդ հասակից են ամսագրեր բաժանորդագրվել, շարունակում են դրանք կարդալ նաև ամուսնանալուց հետո: Այսպես, երիտասարդ բանվորների 80—90 տոկոսն է կարդում այդպիսի ամսագրեր, իսկ փոքր երեխաներ ունեցող բանվորների՝ 70—80 տոկոսը: Տարբերությունը մեծ չէ:

Գիրքը մտել է սովետական մարդու կենցաղը, թեև դեռ չի դարձել հանգստի պարտադիր տարր: Ճիշտ է, այստեղ զգալի տարբերություն կա կրթության զանազան մակարդակ ունեցող մարդկանց միջև: Ասենք, միջին կրթություն ունեցող (տեխնիկում, ուսումնարան) աշխատավորուհիների 70 տոկոսն է կանոնավոր կերպով գիրք ընթերցում, իսկ բարձրագույն կրթությամբ աշխատավորուհիների՝ 90: Տղամարդկանց մոտ համապատասխանաբար այդ թիվը կազմում է՝ 70—75 և 80—85 տոկոս: Ինչպես տեսնում եք, կանայք ավելի շատ են գիրք կարդում, քան տղամարդիկ: Ճիշտ է, երեխաների աշխարհ գալով, մայրերը ժամանակ չեն ունենում այդ սիրած զբաղմունքի համար: Հարցումների տվյալները ցույց են տալիս, որ այդ շրջանում (երեխայի ծնունդը, խնամքը) նրանց ընթերցանության ժամկետը կրճատվում է ավելի քան երկու անգամ, իսկ տղամարդկանցը՝ մոտավորապես մնում է նույնը: Ցավոք, հետազոտությունները վկայում են, որ գիրքը որպես հանգստի միջոց տարեցտարի ավելի քիչ տեղ է գրավում ամուսինների կյանքում: Եվ այս պրոցեսն անշեղ շարունակվում է մինչև խոր ծերություն. տարեց մարդիկ ավելի քիչ են կարդում, քան կրթական մակարդակով նրանց հավասար երիտասարդները: Սակայն որքան ավելի կրթված է մարդը, այնքան ավելի քիչ է պակասում նրա ընթերցասիրությունը:

Հանգստի մասսայական ձև է և կինոն: Ե՛վ տղամարդիկ, և՛ կանայք կինո են հաճախում շաբաթը մեկ անգամ: Բայց այս միջին թիվը դեռևս ճշգրիտ պատկերացում չի տալիս ընտանիքում և ժամանցում ֆիլմերի ունեցած տեղի մասին: Բանն այն է, որ ընտանիքավորները, անչափահաս երեխաների ծնողները, 3, երբեմն նույնիսկ 6 անգամ ավելի քիչ են թատրոն հաճախում, քան չամուսնացած երիտասարդները: Ավելի քիչ երեկոներ, ինչպես և շաբաթ ու կիրակի օրեր են տրամադրվում թատրոններ, ցուցահանդեսներ, թանգարաններ, համերգային դահլիճներ հաճախելուն:

Այս ամենը պասսիվ հանգստի տարրերն են: Իսկ քաղաքից դուրս զբոսանքնե՞րը, էքսկուրսիանե՞րը, սպորտային պարապմունքնե՞րը: Ահա թե ինչ են ցույց տալիս, օրինակ, Տագանրոգում կատարված ուսումնասիրությունների տվյալները:

Հարցմանը նախորդող մեկ ամսվա ընթացքում (իսկ այդ ամառվա շոգ ամիսն էր) բնակիչների մոտ կեսը երբեք քաղաքից դուրս չէր եկել: Հանգստյան 8 օրերից և ոչ մեկում ամուսինները, նրանց երեխաները (ծնողների հետ միասին) չէին եղել ո՛չ անտառում, ո՛չ ծովափում, ո՛չ էլ զբոսայգում: Ծովափնյա քաղաքներում չափազանց քիչ են տարածված «ծովային» հանգստի այնպիսի ձևեր, ինչպես, ասենք՝ զբոսանքը մակույկներով կամ կատերներով, ձկնորսությունը. դրանով զբաղվում է աշխատող բնակիչների միայն 5—10 տոկոսը, իսկ տուրիզմով, էքսկուրսիաներով՝ սոսկ 15 տոկոսը:

Եվ, վերջապես, սպորտը: Ընտանիքավորների մոտ 90 տոկոսը ոչ մի կապ չունի սպորտի հետ: Կամ էլ կապված է որպես դիտող կամ սիրող:

Պատկերն ավելի ամբողջացնելու համար ասեմ, որ ակնբախ է ժամանցի մի այլ ձև՝ փոխհարաբերությունները առանձին ապրող հարազատների, ընկերների հետ: Արտաընտանեկան հարաբերությունների վրա ամուսինների ծախսած ժամանակի կեսից մինչև $^{4}/_{5}$-ը զբաղեցնում են հյուրընկալումը և հյուր գնալը: Բայց ես շատ մեծ նշանակություն եմ տալիս ընկերների հետ ունեցած հանդիպմանը, ուստի և դրանց ավելի մանրամասն կանդրադառնամ առանձին:

Այսպիսով, փորձենք ընդհանրապես գնահատել ընտանեկան ժամանցը: Փորձենք նաև պատասխանել այն հարցին, որին անդրադարձանք սկզբում: Արդյոք խելացի՞ ենք ծախսում մեր ազատ ժամանակը: Մեր ժամանցի միջոցով կատարո՞ւմ ենք արդյոք մեր անմիջական պարտականությունը, նպաստո՞ւմ ենք ընտանիքի յուրաքանչյուր անդամի զարգացմանը:

## ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑ, ԼՐԱԳԻՐ, ԳԻՐՔ

Ինչպես արդեն տեսանք, կուլտուրայի հետ շփման բոլոր ձևերից առաջին տեղը գրավում է հեռուստատեսությունը: Այս բնական է. այն մեզնից ավելորդ ջանքեր չի պահանջում. պետք չէ ո՛չ տոմս ձեռք բերել, ո՛չ տեղ գնալ, ոչ էլ նույնիսկ հագուստը փոխել՝ տնից դուրս գալու համար: Բացի դրանից, հեռուստացույցը մեզ շատ ինֆորմացիա ու տպավորություններ է հաղորդում:

Սակայն եկեք բացահայտենք հանգստի այս ձևի էությունը: Լա՞վ է այն, թե՞ վատ: Իմ պատասխանն այդ հարցին միանշանակ չէ: Այստեղ ամեն ինչ պայմանավորված է նրանով, թե ինչպես ենք հեռուստացույց դիտում: Ասենք, եթե մեզ հետաքրքրում են գիտության, տեխնիկայի, ընդհանուր կրթական թեմաներին նվիրված որոշակի հաղորդաշարերը, և մենք կանոնավոր հետևում ենք դրանց, հիանալի է: Այդ ժամանակ մեր գիտելիքները լրացվում են նորերով, դրանք մեզ զարգացնում են, մենք հնարավորություն ենք ունենում ավելի լայնորեն օգտվելու դրանցից, հաճախ նաև՝ երեխաներին դաստիարակելիս: Եթե սկզբից մինչև վերջ դիտում ենք ինչ-որ հետաքրքրական հաղորդում, համերգ, ներկայացում, նույնպես լավ է: Ստանում ենք արվեստի պատճառած հաճույքը (չնայած յուրաքանչյուր ոք իր փորձով գիտե, որ այդ հաճույքը մի քանի անգամ ուժեղ է, երբ այն տեսնում ենք մեծ կինոէկրանի վրա, թատրոնի բեմում), հնարավորություն ենք ունենում հաղորդելու ընտանիքի անդամ-

ներին մեր տպավորությունները, որը չես կարող անել հանդիսասրահում: Բայց այստեղ կարևոր է, որ վերաբերմունքը հեռուստատեսային հաղորդումների նկատմամբ լինի ակտիվ, նպատակային: Իսկ կյանքում դա երբեմն այլ կերպ է լինում: Հարցումների ժամանակ կանայք և տղամարդիկ (կանայք ավելի հաճախ) պատասխանում են, որ հեռուստացույց դիտում են ընդհատումներով: Եվ, ուրեմն, այս դեպքում նման հանդիպումները լավագույն արտիստների, բանաստեղծների, գիտնականների հետ իրականում չեն հարստացնում մեր հոգևոր աշխարհը:

Լրագիրը արտաքին աշխարհի հետ կապի հզոր միջոց է, որ հնարավորություն է ընձեռում պատկերացնելու, թե ինչ է կատարվում կյանքի տարբեր բնագավառներում մեր երկրում և արտասահմանում: Ընտանիքի սոցիալական ակտիվության յուրատեսակ չափանիշ է այն, թե որքան ակտիվորեն են կարդում լրագրերը և՛ ծնողները, և՛ երեխաները (չէ որ նրանք դեռ պիոներական հասակից ունեն մամուլի իրենց օրգանը): Այնտեղ, ուր ընտանիքի անդամները հետաքրքրվում են աշխարհը հուզող իրադարձություններով, նրանք չեն կարող սահմանափակվել միայն իրենց անձնական շահերի շրջանակներում: Հոդվածների քննարկումները ընտանիքում, միմյանց դաստիարակելու, հատկապես երեխաներին կյանքի նկատմամբ քաղաքացիական վերաբերմունքով համակելու հզոր միջոց են: Փոքր-ինչ վարանումով եմ ուզում խոսել ընտանիքում գրքի դերի մասին: Սոցիոլոգների միջին թվերը, անշուշտ, չափազանց պարզ պատկերացում են տալիս առհասարակ ընթերցանության, մասնավորապես՝ ընտանեկան ընթերցանության մասին: Բայց գեղարվեստական գրականություն ընթերցողների միջին թիվը շատ փոքր է: Հինգ տոկոսի էլ չի հասնում գրական նորույթներ ընթերցողների թիվը: Գիրք չկարդացող ընտանիքավորները փաստորեն կազմում են 50—60 տոկոս: Իհարկե, նույնիսկ առանց հատուկ ուսումնասիրությունների էլ, ամեն ոք իր օրինակով գիտե, որ ընթերցման համար միշտ էլ ժամանակ չի մնում: Չէ՛ որ հեռուստացույց կարելի է դիտել ամանները լվանալու և երեխայի դասերն ստուգելու արանքում: Լրագիրը կարելի է արագ աչքի անցկացնել, կարևոր իրադարձությունների մասին իմանալ վերնագրերից, մեկ-երկու հոդված էլ կարելի է կարդալ: Բայց գրքի համար պահանջվում է հատուկ ժամանակ, հոգեկան նախատրամադրվածություն: Իսկ ընտանիքավորների ժամանակը ծախսվում է տնտեսության, երեխաների վրա: Այս ամենը, իհարկե, ճիշտ է: Եվ, այնուամենայնիվ, կան փաստեր, որոնք, ասես, հաստատում են դրա հնարավորությունը:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շաբաթ և կիրակի օրերին ընթերցման ժամանակն ավելանում է 1,5—2, իսկ հեռուստադիտմանը՝ 3 անգամ: Այդ նշանակում է, որ համանման այլ տվյալների դեպքում, երբ ի հայտ է գալիս մեր ազատ ժամանակի պաշարը, այն ավելի հաճախ խլում է հենց նույն հեռուստացույցը, որն առանց այդ էլ զբաղեցնում է մեր օրվա ու ազատ ժամանակի մեծ մասը: Հեռուստացույց և ոչ թե գիրք: Նույն ուսումնասիրություններից պարզվել է, որ ընտանիքի ստեղծման և երեխաների ծննդյան հետ կապված՝ կանայք զգալիորեն քիչ են կարդում: Սակայն ոչ բոլորը: Նրանք, ովքեր երիտասարդ հասակից սովոր են կարդալու, կարդում են ոչ քիչ, իսկ հետագայում, երբ աստիճանաբար անհետանում է ոտք ու ձեռքի կապվածության զգացումը, ընթերցման ժամանակը կրկին հասնում է նախկին մակարդակին: Բայց չէ՛ որ սրանք նույն աշխատող կանայք են՝ նույն բազմազբաղ կենցաղով: Ո՞րն է գաղտնիքը: Սովորույթը: Դուք վարժվե՞լ եք լվացվել, ատամները մաքրել, սափրվել, ուրեմն, որքան էլ զբաղված լինեք, միևնույն է, տանից դուրս չեք գա առանց այդ ամենը կատարելու: Իսկ արդեն գործուղման մեկնելիս, անշուշտ, ձեզ հետ կվերցնեք և՛ օճառ, և՛ խոզանակ, և՛ ածելի: Իսկ գիրք, նո՞ւյնպես կվերցնեք: Կվերցնեք, եթե դա ձեզ համար այնպիսի անհրաժեշտություն ու պահանջ է դարձել, ինչպես օճառն ու ածելին: Հակառակ դեպքում չեք վերցնի: Կհուսաք, որ ճանապարհին մի բան կճարվի: Գործուղման ժամանակ անելիք շատ կա, չես էլ հասցնի կարդալ:

Բայց որտեղի՞ց են ժամանակ գտնում այն ուսյալ կանայք, ովքեր տնից սլանում են մանկապարտեզ, այնտեղից՝ աշխատանքի, աշխատանքից՝ խանութ, նորից մանկապարտեզ: Իսկ տա՛նը... Տանն իսկի կարդալ չես հասցնի: Բայց ժամանակ, միևնույն է, գտնվում է. տրամվայում, ճաշարանում կամ խանութում, քնելուց կես ժամ առաջ: Գտնվում է, որովհետև այսպիսին է սովորույթի ուժը, որը, ինչպես հայտնի է, դառնում է երկրորդ բնավորություն: Բայց, ի դեպ, ես գիտեմ միանգամայն ուսյալ (ավելի ճիշտ՝ դիպլոմավոր) պաշտոնատար տղամարդկանց ու կանանց, որոնք ամիսներով գրքի երես չեն տեսնում: Այսինքն՝ դա այնքան էլ ճիշտ չէ: Նրանք հատուկ գրականություն են կարդում սեմինարի պատրաստվելիս, վերընթերցում են քաղաքական բրոշյուրներ: Կարող են աչքի անցկացնել համեղ ու առողջարար սննդի մասին գրքերը, կամ էլ ավտոմոբիլիստի տեղեկագրերը, ամենևին էլ չանհանգստանալով, որ վաղուց է, ինչ մի լավ գիրք չեն կարդացել: Սովորությո՛ւն չունեն: Իսկ սովորույթը մշակվում է մանկուց: Մանկապարտեզում, դպրոցում, պիոներական ճամբարում: Դաստիարակը գիրք է կարդում, նկարներ է ցույց տալիս: Այդ սովորույթի դաստիարակություն է: Դպրոցականը գրադարանից գիրք է վերցնում, սկզբում «պատերազմի» կամ լրտեսների մասին, բայց հաջորդ անգամ նրան հանձնարարում են արդեն գեղարվեստորեն մեծարժեք մի գիրք: Դպրոցի գրադարանավարուհին նրա ուշադրությունը հրավիրում է կերպարների, ժամանակի, իրադրության, բնության նկարագրության վրա: Եվ սա էլ, անշուշտ, այնքա՛ն անհրաժեշտ սովորույթի դաստիարակում է: Իսկ գրականության ուսուցչի հիմնական նպատակը պետք է լինի ընթերցասիրություն արթնացնել, ձևավորել գեղարվեստական գրականության ընթերցման ճաշակ:

Մի անգամ ներկա եղա երկարօրյա դպրոցի մասնագետների խորհրդակցությանը: Խոսում էին ուսման, սպորտի, խմբակների, արշավների, էքսկուրսիաների մասին... Ես հարցրի.

— Երկարօրյա դպրոցում երեխաները ժամանակ ունենո՞ւմ են գեղարվեստական գրականության ընթերցման համար:

— Ո՛չ, թող տանը կարդան:

— Իսկ եթե տանը կարդալ չե՞ն վարժեցնում (հիշեցեք, չափահաս մարդկանց կեսից ավելին, հայրերն ու մայրերը մի ամսում ոչ մի գիրք չեն առել ձեռքները):

Գիտենք, թե ինչի է վերածվում աշակերտների ընթերցանության նկատմամբ ուսուցիչների այսպիսի թերուշադրությունը: «Ամեն ինչի չես հսկի»,— սովորաբար պատասխանում է հոգնած ուսուցիչը: Բայց չէ՛ որ նա գիտե, որ ինքը անպայման պետք է պատվաստի որոշ ունակություններ, իսկ ինչո՞ւ այդ ունակությունների մեջ չկա ընթերցման պահանջի պատվաստումը:

Ըստ իս, շատ բան կարող էին անել և՛ մանկական, և՛ մասսայական շրջանային գրադարանները: Դրանցից շատերում կազմակերպվում են հանդիպումներ գրողների հետ, նոր գրքերի քննարկումներ: Բայց այդ արվում է անկանոն և, որ գլխավորն է, հաշվի չի առնվում ընթերցողների լսարանը: Գրեթե ոչ մի տեղ չի ուսումնասիրվում ընթերցողը: Ինչո՞վ է հետաքրքրվում երեխան: Պետք է նրա համար գրականություն ընտրել, ինչ-որ բանով անպայման հետաքրքրել: Ի՞նչ ընտանիքից է նա: Կարո՞ղ են արդյոք տանը նրան ընթերցասիրությամբ համակել ծնողները, թե՞ իրենք ևս դեռ պետք է ընթերցասեր դառնան: Բայց չէ՞ որ սա է գրադարանավարուհու անմիջական պարտականությունը և ոչ թե միայն գիրք տալը:

Բայց ինչպե՞ս ձևավորել ընթերցման ճաշակ, երբ այն չի դաստիարակվել մանկուց: Անշուշտ, այստեղ ևս շատ բան կարող են անել գրադարանները: Ոչ մեծ բնավայրերում կամ մեծ քաղաքների միկրոշրջաններում կարելի է հաշվառման վերցնել այն ընտանիքներին, որոնցից ոչ ոք գրադարան չի հաճախում: Կարելի է պարզել՝ ինչու չի հաճախում: Թերևս տանը լավ գրադարա՞ն ունի: Կամ օգտվում է աշխատավայրի՞ գրադարանից: Իսկ եթե դա հենց այնպիսի ընտանիք է, ուր ամիսներ շարունակ ոչ ոք չի հետաքրքրվել գրքով, այդ դեպքում պետք է մտածել հետաքրքրություն առաջացնելու մասին: Հարկավոր է գտնել այդ մարդկանց հետաքրքրությունների, զգացմունքների, հոգսերի բանալին: Եվ, հավանաբար, հարկավոր է կուլտուրայի տներին, ակումբներին, տնային կառավարչություններին կից ստեղծել ավելի շատ գրական խմբակներ:

Ցավոք, նույնիսկ ընթերցասերների համար դեռևս շատ խոչընդոտներ են ստեղծվում: Կիրակի օրերին գրախանութները փակ են, իսկ ընթերցասրահներում սահմանվում են կարճ օրեր:

## ՀԱՆԳՍՏԻ ՕՐԸ ՔԱՂԱՔԻՑ ԴՈՒՐՍ

Հնգօրյա աշխատանքային շաբաթի անցնելուց առաջ սոցիոլոգները հետաքրքրվեցին, թե ժամանցի ինչպիսի ձև կկիրառեն քաղաքացիները, եթե հանգստյան երկու օր ունենան: Իսկ մեկ տարի անց, երբ հնգօրյակը կյանք մտավ, նույն մարդկանց հարցրին՝ ի՞նչն է փոխվել նրանց ազատ ժամանակում: Համեմատելով անկետաները, գիտնականները տեսան, որ ավելի շատ քաղաքացիներ էին ցանկացել ավելացնել քաղաքից դուրս զբոսանքներին, տուրիզմին, որսին ու ձկնորսությանը հատկացվող ժամանակը: Այս լավ ցանկությունները արտահայտողների 2—4 տոկոսն էր միայն իրականացրել իր մտադրությունները: Սակայն պարզվեց, որ կիրակի օրերի հեռուստահաղորդումները նրանք այժմ դիտում են մեկ ու կես անգամ ավելի շատ:

Այո՛, ընտանիքավոր մարդկանց համար տնից դուրս գալը, այն էլ ամբողջ օրը, մանավանդ երկու օրով, այնքան էլ հեշտ չէ: Դժվար է նաև ժամանակի առումով, իսկ ե՞րբ զբաղվեն տնային գործերով: Զուտ հոգեբանորեն ևս— պետք է հավաքես բոլորին, ճանապարհվելու պատրաստես, բոլորի համար ուսապարկեր գնես, ննջապարկեր ձեռք բերես... Իրո՛ք բարդ է:

Շատ են և արտաքին խոչընդոտները: Դի-

ցուք, ընտանիքն ուզում է երկու օրով դուրս գալ քաղաքից: Սակայն հայտնի չէ՝ գիշերելու տեղ կլինի՞: Ճաշարան կգտնվի՞ երեխաներին կերակրելու համար: Կհաջողվի՞ արդյոք գնացք նստել, որը հատկապես այդ երկու օրը լեփլեցուն է լինում մարդկանցով: Եվ հազար ու մի այլ հարցեր: Չի կարելի ասել, որ այս ասպարեզում ոչինչ չի արված:

Մի քանի տարի առաջ ընդունվեց ՀԱՄԿԽ-ի հատուկ որոշումը ընտանեկան հանգստի վերաբերյալ: Ճիշտ է, այնտեղ խոսքը հիմնականում ամառային արձակուրդների մասին էր, բայց որոշ բաներ վերաբերում էին նաև հանգստյան օրերին: Ամենից առաջ սկսվեց գործարանային հանգստի բազաների բարեկարգ, լավ կահավորված տեղամասերի բուռն շինարարությունը գետափին կամ անտառում: Այլ կերպ ասած՝ իրենց աշխատողների ակտիվ հանգստի հոգսն ստանձնեցին իրենք՝ ձեռնարկությունները:

Եվ ահա Մոսկվայի «Կրասնի Օկտյաբր» մեքենաշինական գործարանը Իստրինսկի ջրամբարի ափին կառուցում է փոքրիկ պանսիոնատ-քաղաք: Ուղեգիր ունեցող ամեն ոք կարող է ամառն այստեղ գալ երկու օրով և հետաքրքիր, անձանձրույթ հանգիստն անցկացնել: «Գլավմոսստրոյը» այժմ պանսիոնատ է կառուցում բոլոր հարմարություններով: Պանսիոնատից ոչ հեռու կառուցվում է մանկապարտեզ և պիոներական ճամբար: Ցանկանո՞ւմ եք, որ երեխաներն ամբողջ ամռանը լինեն քաղաքից դուրս, խնդրեմ: Կարոտո՞ւմ եք նրանց, ութ օրով եկեք պանսիոնատ, կտեսնեք նրանց: Աղվերանի, Հանքավանի, Կիրովականի, Դիլիջանի և այլ գեղատեսիլ վայրերում իրենց պանսիոնատներն ունեն և Հայաստանի խոշոր արդյունաբերական ձեռնարկությունները ու հիմնարկությունները:

Լենինգրադի մարզի անտառտնտեսության աշխատողներն առավել գեղատեսիլ, տուրիզմի համար հարմար վայրերում, անտառի խորքում կառուցեցին փայտե խրճիթներ, քարեր ու չոր փայտ դրեցին այնտեղ: Կարո՞ղ եք պատկերացնել, թե երախտագիտության ինչպիսի՜ խոսքեր ասվեցին անտառապահների հասցեին: Պատկերացրեք. գալիս են բազում կիլոմետրեր կտրած ճամփորդները. հանկարծ սկսվում է անձրևը: Հարկավոր է որևէ ապաստան գտնել խիտ ճյուղերի տակ, խարույկ վառել, բայց հենց միայն այն մտքից, որ հեշտությամբ չես վառի թաց ճյուղերը, արդեն տրխրում ես: Եվ հանկարծ... այսպիսի մի խրճի՜թ: Որքա՜ն արտակարգ ուրախություն է պատճառում այս չնախատեսված գյուտը: Անտառտնտեսության աշխատողները, անշուշտ, լավ էին պատկերացրել այդ և ամենից առաջ մտածել էին տուրիստների մասին: Բայց, ի դեպ, իրենց մասին ևս չէին մոռացել: Չէ՛ որ այդպիսով վերանում է խարույկների պատճառելիք վտանգը, որոնք միշտ չեն հասցնում հանգցնել: Այսպես են պահպանվում հարյուրամյա սոճիները: Իսկ ինչո՞ւ ծառերը կտրել, երբ արդեն պատրաստի չոր վառելիք կա:

Ուրիշ էլ որտե՞ղ կարելի է կանգ առնել, հանգրվանել, գիշերել: Այդ նպատակով կարելի է օգտվել սովորական հանգստյան տներից՝ 12-օրյա ուղեգրերով: Ամռանը կարելի է գիշերել նաև գյուղական դպրոցի դատարկ սենյակներում: Վերջապես՝ ապառիկը: Այժմ չեմ խոսի այն մասին, թե որքա՜ն վատ է մատակարարումն այդտեղ: Փորձեք, օրինակ, ամռանը տուրիստական անհրաժեշտ հանդերձանք ձեռք բերել: Ձո՜ւր հույսեր: Այստեղ կարող էր օգտակար լինել ապառիկի առավել ճկուն սիստեմը:

Ընտանիքավոր տուրիստները մեծ դժվարություն են կրում և տրանսպորտի հարցում: Չեն բավականացնում և քաղաքամերձ ավտոբուսները: Բայց չէ՛ որ ամառվա հանգստյան օրերին քաղաքում ավելի քիչ մարդ է լինում, ուստի և կարելի է փոխել որոշ մեքենաների երթուղին, օգնելու համար նրանց, ովքեր ցանկանում են դուրս գալ քաղաքից: Լավ կլիներ նաև ավելացնել «Առողջության գնացքների» թիվը:

## ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

Շատ գրողներ, շեշտելով ժամանակակից մարդու «տեղափոխվելու հակումը», երբեմն այն վերագրում են շարժվելու պահանջին: Արագությունների, սպորտի, վերջապես՝ բժշկության դարն է այս, որը վազքի մեջ է տեսնում նույնիսկ փրկությունն ինֆարկտից: Սակայն ներկա դարը նաև գիտության դար է: Իսկ գիտելիքները միայն գրքերում չեն. և ընտանիքավոր մարդկանց, երեխաներով ծնողների համար այդ ճանապարհորդությունները ո՛չ միայն սպորտային, այլև ճանաչողական մեծ արժեք ունեն:

Ահա թե ինչու վերջին տարիներս հանգստյան օրերին, մասսայական, ինչպես և ընտանեկան ավելի շատ ուղևորություններ են կատարվում դեպի այլ քաղաքներ և՛ գնացքով, և՛ ինքնաթիռով, և՛ սեփական մեքենաներով:

Քաղաքը հանգստյան օրերին դատարկ է: Ուղևորները, մեծ մասամբ ընտանիքավորներ, մեկնում են հիշարժան վայրեր, ճաշում ռեստորանում: Իսկ հետո պետք է մտածել գիշերելու մասին: Հին քաղաքներում հյուրանոցները քիչ են, նորերը դանդաղ են կառուցվում: Բայց չէ որ մասնավոր տներ կան: Օրինակ, Կովկասի սեծովյան ափերի կամ Ղրիմի ցանկացած քաղաքում, ցանկացած բնակավայրում, գրեթե միշտ կարելի է բնակարան գտնել: Իսկ «ցամաքային քաղաքների» բնակիչները դրան վարժված չեն, սովոր չեն: Բավական է այստեղ ստեղծել բնակարանային բյուրո, և բնակարան վարձով տալու սովորույթը կմտնի կենցաղի մեջ: Նպատակահարմար կլիներ ստեղծել որևէ ձեռնարկություն, որը կոչվեր, ասենք՝ «Կիրակնօրյա հանգիստ»:

## ՀԱՆԳԻՍՏԸ ՔԱՂԱՔՈՒՄ

Մինչև այժմ խոսում էինք քաղաքից դուրս հանգստի մասին: Բայց չէ որ, ինչպես գիտենք, բնակչության մեծամասնությունը մընում է քաղաքում: Ուրեմն ինչպե՞ս օգնել նրանց:

Արդեն պարզել ենք, որ ընտանիքավոր մարդկանց 5—10 տոկոսն է սիստեմատիկաբար զբաղվում սպորտով: Մեր երկրում 89 հազար ֆուտբոլի խաղադաշտ կա, 2,9 հազար մարզադաշտ, 43 հազար սպորտ-դահլիճ, ավազաններ: Ցավոք, այս կառույցների ճնշող մեծամասնությունը նախատեսված է միայն մարզիկների համար: Իսկ նրա՞նք, ովքեր հավաքվում են ոչ այնքան սպորտով, որքան ֆիզկուլտուրայով զբաղվելու, ոչ թե ռեկորդների, այլ իրենց համար: Նրանց մեջ կան և ընտանիքավորներ. բայց նրանք գիտեն, որ ֆուտբոլային դաշտերը, թենիսի հրապարակները, սպորտ-դահլիճները իրենց համար չեն, չնայած երբեմն դրանք մնում են անօգտագործելի: Իսկ այնտեղ, ուր մտահոգված են մասսայական սպորտով, պարզ է՝ սպորտային ողջ փոնդը ծախսվում է առավել խնամքով: Տեսնենք, թե ինչպես է այդ արվում Կալուգայի մարզի Օբնինսկ քաղաքում: Այնտեղ քաղաքային գործադիր կոմիտեն պարբերաբար արշավներ է կազմակերպում դեպի մարզադաշտերը: Արշավի մասնակիցները ժամացույցը ձեռքներին ստուգում են, թե քանի ժամ են այդ հրապարակները դատարկ մնում: Հետո նրանք կազմում են այդ «պատուհանների» ցուցակը և ուղղվում դեպի ձեռնարկությունները՝ ցանկացողներ հավաքագրելու: Բնական է, որ այս քաղաքում գրեթե յուրաքանչյուր երրորդ ընտանիքավորը, չափահասը զբաղվում է սպորտով:

Անշուշտ, ֆիզկուլտուրայով կարելի է զբաղվել ո՛չ միայն մարզադաշտերում, ամռանն այդ նպատակով կարելի է օգտագործել նաև զբոսայգիները: Վերջին տարիներս լավ սովորույթ է նկատվում— հասակավոր մարդկանց համար ստեղծվում են առողջության խմբակներ, բայց, չգիտես ինչու, դրանք դեռևս շատ քիչ են:

Զբոսայգին, իհարկե, մարզադաշտ չէ. դրա գլխավոր նպատակը մարդկանց ֆիզիկական մարզումը չէ, այլ նրանց հանգստանալու, զըվարճանալու հնարավորություն ընձեռելը: Սակայն այնտեղ, ուր հասկանում են, որ հանգիստը լուրջ գործ է, այնտեղ, ուր ուսումնասիրում ու լավ են ճանաչում այցելուներին, սովորաբար աշխատանքը լավ է կազմակերպվում: Օրինակ, Մոսկվայի «Սոկոլնիկի» զբոսայգում կա մեկօրյա հանգստյան տուն, ուր կարելի է անցկացնել ընտանիքի ազատ օրը: Որոշ այգիներում կան մանկական հրապարակներ, որտեղ ծնողները կարող են թողնել իրենց երեխաներին և գնալ կինո, ընկերական հանդիպումների, կամ մակույկով նավարկել: Դաստիարակչուհին այստեղ երեխաներին զբաղեցնում է խաղերով, և նրանք չեն ձանձրանում:

Զբոսայգիներն օգտագործում են նաև մասսայական զբոսանքների համար: Բայց այդ մասսայական տոներին չկա իսկական ուրախություն, դիմակահանդեսային զգեստներ: Մի անգամ ինձ վիճակվեց ներկա գտնվել հունգարական Սեգեշսեգևար փոքրիկ քաղաքում տարին մեկ անգամ տեղի ունեցող ավանդական դիմակահանդեսին: Երաժշտական թատերականացված մի շքերթ էր այդ՝ զարգացող սյուժեով: Սյուժեի հիմքում Հունգարիայի պատմությունն էր, նրա կարևորագույն իրադարձությունները հնադարից մինչև մեր օրերը: Այստեղ և՛ լեգենդներ էին, և՛ ուրախ ու տխուր իրական էպիզոդներ, և՛ երազանքներ ապագայի մասին: Բոլոր փողոցներում դրված բարձրախոսներից հնչում էր շքերթի՝ մերթ հաղթական քայլերգը, մերթ՝ ժողովրդական երգերը, թմբուկների ձայնն ու օդանավերի գվվոցը: Դրան միանում էր և արտասանությունը՝ ժողովրդական պոետների բանաստեղծությունների լավագույն տողերից:

Ահա հենց այսպիսի համընդհանուր ուրախություն առաջացնող թատերայնության, տոնակատարության զգացողությունն է պակասում զբոսայգիների մեր մասսայական հանդիսություններին:

Կիրակին ու շաբաթը էքսկուրսիաների ամենահարմար ժամանակն են: Արդյոք մենք լա՞վ ենք ճանաչում մեր քաղաքը: Չարժե՞ այն ուսումնասիրել մինչև այլ քաղաքներ ճամփորդության մեկնելը: Բոլոր էքսկուրսիոն բյուրոների պլանում կա «Քաղաքացիների կիրակնօրյա հանգիստը» կետը, որը կատարվում է շատ պասսիվ:

## ՍԻՐՈՂՆԵՐԸ

Խոսելով երեկոյան կամ կիրակնօրյա հանգստի մասին՝ չպետք է մոռանանք սիրողներին՝ ինքնուս նկարիչներին, ծաղկաբույծներին,

ֆիլատելիստներին... Զգտումը նկարչության նկատմամբ, կենդանիների խնամքը կամ ծաղիկներ աճեցնելը հաճախ մարդկանց մեջ պահպանվում է նաև ընտանիք կազմելուց հետո: Ազատ ժամանակի ամեն մի րոպեն սիրողը նվիրում է իր համար հաճելի, հոգեհարազատ զբաղմունքին: Միայն թվում է, թե սիրողական զբաղմունքը սոսկ «իր համար է». մինչ կատարողը շատ կուզենար ցուցադրել իր պատրաստածը, լսել այլոց քաջալերող խոսքը, կամ գործնական խորհուրդը: Ահա հենց այստեղ էլ անհրաժեշտ է հասարակական օգնությունը: Ցանկացած զբոսայգում կամ կուլտուրայի տանը կարելի է կազմակերպել բոլոր ծաղկաբույծների, նկարիչների, ասեղնագործողների կամ ձեռքի այլ աշխատանքի վարպետների ցուցահանդեսներ: Եվ թող դա լինի ամբողջ քաղաքի (եթե քաղաքը փոքր է), միկրոշրջանի մասշտաբով:

Ի դեպ, մենք առայժմ պատշաճ ուշադրություն չենք նվիրում սիրողներին: Եվ զուր. չէ՛ որ մեզ ուրախացնող ցանկացած գործով ըզբաղվելը վերականգնում է հոգեկան հավասարակշռությունը, մեզնից պահանջում հնարամտություն, նախաձեռնություն, երևակայություն: Այսպիսի զբաղմունքը նպաստում է անհատի ինքնադրսևորմանը: Բացի դրանից, թոշակավորված մարդկանց հոգեվիճակն ուսումնասիրող հոգեբանները պարզել են, որ սիրողական զբաղմունքը գերոնտոլոգիական լավ պրոֆիլակտիկա է և, ինչպես հոգեբանական, նույնպես և ֆիզիկական ինքնաբուժում:

### ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻ ՀԵՏ

Անտուան դը Սենթ-Էկզյուպերին մարդկային հարաբերությունները համարել է շքեղության շքեղությունը: Զրուցել, արտահայտվել, մտքեր փոխանակել... լսել, միասին ուրախանալ, ցավակցել, քննարկել, վիճել, խնդիրներ առաջադրել: Որքա՜ն շատ են մարդկային փոխհարաբերության երանգները, դրանք «շքեղություն» են, մեծագույն հաճույք: Եվ, իհարկե, ժամանցի լավ ձև: Արդեն ասացինք, որ հյուրերի հետ հանդիպումները ընտանիքավոր մարդկանցից տարեցտարի ավելի շատ ժամանակ են խլում: Ճիշտ է, այս հանդիպումները հաճախ տանից դուրս չեն լինում (ինչպես երիտասարդների մոտ՝ փողոցում, կինոյում, պարասրահներում, ակումբում), այլ ընտանեկան սեղանի շուրջը:

Սոցիոլոգներ Լ. Գորդոնը և Է. Կլոպովը Մարդը աշխատանքից հետո գրքում վերլուծել են ընտանեկան հանգստի այս ձևը: Ամենից առաջ, ասում են հեղինակները, խիստ տարբեր են ընտանիքավորների և երիտասարդների փոխհարաբերությունները բարեկամների ու հարազատների հետ: Ամուսինների ու ծնողների համար այս կապերը կարծիքներ փոխանակելու, տեղեկություններ ստանալու համար են: Ո՞ւմ հետ են ավելի հաճախ հանդիպում ընտանիքի հայրերն ու մայրերը. ազգականների հետ (55 տոկոս), բարեկամների ու ծընողների (47 տոկոս), աշխատանքային ընկերների (23 տոկոս), հարևանների հետ (10 տոկոս):

Մինչ կանայք ավելի հաճախ են հանդիպում հարազատներին, տղամարդիկ՝ աշխատանքային ընկերներին: Որքան բարձր է կրթության մակարդակը և որքան ցածր տարիքը, այնքան ավելի քիչ են հանդիպումները հարազատների, ավելի հաճախ՝ ընկերների հետ: Ինչո՞վ են զբաղվում ընտանիքավոր մարդիկ հյուր գնալիս. զրուցում են, հեռուստացույց դիտում (ավելի շատ կանայք), դոմինո, թղթախաղ, շախմատ, շաշկի (ավելի շատ տղամարդիկ) են խաղում, ռադիոյով կամ մագնիտոֆոնով երաժըշտություն լսում: Ավելի քիչ պարում կամ երգում են: Մի խոսքով, բարեկամները կարևոր տեղ են գրավում յուրաքանչյուր ընտանիքի կյանքում:

Հիշենք, թե ինչպես ենք մենք հյուր ընդունում: Տանտիկինները վազում են խանութ կամ շուկա, ապա պատրաստություն տեսնում, իսկ երբ արդեն հյուրերը հավաքվում են, շարունակում են պտտվել սենյակից խոհանոց, խոհանոցից՝ սենյակ: Բայց չէ՛ որ ձեր հյուրն են բարեկամները, և նրանց հետ ունեցած ձեր հանդիպման հիմնական նպատակը ոչ թե ճոխ սեղանն է, այլ զրուցելը, և այն էլ ոչ ընդհատումներով, ինչպես սովոր ենք հեռուստացույց դիտել, այլ՝ հանգամանորեն, առանց շտապելու: Եվ հաճախ այսքան բաղձալի հանդիպումից հետո, երբ հյուրերն արդեն ցրվում են, ու հոգնած կինն սկսում է ամանները լվանալ, ամուսնուն հարցնում է՝ «Իսկ ինչո՞վ վերջացավ այն պատմությունը, ես չհասցրի լսել»:

Շատ ավելի հանգիստ կլիներ ընկերների հետ հանդիպել որևէ հասարակական վայրում: Բայց որտե՞ղ հանդիպես: Ռեստորանո՞ւմ: Չափազանց թանկ է. և հետո երեկոները դրա՞ք լիքն են մարդկանցով, ու եթե միջոցներ էլ ունենաս, չես կարող գնալ: Մինչև հերթ կանգնես, մինչև 4—5 մարդու համար սեղան գտնես, զրուցելու ցանկությունն էլ կկորչի, բացի դրանից, ռեստորանային մթնոլորտն իսկ՝ մեծ դահլիճը, նվագախումբը, պարերը, էստրադային երգչուհին, ավելի շատ զվարճության են տրամադրում, քան անկեղծ զրույցի:

Ա՛յ թե հնարավոր լիներ նստել սրճարանում: Այնտեղ և՛ լուռ է, և՛ մենուսի: Բայց սրճարանները մեզ մոտ, չգիտես ինչու, շատ



շուտ են փակվում՝ 8—9-ին: Արդյոք հաճա՞խ ենք հավաքվում մենք բոլորս՝ մայր, հայր, երեխաներ. հանգիստ լսում միմյանց... քննարկում վերջին կինոնկարը կամ գիրքը: Հավանաբար, լավ մթնոլորտ պահպանելու համար շատ օգտակար կլիներ գոնե շաբաթը մեկ անգամ, շաբաթ կամ կիրակի օրերը սրճարան գնալ: Հենց այն իրոք ընտանեկան սրճարանը, որը կարող է ունենալ և՛ մանուկների խաղասենյակ, և՛ մանկական ամսագրերով ու թերթերով ծանրաբեռն գրադարակներ:

Կարծում եմ, «Ընտանեկան» ցուցանակով սրճարանը՝ իր բոլոր հարմարություններով, հիանալի նվեր կլինի ընտանիքավորների և այլոց համար:

* * *

Տարեցտարի ավելի ու ավելի է մեծանում մեր ազատ ժամանակը: Կրճատվել է աշխատանքային շաբաթը, մեկի փոխարեն ունենք երկու հանգստյան օր: Հազարավոր բնակիչներ տեղափոխվել են նոր, հարմարավետ բնակարաններ: Գազը, ջուրը, կենտրոնական ջեռուցումը ազատել են մեզ տնտեսական շատ հոգսերից: Մյուս հոգսերը՝ լվացքը, քիմիական մաքրումը, իրերի վերանորոգումը, հագուստների կարումը, կատարում է կենցաղսպասարկման ծառայությունը: Իսկ երկարօրյա մանկապարտեզներն ու դպրոցները անգնահատելի ծառայություն են մատուցում երեխաների խնամքի հարցում:

Այս ամենը, իհարկե, ոչ միայն թեթևացնում է մեր կյանքը, այլև ազատ ժամանակ է թողնում հանգստի համար: Հիշենք, որ հատկապես այդ ժամերը, աշխատանքից ազատ ժամանակը, Մարքսն անվանում էր մարդու գլխավոր հարստությունը, քանի որ այդ ժամերին նա կարող է զբաղվել իր հոգեկան ու ֆիզիկական զարգացմամբ: Աշխատեցնել միտքը, զգացմունքը, մկանները՝ այս է բովանդակալից ժամանցը: Այն մարդկանց պետք է բոլոր տարիքներում, բայց, թերևս, հատկապես կարևոր է տարեց, ընտանիքավոր մարդկանց համար: Որովհետև կենցաղային, առօրյա հոգսերն այնքան ժամանակ են խլում, որ մարդ չի հասցնում ընթերցել, թանգարաններ, թատրոններ հաճախել, զբաղվել սպորտով, սիրած գործով, ճամփորդել: Հաճախ պատճառը գուցե օգտակար ժամանցի անբավարար ձգտումն է: Կամ՝ հասարակության անբավարար օգնությունն ընտանիքին: Ամեն դեպքում գործը կարելի է շտկել միայն մի ճանապարհով— ընտանեկան հանգստի պրոբլեմի վրա կենտրոնացնել հասարակության, մեր բոլորի ուշադրությունը: Զգայուն վերաբերվել աշխատավորների, մարդկանց կարիքներին ու պահանջմունքներին. այս խնդիրը վերստին կարևորեց ՍՄԿԿ Կենտկոմը իր «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշմամբ:

# ԿԱՐԵՎՈՐԸ ՈՐԱԿԱԿԱՆ ԱՃՆ Է

**ՆԵԼԼԻ ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար

*ԿՅԱՆՔԻ ԲՈԼՈՐ ՈԼՈՐՏՆԵՐՈՒՄ կուսակցության ազդեցության ընդլայնմանը և ուժեղացմանը զուգընթաց կարևորագույն նշանակություն է ստանում կուսակցության անդամության՝ կուսակցական շինարարության այդ արմատական հարցը։ ՍՄԿԿ պատմության մեջ, ըստ էության, չի եղել այնպիսի մի համագումար, որտեղ քննարկված չլինեն կուսակցության շարքերի աճի ու անաղարտության համար պայքարի, նրա որակական կազմի բարելավման հարցերը, երկրի պատմական կոնկրետ իրադրությանը համապատասխան նախանշված չլինեն այդ ասպարեզում իրականացվելիք միջոցառումները։*

*ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների նյութերում ու որոշումներում պատշաճ արտացոլում են գտել կուսակցության շարքերի համալրման խնդիրները։ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Եվ որքան առաջ ենք շարժվում, որքան ավելի խոշոր խնդիրներ է լուծում կուսակցությունը, այնքան ավելի շատ պետք է հոգ տանենք նրա շարքերը համալրելու թարմ ուժերով, այն մարդկանց հաշվին, ովքեր արժանացել են սկզբնական կուսակցական կազմակերպության, ամբողջ կոլեկտիվի ճանաչմանը, ովքեր իրենց ակտիվորեն են դրսևորում արտադրության մեջ և հասարակական կյանքում»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 95)։*

*ՍՄԿԿ XXV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում կուսակցության շարքերի ամրապնդման նկատմամբ հոգատարության մի նոր դրսևորում էր Կիրգիզիայի կուսակցական կազմակերպությունում կուսակցության շարքերի աճի և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Այդ փաստաթղթում կարևորվել է կուսակցության հետագա ամրապնդման, հասարակության մեջ նրա ղեկավար դերի բարձրացման գործում այդ աշխատանքի հսկայական նշանակությունը։ ՍՄԿԿ Կենտկոմը կուսկազմակերպությունների առջև կոնկրետ խնդիրներ դրեց կուսակցության շարքերի համալրման, երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործը այսուհետև առավել ևս բարելավելու համար։*

*ՀԿԿ Երևանի քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործումն ապահովելու նպատակով մշակել են միջոցառումների ծավալուն ծրագիր և հաջողությամբ իրականացնում են դրանք։ Քաղկոմի բյուրոն քննարկել է այդ որոշման կատարման ընթացքը Սովետական շրջանի կուսկազմակերպությունում, ՀԿԿ Լենինյան շրջկոմը՝ «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման սկզբնական կուսկազմակերպությունում։ Նույնատիպ հարցեր են քննարկել նաև կուսակցության մյուս շրջկոմները։*

*Կուսակցության շարքերի աճը գիտակցականորեն կարգավորվող պրոցես*



*է, որում կարևոր դեր է հատկացվում սկզբնական կուսկազմակերպություններին։ Իրենց բազմաբովանդակ գործունեության ընթացքում նրանք հնարավորություն են ունենում խորությամբ ուսումնասիրելու, պրակտիկ աշխատանքում ստուգելու մարդկանց քաղաքական, գործնական ու բարոյական հատկանիշները և, ղեկավարվելով կուսակցության մեջ ընդունելության անհատական ընտրության սկզբունքով, նրանցից լավագույններին ներգրավել կուսշարքերը։*

*Քաղաքային կոմիտեն պարբերաբար և համակողմանիորեն վերլուծում է շրջանային և սկզբնական կուսկազմակերպությունների կազմում տեղի ունեցած քանակական ու որակական փոփոխությունները, քննարկում կուսակցության նոր անդամների ընդունելությանն ու երիտասարդ կոմունիստների դաստիարակությանն առնչվող հարցեր։ Այդ ուսումնասիրություններն ու քննարկումները ցույց են տալիս, որ կուսշրջկոմներն ու սկզբնական կուսկազմակերպությունները ուժեղացրել են պահանջկոտությունը կուսակցության մեջ ընդունվողների նկատմամբ։ Նրանք առաջին հերթին կարևորում են մարդկանց արտադրական գործունեությունն ու քաղաքական-գաղափարական պատրաստականությունը, հասարակական հանձնարարությունների կատարման գործում նրանց ցուցաբերած պարտքի զգացումը։*

*ՀԿԿ Երքաղկոմը և շրջկոմները կուսակցության նոր համալրման նպատակով տարվող իրենց աշխատանքում հաշվի են առնում կուսակցության XXV համագումարի այն դրույթը, որ ՍՄԿԿ-ն չի արագացնում իր թվական աճը. կարևորը ոչ թե նոր անդամների ընդունելությունն է ընդհանրապես, այլ այն, որ կուսակցությունն իր շարքերն ընդունում է միայն նրանց, ովքեր գործով ապացուցում են, որ կուսակցության մեջ են մտնում, Լենինի խոսքերով ասած, ոչ թե որևէ շահ ստանալու համար, այլ հանուն կոմունիզմի կատարած անձնվեր աշխատանքի։*

*ՍՄԿԿ շարքերի աճը կուսակցության քաղաքականության կենսունակության արտահայտությունն է, նրա հսկայական ձգողական ուժի, հասարակության մեջ ունեցած քաղաքական ու բարոյական մեծ հեղինակության արտահայտությունը։ Այն արտացոլում է մասսաների և կուսակցության կենդանի կապը, կոմունիստական շինարարության յուրաքանչյուր փուլում նրա հմուտ ղեկավարությունը, հասարակական պրոցեսների, աշխատանքի բոլոր տեղամասերի վրա նրա ներգործության ուժեղացումը։ Սակայն նոր անդամների ընդունելությամբ չափից ավելի տարվելը հակասում է կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներին։ Կուսակցությունը հենվում է ոչ թե իր շարքերի քանակական աճի, այլ որակական կատարելագործման վրա։ Խոսքն այն նոր թարմ հոսանքի մասին է, որը նպաստում է կուսկազմակերպությունների ամրապնդմանը և տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման ընթացքում նրանց ազդեցության ուժեղացմանը։*

*Քաղաքային կուսակցական կազմակերպությունում, ճիշտ է, վերջին տարիներին որոշ չափով պակասել է ընդունելությունը, սակայն դրա հետ մեկտեղ, առավել խիստ, անհատական ընտրության շնորհիվ կուսակցության շարքերը համալրվել են բանվոր դասակարգի, կոլտնտեսականների, մտավորականության, լենինյան կոմերիտմիության, կանանց արժանավոր ներկայացուցիչներով։ 1977—78 թթ. և ընթացիկ տարվա առաջին ութ ամսում քաղաքի սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ շարքերը որպես թեկնածու ընդունվել է 5519 մարդ։*

*Հետևողականորեն և հաստատակամորեն իրականացնելով կուսակցության շարքերի աճի կազմակերպման և որակական կազմի բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ պահանջները՝ մենք կարողացել ենք ապահովել ժողտնտեսության տարբեր ոլորտներում կուսակցական կորիզի համալրման որոշակի համամասնություն։ Այս ասպարեզում մեզ համար ուղեցույց է եղել ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած լենինյան այն դրույթը, որ «Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ կոմունիստական կուսակցությունը դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցություն, նա բնավ չի կորցնում իր դասակարգային բնույթը։ Իր էությամբ ՍՄԿԿ եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը» (նույն տեղը, էջ 93)։*

Բանվոր դասակարգը մեր հասարակարգի ամենաբազմամարդ ու կազմակերպված դասակարգն է, հիմնական արտադրաուժը, որը ստեղծում ու բազմապատկում է հասարակության նյութական հարստությունն ու ինտելեկտուալ պոտենցիալը: Բանվորների գաղափարական ու քաղաքական հասունությամբ, կազմակերպվածությամբ ու բարձր որակավորմամբ են մեծապես պայմանավորված գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների իրականացումը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը: Ուստի, կարևոր է, որ ամեն մի բանվորական միջավայրում լինեն ավելի շատ այնպիսի մարդիկ, որոնք, գտնվելով կոլեկտիվի ավանգարդում, ի վիճակի լինեն անձնական օրինակով ոգևորել, իրենց հետևից տանել մյուսներին, նպաստել աշխատանքային կոլեկտիվներում բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի ստեղծմանն ու պահպանմանը: Բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչները կուսակցության աճի հիմնական բազան են: 1971—75 թթ. բանվորները կազմել են կուսակցության մեջ որպես թեկնածու ընդունվածների 61,2 տոկոսը, իսկ ընթացիկ հնգամյակի տարիներին՝ 63,4 տոկոսը: Առավել խոշոր արդյունաբերական շրջանների (Լենինյան, Շահումյան, 26 կոմիսարների անվան) կուսակցական կազմակերպություններում որպես անդամության թեկնածու ընդունվածների մեջ բանվորները կազմել են 72—77 տոկոսը: Մենք այսուհետ ևս հետևողականորեն պետք է շարունակենք այդ կուրսը: Ընդ որում, բանվորական միջուկի ամրապնդումը նշանակալից է ո՛չ միայն քանակական, այլև որակական կազմի բարելավման առումով: Վերջին երեք տարվա տվյալներից երևում է, որ ՍՄԿԿ շարքերը որպես թեկնածու ընդունվածների մեջ ճնշող մեծամասնություն են կազմում քաղաքի արդյունաբերության առաջատար ճյուղերի՝ էլեկտրոնային, սարքաշինական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, քիմիական, թեթև արդյունաբերության և այլ ձեռնարկությունների բանվորները: Դա բացատրվում է քաղաքի էկոնոմիկայում կատարված լուրջ տեղաշարժով:

Քաղաքի բազմաթիվ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններ ճիշտ են ըմբռնել կուսակցության պահանջը և խոր շահագրգռություն են հանդես բերում իրենց շարքերի աճն այնպիսի բանվորների հաշվին ապահովելու գործում, որոնք կոմունիստ դառնալու ցանկությունն ամրապնդում են աշխատանքային կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների կենսագործման մեջ ունեցած իրենց անձնական ավանդով: Այդպիսի օրինակ կարող է տալ «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման կուսկազմակերպությունը: Այստեղ կա 1040 կոմունիստ: 1977 թ. սկզբին, Կիրգիզիայի կուսկազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը քննարկելիս, արտադրամասային կուսկազմակերպություններում կուսակցության շարքերի ընդունելության կապակցությամբ եղան բազմաթիվ քննադատական դիտողություններ ու առաջարկություններ: Կուսկոմիտեն (քարտուղար՝ Վ. Դաշյան) ուշադրությամբ ուսումնասիրեց դրանք և կազմեց համապատասխան միջոցառումների պլան: Մշակվեց նաև անկուսակցական ակտիվի՝ արհմիութենական ու կոմերիտական կազմակերպիչների, հասարակական այլ կազմակերպությունների ակտիվիստների հետ տարվող աշխատանքի որոշակի համակարգ: Հատուկ ուշադրություն նվիրվեց կոմունիստականի կոչմանն արժանացած, ստեղծագործական նախաձեռնություն հանդես բերող բանվորների, ռացիոնալիզատորների հետ տարվող աշխատանքին: Արտադրամասային կուսկազմակերպությունների բյուրոների հանձնարարությամբ մեծ թվով ՍՄԿԿ անդամներ՝ վարպետներ, հերթափոխերի պետեր, աշխատանքի վետերաններ, ստանձնեցին երիտասարդության շեֆությունը և սկսեցին օգնել նրանց՝ որակավորման բարձրացման, քաղաքական գիտելիքների հիմունքների տիրապետման, հասարակական գործունեության ակտիվացման գործում: Նրանցից յուրաքանչյուրն իրեն պատասխանատու էր զգում կուսշարքերի որակական աճի ապահովման հարցում: Միավորման գլխամասային ձեռնարկության ցոկոլի, պարույրների և ցերեկային լամպերի արտադրամասերում այսօր բանվորները կազմում են կոմունիստների ընդհանուր թվի 78—83 տոկոսը:

Այժմ այդ կազմակերպության համար տիպական է, որ նրա գրեթե բոլոր



անդամները խորապես շահագրգռված են արժանավոր ընկերներով իրենց շարքերի համալրմամբ: Նրանք անտարբեր չեն այն հարցի նկատմամբ, թե ովքեր կլինեն ո՛չ միայն իրենց աշխատանքային, այլև կուսակցական ընկերները: 1976—78 թթ. ընթացքում միավորման գլխամասային ձեռնարկությունում ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունված 146 մարդուց 138-ը եղել են բանվորներ: Նրանք բոլորը սոցմրցության առաջավորներ են, կատարում ու գերակատարում են արտադրական պլանները, 113-ը՝ բարձրացնում են իրենց որակավորումը, ստանում երկրորդ, երրորդ մասնագիտությունը, 54-ը հեռակա կարգով սովորում են բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում:

Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատում (կուսկոմիտեի քարտուղար՝ Ա. Գևորգյան) վերջին երեք տարիներին կուսշարքերն ընդունված 60 անդամության թեկնածուներից 52-ը բանվորներ են: Նրանցից 12-ը հնգամյակի պլանը կատարել են ժամկետից շուտ, 46-ը սիստեմատիկաբար գերակատարում են պլանային առաջադրանքները, 7-ը՝ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 24-ի լուսանկարները փակցված են պատվոտախտակին, 19-ինը՝ պատվոգրքում, 11-ը Շահումյանի շրջսովետի դեպուտատներ են: Երիտասարդ կոմունիստների հենց միայն այսպիսի կազմն արդեն վկայում է կուսակցական նոր համալրման ասպարեզում կազմակերպության կատարած արդյունավետ և բարեխիղճ աշխատանքի մասին: Այդպիսի կազմակերպությունները եզակի չեն, նրանցում թարմ ուժի ներհոսը կատարվում է առաջին հերթին այն արտադրամասերի ու ծառայությունների բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների հաշվին, որոնց գործունեությամբ է հիմնականում պայմանավորված կոլեկտիվում տնտեսական, քաղաքական ու դաստիարակչական խնդիրների իրականացման հաջողությունը:

Այդպիսի նպատակային ու ճիշտ ընտրությունը ձեռնարկությունների ղեկավարությանն ու կուսկոմիտեներին հնարավորություն է ընձեռում տեղաբաշխել կոմունիստների ուժերն այնպես, որ արտադրական պլանների կատարման ու սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում նրանք ունենան իրենց անմիջական մասնակցությունն ու դրական ազդեցությունը:

Սակայն, ցավոք, դեռևս քիչ չեն նաև այնպիսի կազմակերպությունները, որտեղ կուսակցության շարքերի նոր համալրումը կատարվում է առանց տարբերակման, առանց կոլեկտիվի առանձնահատկությունները հաշվի առնելու: Այդ առումով բնորոշ է «Հայքիմմեքենա» արտադրական միավորման օրինակը: Միավորման 2600 բանվոր-ծառայողների գրեթե կեսը ընդգրկված է կոմպրեսորների արտադրամասում և տալիս է արտադրանքի ընդհանուր ծավալի 40 տոկոսը, իսկ պոմպերի արտադրությունում աշխատում է շուրջ 900 մարդ: Մինչդեռ կոմպրեսորների արտադրությունում կոմունիստները կազմում են աշխատողների 5,7 (1300-ից՝ 75-ը), իսկ պոմպերի արտադրությունում՝ մոտ 12 տոկոսը (900-ից՝ 107-ը): Գործարանում կոմունիստներ են ինժեներատեխնիկական անձնակազմի 23,3, իսկ բանվորների՝ միայն 8 տոկոսը: Թվում է, թե նման պատկերը պետք է հուշեր կուսկոմիտեին, նրա նախկին քարտուղար Ռ. Կարապետյանին և այժմյան քարտուղար Յու. Մուրադյանին՝ միավորման առաջատար արտադրամասերը, հատկապես կոմպրեսորների արտադրությունը ամրապնդելու առաջավոր կոմունիստ բանվորներով: Սակայն, ինչպես ցույց տվեց ուսումնասիրությունը, վերջին չորս տարիներին կուսշարքերի աճի մոտ կեսը տեղի է ունեցել պոմպերի արտադրամասի հաշվին: Այստեղ կուսշարքերն ընդունված 20 մարդուց 4-ը տեխնիկական վերահսկողության բաժնի հսկիչներ են, մեկը՝ պահեստապետ և մեկը՝ ինժեներ-կոնստրուկտոր: Ընդ որում, վերջին երկուսը՝ մանկավարժական բարձրագույն կրթությամբ: Ինչպես տեսնում ենք, գործարանում պարզապես բացակայել է հոգատար, ուշադիր, գործի շահերից բխող վերաբերմունքը կուսշարքերի համալրման, նրա որակական կազմի բարելավման նկատմամբ:

Երբ շեշտում ենք կուսակցության մեջ բանվորական միջուկն ամրապնդելու անհրաժեշտությունը, ապա խոսքն ամենևին էլ գրոհայնության ճանա-

պարհով բանվորների տոկոսը բարձրացնելու մասին չէ։ Հասարակության կյանքում բանվոր դասակարգի ավանգարդային դերը չի նշանակում, թե դա մեխանիկորեն տարածվում է յուրաքանչյուր բանվորի վրա։ ՍՄԿԿ շարքերի համալրման գործում նախապատվությունը առաջավոր բանվորներին տալը ոչ միայն չի բացառում, այլ նաև ենթադրում է խիստ անհատական մոտեցում յուրաքանչյուր ընդունվողի նկատմամբ։ Մարդը կուսակցության շարքերն ընդունվելու իրավունք պետք է նվաճի իր գործերով, գաղափարական համոզվածությամբ, աշխատանքում իր բոլոր ուժերն ու կարողությունները գործադրելու ձգտմամբ, այն տեղամասերում ներդրած իր ավանդով, ուր վճռվում է ժողովրդատնտեսական պլանների կատարման բախտը։

Մեր արագորեն զարգացող ժողովրդական տնտեսության մեջ մեծ չափով աճում է շինարարական, տրանսպորտային ու կապի ձեռնարկությունների և կազմակերպությունների նշանակությունը։ Մայրաքաղաքի էկոնոմիկայի այդ կարևորագույն ճյուղերի հետագա զարգացման պրոբլեմները նախանշված են Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման և Մետրոպոլիտենի շինարարության ծավալման վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի ու հանրապետության կառավարության որոշումներում։

Կուսակցության քաղաքային կոմիտեն, բնականաբար, շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը սևեռել է կուսակցության շարքերը հենց այդ բնագավառի առաջավոր աշխատողներով համալրելու վրա։ Չնայած որ այդ ասպարեզում որոշակի գործ է արվել, սակայն մտահոգող է այն հանգամանքը, որ շինարարական, տրանսպորտային, սպասարկման ոլորտի ձեռնարկությունների ու հիմնարկությունների կուսկազմակերպությունները դեռևս դանդաղ են աճում։ Դրա հիմնական պատճառը կուսշարքերի ընդունելության նկատմամբ այդ կազմակերպությունների կուսկոմիտեների ու բյուրոների ցուցաբերած անհետևողական, անսկզբունքային վերաբերմունքն է, երիտասարդ շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական անբավարար աշխատանքը։

Շինարարական կազմակերպությունները միանգամայն անբավարար են ուսումնասիրում կուսշարքերն ընդունվողների գործնական, քաղաքական ու բարոյական հատկանիշները, ինչպես հարկն է չեն զբաղվում երիտասարդ կոմունիստների դաստիարակությամբ։ Հետևանքը լինում է այն, որ կարճ ժամանակ անց նրանց մի մասն իր գործողություններով արատավորում է կոմունիստի վեհ կոչումը, դուրս մնում կուսակցության շարքերից։ Այսպես, համաշինարարական № 3 տրեստի աշխղեկ Ս. Զատիկյանը 1976 թ. կուսշարքերն ընդունվելուց մեկ ու կես տարի անց վտարվեց կուսակցության շարքերից սոցիալիստական սեփականության հափշտակության համար և դատապարտվեց կուսշարքերն ընդունվելիս իրեն երաշխավորած աշխղեկ Խ. Միրզոյանի հետ միասին։ Ինչպես ասում են, մեկնաբանություններն ավելորդ են։ Նշենք միայն, որ 1978 թ. այդ տրեստի կուսկազմակերպության չորս անդամներ տարբեր պատճառներով վտարվել են կուսշարքերից։

Զարգացած սոցիալիզմի ներկա փուլում գիտատեխնիկական հեղափոխության իրականացման, սովետական մարդկանց դաստիարակության, ժողովրդի կուլտուրայի ու կրթական մակարդակի բարձրացման, կոմունիստական շինարարության բոլոր խնդիրների լուծման գործում նշանակալի դեր է խաղում սովետական մտավորականությունը։ Դա բնորոշ է նաև մեր մայրաքաղաքին։ Երևանի քաղաքային կուսկազմակերպությունը միայն տասներորդ հնգամյակի անցած տարիներին իր շարքերը համալրել է մտավորականության 2230 լավագույն ներկայացուցիչներով, այդ թվում ինժեներատեխնիկական, գիտության, կուլտուրայի բնագավառի աշխատողներով։

Ծառայողների թվից ՍՄԿԿ շարքերն ընդունելու հարցը քննարկելիս մենք ելնում ենք կուսակցության այն պահանջից, որ ընտրության ժամանակ նախապատվությունը տրվի ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի մասնագետներին։ 1975 թ. համեմատությամբ նրանց տեսակարար կշիռը ծառայող կոմունիստների ընդհանուր թվի մեջ աճել է ավելի քան 11 տոկոսով։ Սակայն ՍՄԿԿ շարքերը համալրելու գործում այս բնագավառում ևս քիչ չեն



թերություններն ու թերացումները։ Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ պահանջվում է կուսակցության շարքերի աճը կարգավորելիս ուշադրություն դարձնել այն փոփոխությունների վրա, որոնք տեղի են ունեցել բնակչության սոցիալական կազմում, հաշվի առնել յուրաքանչյուր քաղաքի, շրջանի առանձնահատկությունները, աշխատանքային կոլեկտիվների յուրահատկությունները։ Հետևաբար, մեր խնդիրն է կուսակցության համալրման գործը կազմակերպել աշխատավորական կոլեկտիվների առանձնահատկությունների վերլուծության, զարգացման հեռանկարների հաշվառման, կուսկազմակերպության կազմի և աճի վիճակագրական տվյալների ուսումնասիրման հիման վրա։ Այս առումով լայն հնարավորություններ ունի, օրինակ, Սպանդարյանի կուսշրջկոմը, որը և այդ ասպարեզում որոշ աշխատանք է կատարել։ Սակայն անհանգստացնող է այսօր այնպիսի վիճակը, երբ շրջանի դպրոցների, բժշկական հաստատությունների մեծ մասում կուսկազմակերպությունների անդամների միջին տարիքը անցել է 50-ից։

Մեր կուսակցության դերի ու հեղինակության անշեղ բարձրացմանը զուգընթաց օրավուր աճում է և նրա շարքերն ընդունվել ցանկացողների թիվը, հատկապես մտավորականության շարքերից։ Հարկավոր է անհատական ընտրության սկզբունքը կիրառել այնպիսի բարձր պատասխանատվությամբ ու հետևողականությամբ, որ ցանկացողներից ընտրվեն միայն այդ բարձր կոչումը կրելու առավել արժանի մարդիկ։

Կուսակցության նոր համալրման կարևորագույն աղբյուր է երիտասարդությունը՝ մեր ապագան։ Շարունակելով բոլշևիզմի ավանդույթները՝ կուսակցությունը հոգ է տանում սերունդների հաջորդականության և միասնության մասին, ձգտում իր շարքերը ներգրավել երիտասարդության, ամենից առաջ, նրա ավանգարդի՝ կոմերիտմիության արժանի ներկայացուցիչներին։ Սկսած 1976 թվականից՝ կուսակցության մեջ ընդունվածների 71 տոկոսը եղել են կոմերիտականներ, իսկ առանձին շրջաններում՝ ավելի բարձր։ Երևանի 26 կոմիսարների անվան և Շահումյանի շրջաններում այն կազմել է 73, Օրջոնիկիձեի շրջանում՝ ավելի քան 76 տոկոս։ 1976—1979 թթ. Երևանում կուսակցության շարքերն են ընդգրկվել 5344 կոմերիտականներ կամ բոլոր ընդունվածների 72,5 տոկոսը։ Նրանց մեծ մասը բանվորներ են, ինժեներատեխնիկական ու գիտական աշխատողներ, ուսանողներ։

Կանայք կազմում են բնակչության կեսը։ Նրանք վճռական դեր են խաղում երկրի տնտեսական, գիտական, մշակութային, հասարակական-քաղաքական կյանքում։ Քաղաքային կազմակերպությունը, իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի պահանջները, նկատելիորեն բարելավել է կուսակցության մեջ կանանց ընդունելության գործը։ Նրանք կազմում են բոլոր ընդունվածների 35 տոկոսը։ Այժմ քաղաքի կոմունիստներից 16.417-ը կամ մեկ քառորդը կանայք են։ Սակայն կուսակցության առանձին շրջկոմներ, խորությամբ չուսումնասիրելով աշխատանքային կոլեկտիվների սոցիալական կազմը, հաճախ հաշտվում են այն բանի հետ, որ մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ խիստ անբավարար են զբաղվում կամ բոլորովին չեն զբաղվում կանանց ՍՄԿԿ շարքերն ընդունելու հարցով։ Այսպես, «Հայպետգյուղնախագիծ» ինստիտուտում աշխատողների գրեթե կեսը կանայք են։ Կոմերիտական կազմակերպության մեջ նրանք ճնշող մեծամասնություն են կազմում (55,3 տոկոս), մինչդեռ կուսկազմակերպությունը վերջին չորս տարիներին աճել է բացառապես տղամարդկանց հաշվին։ Այդ է պատճառը, որ կոմունիստների թվում կանայք կազմում են ընդամենը 13,6 տոկոսը։ Ինստիտուտի կուսկազմակերպության ցուցաբերած այսպիսի վերաբերմունքը չի կարելի հանդուրժել, և ՀԿԿ 26 կոմիսարների շրջկոմը լրջորեն պետք է զբաղվի այս կազմակերպությունում կուսշարքերի աճի կարգավորման հարցերով։

Բանն այնտեղ է հասնում, որ նույնիսկ այնպիսի կոլեկտիվներում, որտեղ աշխատողների 70—80 տոկոսը կանայք են, կուսկազմակերպությունում հաճախ տղամարդիկ են մեծամասնություն կազմում։ Տրիկոտաժի № 1 միավորումում, օրինակ, աշխատում է 231 տղամարդ կամ կոլեկտիվի ընդհանուր թվի 16,7 տոկոսը, սակայն նրանք կուսկազմակերպությունում կազմում են

կոմունիստների կեսից ավելին։ Պետական հանրախանութում՝ աշխատողների 22 տոկոսը, իսկ 300 կոմերիտականներից միայն 3-ն են տղամարդ, մինչդեռ կուսկազմակերպությունում նրանք կազմում են ավելի քան 45 տոկոսը։ Նման օրինակները բազմաթիվ են, դրանք վկայում են, որ կուսակցության շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները վատ են ուսումնասիրում աշխատավորական կոլեկտիվների սոցիալական կառուցվածքը, սխալ են տեղաբաշխում կոմունիստների ուժերը։

Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների համար միևնույնը չէ, թե ում են ընդունում կուսակցության շարքերը՝ նրա՞ն, ում գիտե ողջ կոլեկտիվը և ով արդեն իր գործով արժանի հեղինակություն է վայելում, թե՞ նրան, ում քչերն են ճանաչում կոլեկտիվում։ Ուշագրավ է այն կազմակերպությունների պրակտիկան, որոնք կուսակցության մեջ ընդունում են հիմնականում նրանց, ովքեր երկար ժամանակ աշխատում են նույն կոլեկտիվում։ 1978 թ. Լենինյան շրջանի կուսկազմակերպությունների ընդունած 570 անդամության թեկնածուներից 522-ը ունեցել են իրենց կոլեկտիվներում երեք և ավելի տարիների աշխատանքային ստաժ։ Դրա կողքին չի կարելի ճիշտ համարել այն պրակտիկան, երբ էլեկտրատեխնիկական, դեղարվեստական ժամացույցների գործարանների և մի շարք այլ սկզբնական կազմակերպություններում կուսակցության անդամության թեկնածու ընդունվածների մեծամասնությունը 1—2 տարի առաջ է դպրոցից արտադրություն եկել և դեռևս չի հասցրել աշխատանքային անհրաժեշտ հմտություն ու որակավորում ձեռք բերել, հասարակական աշխատանքում ինչպես հարկն է իրեն դրսևորել։

Կուսակցության ղեկավար դերի բարձրացման, կոմունիզմի կառուցման գործում կոմունիստի ավանդն առավել մեծ է այն դեպքում, երբ բարձր է նրա հանրակրթական ու մասնագիտական մակարդակը, լայն է նրա քաղաքական մտահորիզոնը, անսխալ է նրա գաղափարական հավատամքը։ Կուսշրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները այս հարցերին լուրջ ուշադրություն են դարձնում։ 1976 թ. հունվարի 1-ի համեմատությամբ, քաղաքի կուսկազմակերպությունում զգալիորեն բարձրացել է կոմունիստների կրթական մակարդակը։ Ավելի քան երեք հազարով ավելացել է բարձրագույն կրթությամբ կոմունիստների թիվը։ Քաղաքային կուսկազմակերպության անդամների ավելի քան 82 տոկոսն այժմ ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Կուսակցության շարքերի նոր համալրման, որակական կազմի բարելավման գործում եղած թերությունների վերացման լավագույն ուղիներից մեկը դռնբաց ժողովներում ընդունելության հարցի լայն ու անկաշկանդ քննարկումն է, կոլեկտիվի անդամների կարծիքների ուշադիր ունկնդրումը։

Քաղաքի կազմակերպությունների մեծ մասում այժմ կուսակցության շարքերն ընդունվելու համար ստացված դիմումներն առաջին հերթին քննարկվում են կուսխմբում և արտադրամասային կուսկազմակերպությունում, այնուհետև՝ կուսակցական դռնբաց ժողովում։ Չէ՞ որ ընդունվել ցանկացողներին ավելի լավ են ճանաչում աշխատանքային ընկերները, որոնք և առավել ճիշտ են գնահատում երաշխավորության օբյեկտիվությունը, բացեիբաց ասում են կուսակցության մեջ ընդունվողի արժանիքներն ու թերությունները, նշում վերջիններիս վերացման ուղիները։ Սակայն մենք դեռևս չենք հասել այն բանին, որ բոլոր կուսկազմակերպություններում («Ալմաստ» և ոսկերչական գործարաններ, «Երբիմշին» և № 3 տրեստներ, քաղէլեկտրատրանսպորտի վարչություն) խստորեն պահպանվի նման կարգը։ Կուսակցական ժողովի անցկացման վերաբերյալ հայտարարության մեջ պետք է նշել, թե ով, որ արտադրամասից, որ տեղամասից է ընդունվում ՍՄԿԿ շարքերը։ Նման ինֆորմացիան, անշուշտ, կնպաստի ընդունվողի անձը ճանաչող մեծ թվով աշխատակիցների մասնակցությանը ժողովին։ Կոմունիստները լուրջ մտահոգություն են դրսևորում նաև կուսակցական դռնբաց ժողովներում երբեմն տիրող ոչ գործարար մթնոլորտի վերաբերյալ, քննադատում այն պրակտիկան, երբ ժողովում պարզապես կարդում են դիմումը, երաշխավորությունները, լսում 1—2 կոմունիստի ելույթ, ապա՝ քվեարկում։ Անլուրջ կարելի է համարել այն պատճառաբանությունը, թե, իբր, բոլորը լավ են ճանաչում ընդունվողին և իմաստ



չունի արտահայտվել, խոսք ասել։ Ժողովներում մեզանից ո՞վ չի լսել նման տրտահայտություն. «Մենք նրան լավ գիտենք, անցնենք քվեարկության, հարցերը բավական են»։ Գիտենալը զուցե և գիտեն, բայց հարցի նկատմամբ նման մոտեցումը պարզապես անպատասխանատվության արտահայտություն է։ Այդպես է պատահել ԴՕՍԱԱՖ-ի արտադրական միավորման ձևարար Սիմոն Խոջոյանի դիմումը քննարկելիս։ Նա ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվել էր միաձայն, իսկ 1977 թ. նոյեմբերին դարձել կուսանդամ։ Միայն չորս ամիս անց հայտնի էր դարձել, որ նա դատված է եղել և կուսակցության մեջ ընդունվելիս թաքցրել է այդ փաստը իրեն «լավ ճանաչող» ընկերներից։

Այսպիսի օրինակները, դժբախտաբար, եզակի չեն։ Դա ցույց է տալիս, որ որոշ սկզբնական կուսկազմակերպություններ ոչ միայն մակերեսային մոտեցում են ցուցաբերում ընդունվողների ընտրության նկատմամբ, այլև շատ տեղերում դեռևս, ինչպես հարկն է, չեն զբաղվում աշխատավորների քաղաքական դաստիարակության, նրանց աշխարհայացքի ճիշտ ձևավորման, սովետական ապրելակերպի արմատավորման հարցերով։ Անբավարար է հարձակողական պայքարը ընչաքաղցության, քաղքենիության, սպառողական վարքագծի դրսևորումների դեմ։ Կուսակցության շրջկոմները այս և նման փաստերից լուրջ հետևություններ պետք է անեն։

Կուսակցության շարքերի համալրման ճիշտ կազմակերպումը, նրա որակական կազմի բարելավումը ուղղակի կապի մեջ են ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության խստագույն պահպանման, ներկուսակցական կյանքի նորմերի ու կանոնների, կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների անշեղ կիրառման հետ։ Ահա ինչու մենք ձգտում ենք, որպեսզի քաղաքի կուսկազմակերպություններում յուրաքանչյուր խախտում ժամանակին քննարկման առարկա դառնա և սկզբունքային գնահատական ստանա, խստությամբ հաշիվ պահանջվի այն կոմունիստներից, ովքեր անտարբերությամբ են վերաբերվում իրենց աշխատանքային և հասարակական պարտականությունների կատարմանը, կենցաղում իրենց վատ են պահում։ Դրա համար պետք է հետագայում էլ ամենուրեք ամրապնդել պետական ու կուսակցական կարգապահությունը, արդյունավետ կազմակերպել կատարման ստուգումն ու վերահսկումը, զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բարելավել կոմունիստների հետ տարվող անհատական աշխատանքը, կատարելագործել կուսակցական ղեկավարման ձևերն ու մեթոդները։

Մայրաքաղաքի կոմունիստները բարձր պատասխանատվության, հասարակական ու քաղաքական ակտիվության պայմաններում են կենսագործում կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։ Դրա լավագույն ապացույցն այն է, որ չորս տարի անընդմեջ Երևանն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Քաղաքի աշխատավորներն իրենց ջանքերը լարում են ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում ու տեղամասերում աշխատանքի արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու համար։

Կուսշարքերը երիտասարդ, գործիմաց մարդկանցով համալրելը, կուսակցական ու պետական կարգապահության հետագա ամրապնդումը, աշխատանքային ու քաղաքական բարձր ակտիվության մթնոլորտը իսկական երաշխիքն են այն բանի, որ Երևանի աշխատավորները պատվով կկատարեն հնգամյակի չորրորդ տարվա և ամբողջությամբ հնգամյակի պետական պլանները։ Հաջողության գրավականը մենք տեսնում ենք կուսակցական աշխատանքի ոճի հետագա կատարելագործման, սկզբնական կուսկազմակերպությունների մոբիլիզացնող դերի աճի, կուսակցության շարքերի ամրապնդման, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության համակողմանի բարձրացման մեջ։

# ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

**Վ. Ձ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ժողովրդական վերահսկողության
Թալինի շրջկոմի նախագահ

ԹԱԼԻՆԻ ՇՐՋԱՆԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ առաջատար ճյուղը գյուղատնտեսությունն է, որի տարեկան արտադրանքը գումարային արտահայտությամբ կազմում է 20—22 միլիոն ռուբլի: Երկրագործներն ու անասնապահները հետևողականորեն պայքարում են տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման, արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի ու արտադրանքի որակի բարելավման համար:

Նվաճումներն առանձնապես զգալի են տասներորդ հնգամյակի անցած տարիներին: 1975 թվականի համեմատությամբ հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարի հաշվով ավելացել է 5,6, խաղողինը՝ 18 ցենտներով, մեկ կովի կաթնատվությունը՝ 460 կիլոգրամով: Երեք տարում կատարվել է պետությանը հացահատիկի վաճառքի հնգամյա, կաթի վաճառքի՝ չորս տարվա առաջադրանքը, պլանից ավելի է հանձնվել ու վաճառվել 12.671 ցենտներ միս, 5.626 տոննա խաղող և գյուղատնտեսական այլ մթերքներ:

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողություններում իրենց որոշակի ներդրումն ունեն նաև շրջանի ժողովրդական վերահսկողության մարմինները, որոնց գործունեությունն արժանացել է հասարակական լայն ճանաչման: Ժողովրդական վերահսկողության շրջկոմը, նրա արտահաստիքային բաժինները, խմբերն ու պոստերը, որոնցում ընդգրկված են մոտ երկու հազար ակտիվիստներ, մեծ օգնություն են ցույց տալիս շրջանի կուսակցական և պետական մարմիններին՝ ժողովրդատնտեսական խնդիրների լուծման, կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության իրականացման գործում: Ժողովրդական վերահսկողության մարմինների ողջ գործունեությունն ընթանում է կուսակցության շրջանային կոմիտեի և սկզբնական կուսկազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ: Այդ մարմինների աշխատանքի մակարդակի բարձրացման գործում կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի «Լատվիական ՍՍՀ-ում ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարության մասին» որոշման կենսագործման ասպարեզում Թալինի շրջանի կուսակցական կազմակերպությունների կատարած աշխատանքի վերաբերյալ ՀԿԿ Կենտկոմի 1978 թ. հունիսի 9-ի որոշումը:

Կատարված դրական աշխատանքի հետ միասին, Կենտկոմի բյուրոյի որոշման մեջ նշված են ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման ասպարեզում, ինչպես նաև շրջկոմի, խմբերի ու պոստերի գործունեության մեջ դեռևս գոյություն ունեցող մի շարք լուրջ թերություններ: Կուսկազմակերպությունների և ժողվերահսկողության շրջկոմի անբավարար աշխատանքի հետևանքով առանձին տեղերում ժողովրդական վերահսկողության խմբերը կազմակերպչորեն ամրապնդված չեն, նրանցում թույլ է կուսակցական կորիզը, նրանց աշխատանքը չի ուղղվում կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը, արտադրության ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը:



Ժողովրդական վերահսկողության շրջկոմը, խմբերն ու պոստերը դեռևս թույլ են զբաղվում շրջանի արդյունաբերական, տրանսպորտային ձեռնարկությունների, բնակչությանն անմիջականորեն սպասարկող կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության թերությունների պատճառների բացահայտմամբ, անհրաժեշտ հսկողություն չեն սահմանում դրանց վերացման նկատմամբ: Քիչ ստուգումներ են կազմակերպվել արտադրության ռեզերվների հայտնաբերման և արտադրական կարողությունների, աշխատանքային և նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, արտադրանքի որակի բարելավման, արտադրության մեջ գիտության, տեխնիկայի նվաճումների, առաջավոր փորձի ներդրման նպատակով: Ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքը երբեմն պակաս արդյունավետ է, սկսած գործը հաճախ չի հասցվում մինչև վերջ, առանձին ստուգումներում քիչ մարդիկ են ներգրավվում, անբավարար ուշադրություն է նվիրվում արդյունքների հրապարակայնությանը, չի ապահովվում ստուգումների և թերությունների վերացման միասնությունը: Զգալի թերություններ կան ժողովրդական վերահսկիչների և արտահաստիքային ակտիվի ուսուցման կազմակերպման գործում:

Այդ որոշումը մեզ համար դարձավ գործողության ծրագիր և էականորեն նպաստեց մեր գործունեության աշխուժացմանը:

ՀԿԿ Կենտկոմի, ինչպես նաև այդ առթիվ կուսշրջկոմի և ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեի որոշումները կենսագործելու, շրջանի ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքն արդի խնդիրների մակարդակին բարձրացնելու և եղած թերությունները վերացնելու համար ժողովրդական վերահսկողության շրջկոմը մշակել և իրագործում է անհրաժեշտ միջոցառումներ:

Շրջկոմն իր առջև ծառացած խնդիրները լուծում է՝ հենվելով արտահաստիքային բաժինների, խմբերի ու պոստերի վրա: Ակտիվ գործունեություն է ծավալում հատկապես գյուղատնտեսության արտահաստիքային բաժինը (վարիչ՝ Վ. Մինասյան), ուր ընդգրկված են մասնագիտական բարձր պատրաստականություն և վերահսկողական աշխատանքի բավարար փորձ ունեցող 21 տեսուչներ: Բաժինն ունի հինգ սեկտոր՝ բուսաբուծության, անասնապահության, պտղաբուծության, մթերումների, մեքենայացման և էլեկտրիֆիկացման: Շրջանի կոլտնտեսություններում, սովխոզներում և գյուղատնտեսական մյուս ձեռնարկություններում այժմ գործում են ժողովրդական վերահսկողության 37 խմբեր և 172 պոստեր՝ 1.260 վերահսկիչներով: Այսպիսով, մենք գործ ունենք վերահսկողական մի ստվար ջոկատի հետ:

Աշխատելով նախօրոք հաստատված հեռանկարային և եռամսյակային պլաններով՝ ժողովրդական վերահսկողության շրջկոմը, նրա գյուղատնտեսության արտահաստիքային բաժինն ու խմբերը իրենց ամենօրյա գործունեության ընթացքում անդրադառնում են առաջին հերթին այնպիսի խնդիրների ու հարցերի, որոնք վճռական նշանակություն ունեն ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի կայուն առաջընթացի համար: Նրանք կազմակերպում են մասսայական, կոմպլեքսային և մասնակի ստուգումներ, անցկացնում ստուգայցեր, ստուգատեսներ և այլ միջոցառումներ:

Վերջին երեքուկես տարում շրջկոմն անցկացրել է գյուղատնտեսության հարցերին վերաբերող 72 ստուգումներ, որոնցից 43-ը եղել են մասսայական: Դրանք հիմնականում վերաբերել են պետական պլանների ու առաջադրանքների կատարման, հողի, գյուղատնտեսական տեխնիկայի և պարարտանյութերի պահպանման ու արդյունավետ օգտագործման, աշխատանքի և մթերքների որակի բարելավման, նյութական ու դրամական միջոցների խնայողության, հանրային հոտի ձմեռման, դաշտային աշխատանքների ընթացքի, գյուղատնտեսական մթերքների արտադրության նոր ռեզերվների հայտնաբերման ու օգտագործման հարցերին: Նույն ժամանակաշրջանում կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների

ժողովրդական վերահսկողության խմբերը ևս ուսումնասիրել են գործերի վիճակը գյուղատնտեսության բնագավառի առանձին օղակներում։

Այս կամ այն բնագավառում տիրող իրավիճակն ավելի լայն մասշտաբով և խորությամբ վերլուծելու, ուժերն ավելի ռացիոնալ օգտագործելու, ինչպես նաև զուգահեռականությունն ու կրկնությունը բացառելու նպատակով ստուգումների զգալի մասն անցկացվել է կոմերիտական լուսարձակայինների, արհմիութենական, ֆինանսական ու մթերող կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների մշտական հանձնաժողովների հետ համատեղ։

Ստուգումների արդյունքների մեծ մասը քննարկվել է շրջկոմի նիստերում և խմբերի անդամների ժողովներում։ Առավել կարևոր մի շարք ստուգումների նյութեր ներկայացվել են կուսակցական, սովետական մարմինների և ադմինիստրացիաների քննարկմանը։

Բացահայտված թերությունների վերացման, պետական կարգապահության ամրապնդման և հանձնարարված գործի նկատմամբ աշխատողների պատասխանատվության բարձրացման նպատակով շրջանային կոմիտեն, խմբերն ու պոստերը լայնորեն օգտագործում են ընկերական քննադատությունը, հասարակական ներգործության տարբեր միջոցներ։ Միայն 1978 թ. և այս տարվա առաջին կիսամյակում շրջկոմի և խմբերի առաջարկությամբ 131 պաշտոնատար անձինք կոլեկտիվների առջև հանդես են եկել հայտնաբերված թերությունների վերացման նպատակով իրականացրած միջոցառումների մասին հաղորդումներով, 412 աշխատողներ բացատրություն են տվել ժողովրդական վերահսկողության խմբերին։ Ժողովրդական վերահսկողության մարմինների ստուգումների նյութերի հիման վրա հինգ մարդ ազատվել է աշխատանքից, 17-ը՝ ստացել կուսակցական և վարչական տույժ։

Շրջկոմը, նրա գյուղատնտեսության արտահաստիքային բաժինը, կոլտնտեսությունների ու սովխոզների ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը հաճախակի անդրադարձել են շրջանում հողային օրենսդրության կիրառման, տնտեսություններում հողերի արդյունավետ օգտագործման, ոչ գյուղատնտեսական նպատակներով հողատարածությունների հատկացման սահմանված կարգի պահպանման հարցերին։

Ստուգումներից մեկի ժամանակ պարզվեց, որ Ագարակի, Կաքավաձորի, Ներքին Բազմաբերդի, Վերին Բազմաբերդի, Ներքին Սասնաշենի, Դավթաշենի, Իրինդի, Կաթնաղբյուրի, Աշնակի, Կարմրաշենի և պետական ու կոլեկտիվ այլ տնտեսություններում կան մի քանի հարյուր հեկտար չօգտագործվող հողեր, որոնք տարիներ առաջ մշակվել են, բայց, մեքենահարմար չլինելու պատճառով, վերջին տարիներին դուրս են մնացել գյուղատնտեսական շրջանառությունից և վերածվել խոպանի։ Բացի այդ, առանձին բնակավայրերում (Գառնահովիտ, Շղարշիկ, Կաթնաղբյուր, Ոսկեթաս և այլն) խախտվել էին տնամերձ հողամասեր հատկացնելու կարգն ու չափը, տեղիք էին տրվել հանրային հողի շռայլումների։ Ստուգման արդյունքները, շրջկոմի համապատասխան առաջարկություններով, քննարկվեց շրջսովետի գործկոմի նիստում, որին մասնակցում էին տնտեսությունների ղեկավարները, մասնագետները և հողօգտագործման հետ առնչվող այլ անձինք։ Արդյունքը եղավ այն, որ այժմ այդ հողատարածություններից 250 հեկտարի վրա մշակվում են բազմամյա և միամյա խոտաբույսեր, իսկ 350 հեկտարը բարելավվել ու վերածվել է կանոնավոր խոտհարքի ու արոտավայրի։ Մնացած տարածությունների յուրացման համար վերադաս մարմինները համապատասխան առաջադրանք են տվել մեքենամելիորատիվ կայանին։ Կարգավորվել է նաև տնամերձերի հարցը։ Շռայլված հողերից մոտ 15 հեկտար ետ է վերադարձվել տնտեսություններին։ Այդ ասպարեզում հսկողությունը շարունակվում է, և մենք ձգտում ենք հասնել այն բանին, որ տարիներով լքված ու չօգտագործվող հողերը ամբողջությամբ դրվեն գյուղատնտեսական շրջանառության մեջ։

Պետությունը և տնտեսությունները հսկայական միջոցներ են հատկացնում հողերի բարելավման, դրանց բերրիության բարձրացման, գյուղատնտեսության քիմիացման նպատակին։ Շրջանի տնտեսություններն ամեն տարի



հող են մտցնում 9—9,5 հազար տոննա հանքային, 45—50 հազար տոննա օրգանական պարարտանյութեր, տարբեր քիմիկատներ։ Նկատի առնելով, որ դրանց ժամանակին ու ճիշտ օգտագործումով է պայմանավորված գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը, ժողովրդական վերահսկողության մարմինները շրջանի բոլոր տնտեսություններում, ինչպես նաև գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման շրջանային միավորումում ամեն տարի 1—2 անգամ ստուգում են այդ հարցը, նպաստում հողօգտագործման բարելավմանը։

Հանքային պարարտանյութերի պահպանմանն ու օգտագործմանը բնավ ոչ բոլոր տեղերում էր պատշաճ ուշադրություն նվիրվում։ 1976 թվականին մեր կատարած մասսայական ստուգումներից պարզվեց, օրինակ, որ Նոր Արթիկի, Հացաշենի և Կաքավաձորի տնտեսություններում անփութության պատճառով փչացել և արժեզրկվել էր 15 տոննա կարբամիդ, տնտեսությունների մի մասում պարարտանյութերը պահվում էին բացօթյա, որոշ տնտեսություններ չունեին պարարտանյութ ցրող մեքենա կամ դրանք չէին օգտագործում, ագրոքիմիական քարտեզները կրում էին ձևական բնույթ և այլն։ Գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման շրջանային միավորումը խախտել էր տնտեսություններին պարարտանյութեր մատակարարելու սահմանված ժամկետները, չէր պահպանել ֆոնդային կարգապահությունը։ Քննարկելով ստուգման արդյունքները, ժողովրդական վերահսկողության շրջկոմը խստորեն պատժեց մեղավոր անձանց, վերականգնեց փչացած պարարտանյութի արժեքը։

Շրջկոմի գյուղատնտեսության արտահաստիքային բաժինը պարարտանյութերի մատակարարման ու պահպանության գործը վերցրեց իր հսկողության տակ։ Հետագա ստուգումները ցույց տվեցին, որ եղած թերությունները հիմնականում վերացվել են։ Այժմ տնտեսություններում հանքային պարարտանյութերը պահվում են ծածկի տակ և օգտագործվում ագրոքիմիական քարտեզներին խիստ համապատասխան։

Այգեգործությունը մեծ հեռանկարներ ունեցող ճյուղ է շրջանում։ Այժմ այգիներն զբաղեցնում են մոտ 4.000 հեկտար տարածություն։ Տարեկան արտադրվում է 12—13 հազար տոննա խաղող, 5—6 հազար տոննա պտուղ։ Եթե դատելու լինենք անցյալի չափանիշներով, այս ցուցանիշները կարելի էր միանգամայն գոհացուցիչ համարել, բայց այսօր մեր հնարավորությունները շատ ավելի մեծ են։ Շրջանում, օրինակ, դեռևս չի հաղթահարված այգիների նոսրությունը։ Կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը մշակել են այգիների նոսրությունը վերացնելու մի շարք միջոցառումներ, որոնց իրականացմանն են ուղղված այգեգործների ջանքերը։ Բնական է, որ ժողովրդական վերահսկողության մարմինները չէին կարող անտարբեր անցնել այդ կարևոր հարցի կողքով։ Վերջին երկու տարում շրջկոմը և այգեգործական տնտեսությունների խմբերը երեք անգամ ստուգել են այգիների նոսրությունը վերացնելու նպատակով տարվող աշխատանքների և այդ առնչությամբ տնտեսություններին տրված առաջադրանքների կատարման ընթացքը։

Այս տարվա հունիսին կազմակերպված մասսայական ստուգումները ցույց տվեցին, որ խաղողի այգիների նոսրության վերացման նպատակով զգալի աշխատանք է կատարվել։ Լրացումների և վերականգնումների շնորհիվ այգիներն ընդարձակվել են 100 հեկտարով, իսկ նոսրությունը նվազել է 4,2 տոկոսով։ Գարնանը այգիների լրացման առաջադրանքը գերակատարվել է երեք անգամ. տնկվել է 1 միլիոն 625 հազար վազ, հիմնվել 4,5 հեկտար նոր տնկարան։ Ստուգումներից միաժամանակ պարզվեց, որ առանձին տնտեսություններում լրիվ չեն օգտագործվում եղած հնարավորությունները։ Դալարիկի, Արտենիի, Խոռոսաղյուրի սովխոզներում, Աշնակի կոլտնտեսությունում այգիների նոսրությունը հասնում է 14—27,5 տոկոսի։ Մեր ստուգման արդյունքները քննարկվեցին կուսշրջկոմի բյուրոյում. ընդունված որոշմամբ հանձնարարվեց տնտեսությունների ղեկավարներին ապահովել տրված առաջադրանքների կատարումը և առաջիկա 2—3 տարիներին լիովին վերացնել այգիների նոսրությունը։

Ժողովրդական վերահսկիչների տեսադաշտում է մնում ոռոգման ջրի ռա-

ցինալ օգտագործման նկատմամբ վերահսկողության ապահովումը։ Այս հարցն առավել կարևոր նշանակություն ստացավ այս տարի, քանի որ բնակլիմայական անբարենպաստ պայմանների և ջրի սակավության պատճառով լուրջ դժվարություններ ստեղծվեցին ոռոգման գործում։ Ժողովրդական վերահսկողության շրջկոմը, «Կոմերիտական լուսարձակի» շտաբի հետ միասին, հունիս—օգոստոս ամիսներին անցկացրեց շրջանային ստուգատես։ Այդ նպատակով ստեղծված հանձնաժողովները մշտական հսկողություն սահմանեցին ոռոգման ջրի խնայողաբար օգտագործման, ոռոգիչ ջրանցքների և հիդրոտեխնիկական կառույցների անխափան աշխատանքի նկատմամբ։ Ստուգատեսի ընթացքում Թալինի ջրանցքից օգտվող տնտեսություններում կազմակերպվեց շուրջօրյա ոռոգում, ստեղծվեցին ջրվորների հերթափոխային բրիգադներ, նորոգվեցին ու կարգի բերվեցին ջրատարները։ Շրջանի գյուղատնտեսական արտադրության մեջ կարևոր տեղ է գրավում անասնապահությունը, և պատահական չէ, որ այդ ճյուղի զարգացման, անասնապահական մթերքների արտադրության ծավալի ավելացման, որակի բարելավման հարցերը միշտ էլ մտահոգել են վերահսկողության շրջկոմին, խմբերին ու պոստերին։

Անասնապահության զարգացման, մթերքների արտադրության աճի կարևորագույն նախապայմանը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Շրջանի ժողովրդական վերահսկողության մարմիններն ամեն տարի գործնական հսկողություն են սահմանում կերային կուլտուրաների ցանքատարածությունների ավելացման, բնական խոտհարքների և արոտավայրերի բարելավման, կերի պատրաստման և վերամշակման տեխնոլոգիայի պահպանման նկատմամբ, այդ գործում աջակցում կուսակցական, սովետական կազմակերպություններին։ Կերի կուտակման ընթացքում, հանրային հոտի ձմեռման սեզոնում մեր ստեղծած պոստերը հսկողություն են իրականացնում կերի պահպանման, հաշվառման և ծախսման, ինչպես նաև մատղաշի ստացման ու մուտքագրման նկատմամբ։ Դրա շնորհիվ գրեթե վերացվել են կերի շռայլման ու փչացման երևույթները, կարգավորվել են մատղաշի մուտքագրումն ու հաշվառումը։ Ահա այդ իրողությունը վկայող մի կոնկրետ օրինակ։ Ալագյազի սովխոզը շրջանի ամենամեծ ոչխարաբուծական տնտեսությունն է։ Այստեղ ոչխարների գլխաքանակը հասնում է 16—17 հազարի։ Տնտեսության հաջողությունները մեծ չափով պայմանավորված են ծնի հաջող նախապատրաստմամբ և անկորուստ անցկացմամբ։ Այդ հանգամանքը նկատի առնելով, սովխոզի ժողվերահսկողության խումբը (նախագահ՝ Ս. Մարտիրոսյան) ամեն տարի ծնի սեզոնում ստեղծում է ժամանակավոր հսկիչ պոստեր, որոնք մշտապես հետևում են ծնի ընթացքին, ստացված մատղաշի մուտքագրմանն ու պահպանմանը, կերի օգտագործմանը, օգնում անասնապահներին՝ նրանց հուզող հարցերը լուծելու և կարիքները բավարարելու գործում։ Եվ, եթե սովխոզը յուրաքանչյուր 100 մայր ոչխարի հաշվով ամեն տարի ստանում է 95—98, իսկ առանձին բրիգադներ՝ մինչև 105 գառ, կատարում ու գերակատարում է բրդի, մսի արտադրության և վաճառքի պլաններն ու ստանձնած պարտավորությունները, ապա այդ ամենի մեջ իրենց համեստ ներդրումն ունեն ժողովրդական վերահսկիչները։

Ժողովրդական վերահսկողության շրջկոմն ու խմբերն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում անասնապահական մթերքների արտադրության ավելացման ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, մթերքների որակի բարելավման նկատմամբ վերահսկողության կազմակերպմանը։ Այդ նպատակով վերջին երեք տարում անցկացվել են մասսայական հինգ ստուգումներ։ Այսպես, 1977 թ. երկրորդ եռամսյակում, մթերումների շրջանային տեսչության հետ միասին, շրջանի բոլոր տնտեսություններում ստուգվեց մսի արտադրության և մթերումների ավելացման համար եղած ռեզերվների օգտագործման վիճակը։ Պարզվեց, որ մի շարք տնտեսություններում վատ են օգտագործվում մսի արտադրության ավելացման հնարավորությունները, մեծ չափերի են հասնում անասունների անհարկի մորթն ու անկումները։ Մատղաշի ինտենսիվ բտման մեթոդի դանդաղ արմատավորման կամ անտեսման պատճառով մթերակայան հանձնված խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը կազմել է ընդամենը 237 կգ, ընդ որում, դրանց միայն 34 տոկոսն է եղել միջակից բարձր



դիրության։ Հանձնվող անասունների կազմի ընտրության, բտման ու գիրացման գործում խախտվել է պետականորեն սահմանված կարգը, մեծ չափերի են հասել մսի ներտնտեսային չհիմնավորված ծախսումները։ Օրինակ, Զովասարի կոլտնտեսությունը պետությանը վաճառել է ընդամենը 338 գլուխ ոչխար, մինչդեռ տնտեսությունում օգտագործել է 758 գլուխ, այսինքն՝ 420 գլխով ավելի։ Եվ դա այն դեպքում, երբ մսի վաճառքի պլանը կատարել էր միայն 84 տոկոսով։ Նման վիճակ գոյություն ուներ Ագարակի, Կարմրաշենի, Գետափի, Ներքին Բազմաբերդի սովխոզներում, Ակունքի, Հացաշենի, Սորիկի կոլտնտեսություններում։ Կուսշրջկոմի բյուրոն ստուգման նյութերի հիման վրա ընդունեց համապատասխան որոշում և պատժեց այդ ամենի համար մեղավոր անձանց։ Քննարկելով բյուրոյի որոշումը, սկզբնական կուսկազմակերպությունները, սովխոզների դիրեկցիաները և կոլտնտեսությունների վարչությունները կոնկրետ միջոցառումներ մշակեցին հայտնաբերված թերությունները վերացնելու համար։

Ընթացիկ տարում նույն հարցի առնչությամբ անցկացված ստուգումները ցույց տվեցին, որ այդ բնագավառում վիճակը զգալիորեն բարելավվել է։ Խիստ կերպով նվազել են անասունների անկումներն ու մսի ներտնտեսային ծախսումները։ Այս տարվա առաջին կիսամյակում մթերակայան հանձնված խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը կազմել է 278 կգ, միջակից բարձր որակի մսի տեսակարար կշիռը հասել է 74 տոկոսի, միջակից ցածրինը կազմել ընդամենը 0,9 տոկոս։ Արտենիի, Արագածի, Մաստարայի սովխոզները, Սուսերի և Ցամաքասարի կոլտնտեսությունները հանձնել են ինտենսիվ մեթոդով բտված 350—360 կգ քաշ ունեցող մատղաշ։

Ժողովրդական վերահսկողության մարմինների ուշադրության կենտրոնում են եղել նաև անասնապահական մյուս մթերքների, հատկապես կաթի որակի բարձրացման հարցերը։ Այդ ասպարեզում ևս արդյունքները շոշափելի են։ Եթե նախորդ տարիներին պետությանը տնտեսությունների վաճառած կաթի 50—60 տոկոսն է եղել տեսակային, ապա այս տարվա առաջին կիսամյակում այն հասել է 96 տոկոսի, ընդ որում, 45 տոկոսը եղել է առաջին կարգի։

Անասնապահական մթերքների որակը պարզելու նպատակով կատարած ստուգումների արդյունքները քննարկելիս ժողովրդական վերահսկողության շրջկոմը պատասխանատվության է ենթարկել սանիտարահիգիենիկ ռեժիմը և մթերքների արտադրության ստանդարտները խախտողներին։ Պետությանը ցածրորակ մթերքներ վաճառելու պատճառով տնտեսություններին հասցրած նյութական վնասի մի մասը վերականգնելու նպատակով 23 պաշտոնատար անձանց նկատմամբ կիրառվել է դրամական տուժագրում։

Շրջանի ժողովրդական վերահսկիչների աշխատանքում նշանակալի տեղ է գրավում նաև կոլտնտեսությունների ու սովխոզների և նրանց առանձին ճյուղերի ֆինանսատնտեսական գործունեության բարելավման, աշխատանքի հաշվառման ու վարձատրման գործող կանոնների պահպանման, գյուղատնտեսության զարգացման համար հատկացված նյութական ու դրամական միջոցների նպատակային ու արդյունավետ օգտագործման նկատմամբ վերահսկողության ապահովումը։

Սոցիալիստական սեփականության պահպանության նկատմամբ վերահսկողության կազմակերպումը Դավթաշենի սովխոզի վերահսկիչները համարում են իրենց առաջնահերթ խնդիրը։ Նրանք հաճախակի ստուգում և պարզում են տնտեսության տարբեր ճյուղերի գործերի վիճակը։ Ոչխարաբուծական ֆերմայում կատարած ստուգումներից մեկի ժամանակ պարզվեց, որ հաշվառման խիստ անբավարար կազմակերպման և անպատասխանատվության պատճառով պակասում են 21 գլուխ անասուններ։ Սովխոզի դիրեկցիան ժողդատարանի միջոցով վերականգնեց պակասող ոչխարների արժեքը, իսկ մեղավոր անձինք ենթարկվեցին խիստ պատասխանատվության։

Ժողովրդական վերահսկողության շրջկոմը գյուղատնտեսության հարցերի նկատմամբ վերահսկողության իրականացման ասպարեզում հաջողությունների հասել է այն բանի շնորհիվ, որ միշտ ուշադրության կենտրոնում է պահել արտահաստիքային ակտիվի, խմբերի ու պոստերի հետ տարվող աշխատանքը։

Վերջին երկու տարում շրջկոմի նիստերում քննարկել ենք կոլտնտեսությունների և սովխոզների 10 խմբերի հաշվետվություն, ժողովրդական վերահսկիչների ակտիվության բարձրացման, վերահսկողական աշխատանքի հրապարակայնության ուժեղացման հետ կապված մի շարք հարցեր։

Սակայն գյուղատնտեսության բնագավառում վերահսկողության կազմակերպման ասպարեզում ծավալած մեր աշխատանքում դեռևս կան զգալի թերություններ։ Դրանցից հիմնականն այն է, որ ժողովրդական վերահսկողության շրջկոմը, խմբերն ու պոստերը դեռևս ցանկալի արդյունքի չեն հասել գյուղատնտեսական մթերքների ավելացման համար շրջանում եղած ռեզերվների ու հնարավորությունների հայտնաբերման ու լրիվ օգտագործման ասպարեզում։

Մի շարք տնտեսություններում (Ջիվասար, Հացաշեն, Ն. Սասնաշեն, Կարմրաշեն, Գետափ և այլն) ժողովրդական վերահսկողության խմբերը կազմակերպչորեն թույլ են, քիչ ստուգումներ են անցկացնում, անբավարար են կատարում իրենց առջև դրված խնդիրները։ Շրջկոմի և նրա գյուղատնտեսության արտահաստիքային բաժնի տեսադաշտից դուրս են մնացել անասնապահության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացման, եղած սարքավորումների անխափան աշխատանքի նկատմամբ վերահսկողության կազմակերպումը։

Շրջկոմը, գյուղատնտեսության արտահաստիքային բաժինը և խմբերը երբեմն անհետևողականություն են հանդես բերում առանձին հարցերի վերաբերյալ իրենց իսկ ընդունած որոշումների կատարման նկատմամբ։

Առկա թերությունները վերացնելու և վերահսկողության գործը բարելավելու նպատակով շրջկոմը մշակել է գործնական միջոցառումներ։ Մեր հետագա պլաններում մեծ տեղ է հատկացվել ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը կազմակերպչորեն ամրապնդելու, վերահսկիչների ակտիվությունն ու վերահսկողական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու հարցերին։ Պլանավորել ենք, կուսկազմակերպությունների հետ միասին, վերանայել խմբերի նախագահների, պոստերի ղեկավարների և վերահսկիչների կազմը՝ այն բարելավելու նպատակով, յուրաքանչյուր եռամսյակում լսել 2—3 խմբի հաշվետվություն, հաճախակի քննարկել ժողովրդական վերահսկողության խմբերի կողմից ստուգումների կազմակերպմանը, արված առաջարկությունների և ընդունված որոշումների կատարման նկատմամբ հսկողության իրականացմանը, նրանց կողմից հասարակական ներգործության միջոցների կիրառմանը վերաբերող հարցեր։ Սեմինար խորհրդակցություններում, տեսական հարցերի հետ միասին, մեծ տեղ կտրվի վերահսկողական աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրմանն ու տարածմանը։

Վերահսկողական աշխատանքի հրապարակայնությունն ուժեղացնելու նպատակով նախատեսել ենք բոլոր խմբերում ստեղծել ցուցափեղկեր, լույս ընծայել պատի թերթեր ու թերթիկներ, ավելի բովանդակալից դարձնել շրջկոմի «Վերահսկում է ժողովուրդը» ստենդը, անցկացնել ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի աշխատանքի հրապարակայնության ստուգատեսներ։

Շրջանի ժողովրդական վերահսկողության մարմիններն իրենց կարևոր խնդիրն են համարում միշտ գտնվել ժամանակի պահանջների բարձրության վրա, է՛լ ավելի ակտիվորեն օգնել կուսակցական և սովետական մարմիններին գյուղատնտեսության հետագա վերելքն ապահովելու համար մղվող պայքարում։

Մեզ համար գործողության ուղեցույց է «ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի նոր օրենքը, որը հաստատվեց նրա տասներորդ գումարման երկրորդ նստաշրջանում։ Օրենքում հստակորեն որոշված են վերահսկողության մարմինների տեղն ու դերը սովետական սոցիալիստական համաժողովրդական պետության խնդիրների ու ֆունկցիաների իրականացման համակարգում, նրանց իրավունքները և պարտականությունները։ «Սովետական հասարակության քաղաքական սիստեմի հետագա զարգացումը,— ասված է օրենքում,— ենթադրում է ուժեղացնել ժողովրդական վերահսկողությունը, որը սոցիալիստական դեմոկրատիայի ձևերից մեկն է,



պետական և հասարակական գործերի կառավարման մեջ ժողովրդական զանգվածների ներգրավման գործուն միջոց»։

Մեր երկրում ժողովրդական վերահսկողությունը, ինչպես նշվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի հաստատած օրենքում, պետական և հասարակական վերահսկողության զուգակցումն է։ Ժողովրդական վերահսկողությունը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում և կազմակերպություններում պետական վերահսկողությունը զուգակցում է աշխատավորների հասարակական վերահսկողության հետ։ Ընդ որում, վերահսկողության մարմինների գլխավոր ուժը բանվորները, կոլտնտեսականները և ծառայողներն են, որոնք մասնակցում են ժողովրդական վերահսկողության խմբերի, պոստերի և կոմիտեների աշխատանքին ու հետամուտ լինում կուսակցության և սովետական պետության որոշումների կենսագործմանը։

Ժողովրդական վերահսկողության մարմինների առջև խնդիր է դրված՝ սիստեմատիկաբար ստուգել կուսակցության դիրեկտիվների, սովետական օրենքների և կառավարության որոշումների կատարումը, վճռականորեն հանդես գալ այն ամենի դեմ, ինչը վնաս է հասցնում պետության շահերին, նպաստել քաղաքացիների մոտ ամբողջ հասարակության գործերի համար պատասխանատվության զգացումի դաստիարակմանն ու զարգացմանը։

Օրենքում ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության լայն շրջանակների, նրանց բազմաբնույթ իրավունքների և պարտականությունների, սոցիալիստական օրինականության խախտումների համար պաշտոնատար անձանց պատժելու ֆունկցիաների սահմանումը ինքնին վկայում է այն մասին, որ այդ մարմինների աշխատանքի բարելավումն ու հետագա կատարելագործումը գտնվում են կուսակցության և պետության մշտական ուշադրության կենտրոնում։ Թալինի ժողովրդական վերահսկողության մարմինները կջանան իրենց ակտիվ գործունեությամբ արդարացնել այդ բարձր վստահությունը։

Սովետական շինարարություն

# ՊԱՏՎԻՐԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**ԷԼՅԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության
սովետների աշխատանքի հարցերի բաժնի վարիչի տեղակալ

ՍՍՀՄ ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ պատմական նոր փուլ է նշանավորում սովետների գործունեության մեջ։ Սահմանադրության 2-րդ հոդվածում ասված է, որ մեր երկրում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին, իսկ վերջինս պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք կազմում են ՍՍՀՄ քաղաքական հիմքը։ Մյուս բոլոր պետական մարմինները ենթակա են ժողովրդական դեպուտատների սովետների վերահսկողությանը, հաշվետու են նրանց։ Եվ օրինաչափ է, որ այժմ, զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ սովետական պետությունը դարձել է համաժողովրդական, ավելի է բարձրացել սովետների դերը ժողովրդատնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման գործում, ամրապնդվել է նրանց կապը աշխատավորական լայն զանգվածների հետ։

Իրենց գործունեության ընթացքում սովետները կիրառում են բնակչության հետ կապի հաստատման ու ամրապնդման զանազան ձևեր ու եղանակներ։ Այդ ընդհանուր համակարգում վճռական նշանակություն ունի ժողովրդական դեպուտատներին ընտրողների տված պատվիրանների կատարման կազմակերպումը։

ՍՍՀՄ սահմանադրության մեջ օրենսդրորեն հաստատված է, որ ժողովրդական դեպուտատների սովետները և նրանց կողմից ստեղծված մարմինները բնակչությանը սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի և ընդունած որոշումների մասին։ Քննարկված շատ հարցեր և ընդունված որոշումներ անմիջականորեն բխում են ընտրողների պատվիրաններից, որոնք առաջադրվում են դեպուտատներին նախընտրական ժողովներում։

Դեպուտատները ժողովրդի լիազոր ներկայացուցիչներն են։ Նրանց իրավունքներն ու պարտականությունները սահմանվել են ՍՍՀՄ սահմանադրությամբ և «ՍՍՀՄ-ում ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին» օրենքով։ Մասնակցելով սովետների աշխատանքին՝ դեպուտատները լուծում են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերը, կազմակերպում սովետների որոշումների կենսագործումը, վերահսկողություն իրականացնում պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեության նկատմամբ։

Բնակչության շրջանում դեպուտատի աշխատանքի կազմակերպման կենտրոնն ու հիմքը ընտրական օկրուգն է։ Յուրաքանչյուր դեպուտատ արտահայտում է իր ընտրողների համընդհանուր կամքը։ Հետևաբար, դեպուտատի



բարձրացրած հարցերը, ամենից առաջ, արտահայտում են օկրուգի ընտրողների ընդհանուր շահերը, բխում նրանց սոցիալ-կուլտուրական պահանջմունքներից։ Սովետի և դեպուտատի կարևորագույն պարտականություններից մեկը և նրանց աշխատանքի ծրագրի բաղկացուցիչ մասը ընտրողների պատվիրանների կատարումն է։

Վերջին տարիներին մեր հանրապետությունում շատ բան է արվել ընտրողների պատվիրանների կենսագործմանն առնչվող աշխատանքները կարգավորելու, այդ ասպարեզում սովետների, մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Պատվիրանների կատարման հարցը պարբերաբար քննարկվում է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նստաշրջաններում, նրա նախագահությունում, տեղական սովետներում։ Այդ քննարկումները մեծապես նպաստում են սովետների և դեպուտատների գործունեության արդյունավետության բարձրացմանը, նրանց և աշխատավորական կոլեկտիվների մերձեցմանը, լույս բեկում են մտցնում այս կամ այն հարցի լուծմամբ շահագրգռված կազմակերպությունների աշխատանքում, զգաստացնում նրանց ղեկավարներին։ Վերջիններիս առջև խնդիր է դրվում իրենց տեսադաշտում պահել աշխատավորների ամենօրյա հոգսերը, նրանց տնտեսական, կուլտուրական և կենցաղային հարաճուն պահանջմունքները։

Գոհունակությամբ պետք է նշել, որ հանրապետության Գերագույն սովետի և տեղական սովետների դեպուտատներին տրված պատվիրանների և նրանց առաջադրված հարցերի լուծման առումով մեզ մոտ որոշակի դրական փորձ է կուտակվել։ Հայկական ՍՍՀ իններորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ նստաշրջանում (1976 թ. նոյեմբերի 19) ընտրողների պատվիրանների կատարման ընթացքի վերաբերյալ մի խումբ դեպուտատների հարցապնդման կապակցությամբ հաղորդում տվեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը։ Հաղորդումը բովանդակում էր հանրապետության Գերագույն սովետի դեպուտատներին տրված պատվիրանների կենսագործման նպատակով տարվող աշխատանքի արդյունքները։ Նշվեց, որ ընտրողների պատվիրաններն արժանացել են պետական կառավարման մարմինների լուրջ ուշադրությանը և, որպես կանոն, գործնականում իրականացվել են, դրանց առնչությամբ միջոցառումներ են նախատեսվել տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններում։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1978 թ. հունվարին քննարկեց իններորդ գումարման Գերագույն սովետի դեպուտատներին ընտրողների տված պատվիրանների կենսագործման վիճակը։ Այդ պատվիրանները հիմնականում վերաբերում էին հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացմանը, պետական կառավարման մարմինների առանձին օղակների, իշխանության տեղական մարմինների աշխատանքի բարելավմանը, տնտեսության ղեկավարման և պլանավորման գործում տեղ գտած թերությունների վերացմանը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի արդյունավետության բարձրացմանը, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։ Դրանք ներառում էին նաև սոցիալ-կուլտուրական մի շարք խնդիրներ՝ առողջապահություն, ժողովրդական կրթություն, ջրամատակարարում, գյուղերի ու ավանների բարեկարգում ու գազիֆիկացում, տրանսպորտի, կապի, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման ոլորտի ձեռնարկությունների աշխատանք և այլն։

Հաշվի առնելով, որ այդ պատվիրանների մի մասը վերաբերում է մեր զարգացման հեռանկարային հարցերին, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարվել է, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս և բյուջեն կազմելիս, համապատասխան միջոցներ ձեռնարկել դրանք իրականացնելու համար։

Դեպուտատների ակտիվությունը բարձրացնելու և նախաձեռնությունը զարգացնելու, նրանց գործունեությունն աշխուժացնելու նպատակով Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1976 թվականին սահմանեց ընտրողների հետ դեպուտատի հանդիպման միասնական օր։ Այդ միջոցառման անցկացման նպատակն է՝ ամրապնդել դեպուտատի կապը ընտրողների հետ,

Քարագլուխ և Թառաթումբ գյուղերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղերի ստեղծումը, Եղեգիս—Հորբատեղ, Աղնջաձոր—Թառաթումբ ճանապարհների բացումը ընտրողների պատվիրանների կատարման կոնկրետ օրինակներ են։ Դեպուտատների միջամտությամբ զգալի աշխատանք է կատարվել նաև Եղեգնաձոր ավանի, Աղավնաձոր, Արփի, Ագարակաձոր գյուղերի բարեկարգման ու կանաչապատման ասպարեզում։

Արարատի շրջանում դեպուտատներին տրված ընտրողների պատվիրանների հիման վրա լուծվել են սոցիալ-տնտեսական և կուլտուրական կարևորություն ունեցող այնպիսի հարցեր, ինչպիսիք են բնակավայրերի գազիֆիկացումը, բնակարանային շինարարությունը, կամուրջների, ակումբների, բնակչության կենցաղսպասարկման օբյեկտների կառուցումը, գյուղերի բարեկարգումը։

Այսպիսի օրինակներ կարելի է շատ թվարկել։ Դրանք ցույց են տալիս, որ գործի ճիշտ կազմակերպման, պաշտոնատար անձանց նկատմամբ պահանջկոտության ուժեղացման միջոցով միշտ էլ հնարավոր է իրականացնել ընտրողների կողմից ժողովրդական դեպուտատներին տրված պատվիրանները, ժամանակին ընթացք տալ աշխատավորների առաջադրած բազմաբնույթ հարցերին։ Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմը եռամսյակը մեկ անգամ անդրադառնում է ընտրողների պատվիրանների կատարման ընթացքին և ձեռնարկել է այնպիսի գործնական միջոցներ, որոնք հնարավորություն են ընձեռում էապես բարելավելու քաղաքային սովետի դեպուտատներին տրված պատվիրանների կատարումը։

Ընտրողների պատվիրանների հաշվառման ու դրանց կենսագործման ասպարեզում կան և լուրջ թերացումներ ու թերություններ։ Գոյություն ունեցող կարգի համաձայն, պատվիրանները պետք է քննարկվեն նախընտրական ժողովներում և արտահայտեն ոչ թե առանձին քաղաքացիների, այլ ընտրողների մեծամասնության կամքը։ Պատվիրանները սովորաբար ընդհանրացվում են նախընտրական ժողովների արձանագրությունների հիման վրա, բայց երբեմն այդպես չի արվում, այլ կազմվում են առանձին տվյալների, գրառումների, դրությունների, հեռախոսային զանգերի հիման վրա և այլն։

Սովետների գործադիր կոմիտեները պատվիրանների ուսումնասիրության ու ընդհանրացման, դրանց կատարման հետ առնչվող հարցերը պետք է լուծեն նախապես և ապա նոր միայն ներկայացնեն սովետների քննարկմանը։ Պատվիրանների կատարման միջոցառումների պլան հաստատելը բացառապես սովետի իրավասության խնդիր է։ Հետևաբար, ժողովրդական դեպուտատների քաղաքային, շրջանային և գյուղական սովետների գործադիր կոմիտեները պարտավոր են նախընտրական ժողովներում ապահովել պատվիրանների համակողմանի քննարկումը, հստակորեն կազմակերպել դրանց հաշվառումը, ելնելով յուրաքանչյուր պատվիրանի կատարման նպատակահարմարությունից, հիմնավորվածությունից։ Գաղտնիք չէ, որ ընտրողների շատ առաջարկություններ միշտ չէ, որ կարող են դրականորեն լուծվել տվյալ տնտեսական տարում, ուստի դրանց կատարումը պետք է նախատեսվի՝ ելնելով սոցիալ-կուլտուրական զարգացման պլաններից, նոր միջոցներ հատկացնելու հնարավորություններից։

Վերջին տարիներին կուսակցության և կառավարության մշակած միջոցառումների շնորհիվ իշխանության տեղական մարմինները, ղեկավարվելով սովետների վերաբերյալ օրենքներով, ամրապնդել են իրենց նյութաֆինանսական բազան և այժմ ավելի մեծ հնարավորություններ ունեն պատվիրանների անթերի կենսագործման համար։ Նրանց իրավունք է վերապահված միավորել իրենց տերիտորիայում գործող ձեռնարկությունների և կազմակերպությունների՝ սոցիալ-կուլտուրական նպատակների համար նախատեսված ֆինանսական միջոցները (անկախ դրանց ենթակայությունից), նշանակալի գումարներ հատկացնել պատվիրանների կատարման նպատակին։ Միաժամանակ տնտեսական գործունեության բարելավման շնորհիվ որոշակիորեն աճել են հիմնարկ-ձեռնարկությունների ու կազմակերպությունների ֆինանսական հնարավորությունները, իսկ դա նախադրյալներ է ստեղծում կուլտուր-կենցա-



ղային օբյեկտների շինարարության ծավալման համար։ Անհրաժեշտ է նաև նախաձեռնություն ցուցաբերել պատվիրանների իրականացման նպատակով լրացուցիչ միջոցների հայթայթման գործում։

Կարելի է օգտագործել բյուջեի կատարման ժամանակ ստացված լրացուցիչ միջոցները, ինչպես նաև ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկությունների՝ օրենքով սահմանված կարգով սոցիալ-կուլտուրական միջոցառումների անցկացման նպատակով միավորված միջոցները և բնակչությանը լայնորեն մասնակից դարձնել պատվիրանների կատարման աշխատանքին։ Սովետների գործադիր կոմիտեները պետք է աշխատանքը կազմակերպեն այնպես, որ յուրաքանչյուր դեպուտատ տրված պատվիրանների կենսագործման վերահսկողության նպատակով նստաշրջանում լայնորեն օգտագործի հարցապնդման իրավունքը։ Սովետների նստաշրջաններում նպատակահարմար է պարբերաբար լսել ձեռնարկությունների և կազմակերպությունների հաղորդումներն ու հաշվետվությունները, պատվիրանների կատարման հետ առնչվող աշխատանքը կազմակերպել հրապարակայնության պայմաններում։ Այդ նպատակով հարկավոր է լայնորեն օգտագործել աշխատավորական կոլեկտիվների և բնակչության առջև սովետների գործադիր կոմիտեների, նրանց վարչությունների ու բաժինների հաշվետվությունները, հեռուստատեսությունը, ռադիոն, մամուլը։ Կարևոր հանգամանք է նաև այն, որ դեպուտատն անձամբ մասնակցի ընտրողների պատվիրանների կատարման համար բնակչությանը կազմակերպելու գործին, ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների կողմից դրանց իրականացման նկատմամբ վերահսկողությանը։

Դեպուտատին պատվիրան տվող ընտրողները պետք է լինեն նաև այդ պատվիրանների կատարման ակտիվ մասնակիցները։ Դրա համար անհրաժեշտ է մտածված և սիստեմատիկ աշխատանք կատարել ընտրական օկրուգում։

Երբեմն դեպուտատներն իրենց ընտրողներին չեն հայտնում պատվիրանների կատարման ընթացքի մասին, տեղյակ չեն պահում առաջացած դժվարությունների, իսկ նման վերաբերմունքը թուլացնում է բնակչության հետաքրքրությունը հասարակական աշխատանքի նկատմամբ։

Հանրապետության ժողովրդական դեպուտատների սովետներն ավելի մեծ ուշադրություն պետք է հատկացնեն պատվիրանների կենսագործմանը՝ որպես սովետական դեմոկրատիայի իրականացման, մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման, պետական կառավարման գործին քաղաքացիների մասնակցության կարևոր ձևի։ Պատվիրանները,—ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մեր դեմոկրատիայի, իսկական ու ռեալ դեմոկրատիայի վառ դրսևորումն են։ Պատվիրաններում արտահայտված է աշխատանքի մարդկանց հոգատարությունն իրենց պետության գործերի, հանրային շահերի նկատմամբ։

1978 թվականի փետրվարի 24-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը քննարկեց «Ընտրողների պատվիրանների կատարման ասպարեզում Բելոռուսիայի ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի պրակտիկայի մասին» հարցը։ Ընդունված որոշմամբ ժողովրդական դեպուտատների սովետների կարևորագույն խնդիրը համարվեց կազմակերպչական աշխատանքի, հատկապես ընտրողների պատվիրանների հետ կապված աշխատանքի մակարդակի հետագա բարձրացումը։ Հիմնական պատվիրանը աշխատանքի մշտական կատարելագործումն է, մասսաների հետ կապի ամրապնդումը, կուսակցության ղեկավարությամբ ժողովրդի իշխանության իրականացումը։

Այժմ համապատասխան աշխատանք է տարվում ընտրողների պատվիրանների քննարկման և կատարման կարգի վերաբերյալ միութենական օրենսդրական ակտի նախագծի մշակման համար։ Նման օրենսդրական ակտի ընդունումն, անշուշտ, նոր խթան կհանդիսանա պատվիրանների կատարման գործը օրենսդրական հիմքի վրա դնելու համար, կնպաստի դրանց հետևողական կենսագործմանը, հնարավորություն կընձեռի պատվիրանների իրականացման հետ առնչվող աշխատանքը կազմակերպելու ավելի հետևողականորեն, դրան լայնորեն մասնակից դարձնելու բոլոր համապատասխան պետական ու հասարակական կազմակերպություններին։

Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի
հուլիսյան պլենումի որոշումները

# ԲԵՐՐԻՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆԸ

**Ն. Հ. ԱՎԱԳՅԱՆ**
Գյուղատնտեսական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ ԱԿՆԱՌՈՒ ԵՆ հանրապետության գյուղատնտեսության հաջողությունները: Զգալիորեն բարձրացել են հացահատիկային, տեխնիկական, բանջարաբոստանային, կերային կուլտուրաների, պտղատու և խաղողի այգիների ինչպես միջին բերքատվությունը, այնպես էլ համախառն բերքը: Նույնիսկ անջրդի երկրագործության պայմաններում՝ Անիի, Արթիկի, Կալինինոյի, Վարդենիսի, Ստեփանավանի և այլ շրջաններում, հացահատիկի հեկտարի միջին բերքատվությունն անցել է 30—35 ցենտներից, իսկ կարտոֆիլինը՝ 180—200 ցենտներից: Բերքատվության նման աճին հիմնականում նպաստել է երկրագործության կուլտուրայի բարձրացումը, հատկապես հանքային և օրգանական պարարտանյութերի ճիշտ կիրառումը:*

*Բարձր բերքի ստացման համար անհրաժեշտ է, որպեսզի գյուղատնտեսական կուլտուրաներն իրենց աճի ընթացքում բավարար ապահովված լինեն խոնավությամբ, ջերմությամբ և հանքային մատչելի սննդանյութերով: Մեր հանրապետության կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների վարելահողերը բնութագրվում են մեծ մասամբ անբավարար խոնավապահովվածությամբ, սակավահումուսությամբ, ցածր մեխանիկական կազմով և շարժուն սննդանյութերի նվազ պաշարով: Ուստի գյուղատնտեսական գիտության և արտադրության աշխատողները տեղական և հանքային պարարտանյութերն այնպես պետք է օգտագործեն, որպեսզի սննդառության նորմալ պայմաններ ստեղծվեն բոլոր կուլտուրաների համար:*

*Գյուղատնտեսության քիմիացման համաշխարհային փորձը ցույց է տալիս, որ բերքատվության մակարդակը պայմանավորված է պարարտանյութերի օգտագործման ինտենսիվությամբ: Որքան բարձր է այդ ինտենսիվությունը, այնքան ավելի մեծ է միավոր մակերեսից ստացվող բերքը:*

*Պարարտանյութն անհրաժեշտ է դիտել որպես պոտենցիալ բերք և դրա հետ վարվել ինչպես բերքի: Մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում հանքային պարարտանյութերի արտադրության շեշտակի բարձրացմանը: Պատմականորեն կարճ ժամանակամիջոցում ստեղծվեց հզոր քիմիական արդյունաբերություն, որն ապահովեց անհրաժեշտ քանակությամբ պարարտանյութերի արտադրությունը: Մեր երկիրը ներկայումս հանքային պարարտանյութերի արտադրությամբ աշխարհում առաջին տեղն է գրավում: 1960 թ. արտադրվել է 3,3 մլն տոննա ազոտ, ֆոսֆոր ու կալիում (սննդանյութերի հաշվով), 1970 թ.՝ 13,1 մլն տոննա, իսկ ընթացիկ հնգամյակի վերջին տարում (1980 թ.) կարտադրվի 33 մլն տոննա, որից ավելի քան 26,5 մլն-ը կհատկացվի գյուղատնտեսությանը: Նախատեսված է արտադրվող պինդ և հեղուկ համակցված պարարտանյութերում տարեցտարի ավելացնել սննդանյութերի պարունակությունը, որոնց արդյունավետությունն ավելի բարձր է, իսկ տեղափոխման, պահեստավորման և կիրառման ծախսերը՝ համեմատաբար պակաս:*



*Զարգացած քիմիական արդյունաբերություն ունի նաև մեր հանրապետությունը: Նրա արտադրանքն ապահովում է ոչ միայն Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության ազոտական պարարտանյութերի պահանջը, այլև առաքվում է այլ հանրապետություններ: Բացի այդ, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը մեծ քանակությամբ ծծմբաթթու է արտադրում, որը հումք է ծառայում ֆոսֆորական պարարտանյութերի արտադրության համար:*

*Տարեցտարի ավելանում է նաև մեր հանրապետությանը հատկացվող պարարտանյութերի քանակը: Եթե 1970 թ. կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները օգտագործել են 51 հազար տոննա ազոտ, ֆոսֆոր ու կալիում (սննդանյութերի հաշվով), ապա 1980 թ. այն կկազմի 107,6 հազար տոննա: Այսպիսով, մոտ ապագայում հանրապետության վարելահողերի և բազմամյա տնկարկների յուրաքանչյուր հեկտարին, միջին հաշվով, կհասնի ավելի քան 200 կգ սննդանյութ, որը բարձր բերք ստանալու լավ երաշխիք է: Սակայն դեռևս կան անհանդուրժելի թերություններ պարարտանյութի այդ վիթխարի քանակությունը գյուղատնտեսական բերք դարձնելու բնագավառում: Գործարանից մինչև դաշտ հասցնելու ճանապարհին՝ երկաթուղային կայարաններից տեղափոխելիս, բեռնաթափման ու կիրառման պրոցեսում դեռևս կորուստները շատ մեծ են:*

*Հայտնի է, որ պարարտանյութերից առավելագույն հատուցում ստացվում է միայն այն դեպքում, երբ բույսերը միաժամանակ են ապահովվում բոլոր պահանջվող սննդանյութերով: Մինչդեռ տնտեսությունների գերակշռող մասում պարարտանյութերը կիրառվում են առանց խառնուրդներ պատրաստելու: Պարարտանյութերի արտադրության և դրանց ճիշտ կիրառման միջև ստեղծված անհամապատասխանությունը զգալի չափով խոչընդոտում է երկրագործության քիմիացման հետագա առաջընթացին:*

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1978 թ. հուլիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Փաստորեն երկրում դեռևս չկա ագրոքիմիական սպասարկման միասնական գիտականորեն կազմակերպված սիստեմ: Մի տեղում քիմիացմամբ զբաղվում է «Գյուղտնտեխնիկական», մեկ այլ տեղում՝ միջտնտեսային միավորումները, իսկ որոշ տեղերում էլ դա ընդհանրապես ինքնահոսի է մատնված: Այդ կարևոր գործում կարգ ու կանոն հաստատելու համար նպատակահարմար է ագրոքիմիական ծառայությունը ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում կենտրոնացնել գյուղատնտեսական մարմինների սիստեմում, նրանց հանձնելով դրա համար նախատեսված ամբողջ արտադրական բազան»:*

*Ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի ցուցումների, կուսակցությունն ու կառավարությունը ընդունեցին «Երկրում միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայություն ստեղծելու մասին» նոր որոշում:*

*Գյուղատնտեսական արտադրությունը արդյունաբերական հիմքերի վրա փոխադրելը, դրա համակենտրոնացումն ու մասնագիտացումը օրակարգի հարց դարձրեցին կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների ագրոքիմիական սպասարկման կատարելագործումը:*

*Ինչպես արդեն նշվեց, պարարտանյութերի օգտագործման պրոցեսում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ: Հանրապետության կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների զգալի մասը հանքային պարարտանյութերի պահպանման տիպային պահեստներ չունի: Ճիշտ է, ազոտական պարարտանյութերը մեծ մասամբ պահվում են ծածկի տակ, սակայն մեկուսացված չլինելով մթնոլորտի խոնավությունից, կարծրանում են և մեքենայացված կիրառման համար անհրաժեշտ է լինում դրանք նորից մանրացնել, իսկ դա զգալի լրացուցիչ ծախսումներ և աշխատանք է պահանջում: Ֆոսֆորական ու կալիումական պարարտանյութերի պահեստներ տնտեսություններից*

շատ քչերն ունեն, և դրանք «Գյուղտնտեխնիկա»-ի կենտրոնական պահեստներից մեքենաներով ուղղակի դաշտ են տեղափոխվում, որի հետևանքով զգալի կորուստներ են լինում, դժվարանում է դրանց մեքենայական կիրառումը, պարարտանյութերը կորցնում են իրենց որակական հատկությունները։ Նման պայմաններում պարարտանյութերից խառնուրդներ պատրաստելու մասին խոսք լինել չի կարող, իսկ դրանք առանձին-առանձին կիրառելը զգալիորեն ավելացնում է նյութական ու աշխատանքային ծախսերը, արհեստականորեն բարձրացնում գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը։

Արտադրության առաջավորների փորձը ցույց է տալիս, որ լավ պահպանված գոմաղբի և հանքային պարարտանյութերի համատեղ կիրառումը ժամանակակից ագրոտեխնիկայի պայմաններում զգալիորեն ավելացնում է կարտոֆիլի, շաքարի ու կերի ճակնդեղի, բանջարաբոստանային կուլտուրաների, ծխախոտի և բազմամյա տնկարկների բերքատվությունը։

Ներկայումս հանրապետությունում մշակվող կուլտուրաների ցանքերին տրամադրվող սննդանյութերի շուրջ 15 տոկոսը բաժին է ընկնում տեղական պարարտանյութին՝ գոմաղբին, որի արդյունավետ օգտագործման կարևոր պայմաններից մեկը այն ամբարներում պահելն է։ Սակայն մինչև այժմ տնտեսությունների գերակշռող մասում նման տիպային ամբարներ չկան, որի հետևանքով լիարժեք օրգանական պարարտանյութերի ստացման վիճակը ամենևին բարվոք չէ։ Փոքր կույտերով պահված գոմաղբը սննդանյութերի զգալի կորուստ է տալիս, քանի որ դրանում եղած մոլախոտերի սերմերը մնում են ծլունակ։ Ցավոք, նույնիսկ անասնապահական նոր համալիրները կառուցվում են առանց տիպային գոմաղբարանների (էլ չենք խոսում առանձին տնտեսությունների մասին), իսկ դա ոչ միայն վատացնում է անասնապահական շենքերի սանիտարական վիճակը, այլև զգալիորեն արժեքազրկում է պարարտանյութը։ Գոմաղբը զգալի չափով բարելավում է նաև հողերի ջրաֆիզիկական հատկությունները, մի հանգամանք, որը բարերար ազդեցություն է գործում բույսերի բերքատվության ու որակի վրա։ Վերջապես, այն հնարավորություն է ընձեռում գործարանային պարարտանյութերի մեջ պարունակվող սննդանյութերը մի քանի անգամ վերադարձնել դաշտում աճող բույսերին՝ դրանով բարձրացնելով օգտագործման գործակիցը։

Միասնական ագրոքիմիական ծառայության ստեղծմամբ պետք է արմատապես բարելավվի ինչպես հանքային, այնպես էլ օրգանական պարարտանյութերի օգտագործումը։

Հանրապետության գյուղատնտեսության մինիստրության սիստեմում ստեղծված միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայությունը բաղկացած է կենտրոնական ապարատից, շրջանային ագրոքիմիական կենտրոններից ու քիմիացման կետերից, որոնք տնտհաշվարկի հիմունքներով կիրականացնեն կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների բազմակողմանի ագրոքիմիական սպասարկումը։

Տնտեսությունների ագրոքիմիական սպասարկման արտադրամիավորումները միջտնտեսային քիմիացման կետերն են, որոնք ունենալու են իրենց մեքենայացված պահեստները՝ պարարտանյութերի տարեկան պահանջի 50 տոկոսի միանվագ պահպանման ծավալով, սննդանյութերի տարբեր հարաբերակցությամբ պարարտանյութերի խառնուրդներ պատրաստող համապատասխան մեխանիզմներ, այդ խառնուրդները դաշտ տեղափոխող ու կիրառող սարքավորումներ։ Միաժամանակ քիմիացման կետերը կիրականացնեն օրգանական պարարտանյութերի կուտակման, պահպանման և մեքենայացված կիրառման աշխատանքները։ Այդ կետերի տնօրինության տակ է դրվում նաև գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու մոլախոտերի դեմ քիմիական և կենսաբանական միջոցներով տարվող պայքարի իրականացումը։

Ելնելով հանրապետության տարածքի մասնատվածությունից, յուրաքանչյուր քիմիացման կետ կսպասարկի 5—10 հազար հեկտար վարելահող, ինչպես նաև բազմամյա տնկարկներ, խոտհարքներ և արոտավայրեր ունեցող մի խումբ տնտեսությունների։ Քիմիացման կետերն առանձին տնտեսությունների համեմատ ունեն այն մեծ առավելությունը, որ պարարտանյութերի ճիշտ, գի-



տական կիրառմամբ նրանք էապես կնպաստեն գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը, հատուցումների արդյունավետության մեծացմանը։ Այս համակենտրոնացմամբ զգալի չափով բարձրանալու է պարարտանյութեր տեղափոխող ու կիրառող սարքավորումների արտադրողականությունը, որի շնորհիվ միավոր մակերեսի պարարտացման վրա կատարվող ծախսումներն անհամեմատ կնվազեն։ Մեքենաներն ու մեխանիզմները կաշխատեն ավելի լրիվ բեռնվածությամբ և բարձր արտադրողականությամբ, քան առանձին տնտեսություններում, որի շնորհիվ կիջնի կատարվող աշխատանքների ինքնարժեքը։

Մոտ ապագայում հանրապետության գյուղատնտեսությանը հատկացվող հանքային պարարտանյութերի քանակն այնքան կավելանա, որ հնարավոր կդառնա պարարտացնել նաև անասնապահության կերի հիմնական բազա հանդիսացող բնական խոտհարքներն ու արոտավայրերը։ Դրա շնորհիվ խոտհարքների և արոտավայրերի արտադրողականությունը կբարձրանա 2—3 անգամ։ Այս ամենի իրականացումը պայմանավորված է միասնական ագրոքիմիական ծառայության հստակ աշխատանքով։

Ջավախքի, Բազումի, Փամբակի, Գեղամա, Վարդենիսի, Զանգեզուրի և այլ խոշոր լեռնային զանգվածների խոտհարքների ու արոտավայրերի արտադրողականության հետագա բարձրացման համար անհրաժեշտ կլինի կոորդինացնել տվյալ ռեգիոնի շրջանների քիմիացման կետերի գործունեությունն այն հաշվով, որպեսզի ուժերն ու միջոցները մոբիլիզացվեն մեծ մասշտաբներով այդ զանգվածներում ագրոքիմիական միջոցառումներ իրականացնելու համար։

Միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայության կազմակերպման շնորհիվ լայն հնարավորություններ կստեղծվեն գիտության նվաճումների և արտադրության առաջավորների փորձի ներդրման համար, առանց որի դժվար է պատկերացնել ժամանակակից գյուղատնտեսության վերելքը։

Հանրապետության տարբեր գիտահետազոտական հիմնարկությունների վերջին հետազոտությունները վկայում են, որ հանքային պարարտանյութերի ինտենսիվ կիրառման պայմաններում դաշտային կուլտուրաների ցանքերում, բնական խոտհարքներում ու արոտավայրերում բարձր արդյունավետություն է ստացվում նաև միկրոտարրերի՝ բորի, մանգանի, մոլիբդենի և պղնձի օգտագործումից։ Արտադրական փորձերը և որոշ շրջաններում դրանց արդյունքների ներդրումը համոզիչ կերպով հաստատում են, որ կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, եգիպտացորենի, բազմամյա խոտերի ցանքերում ու բնական կերային հանդակներում հիշյալ միկրոպարարտանյութերի աննշան կիրառմամբ ստացվում է բերքի զգալի հավելում։ Հասկանալի է, որ դրանց զանգվածային օգտագործումը մեծ հեռանկարներ ունի, և նորաստեղծ ծառայությունն ամեն կերպ կնպաստի ամբողջ հանրապետությունում այս միջոցառման իրականացմանը։

Լեռնային սևահողերում մշակվող դաշտային կուլտուրաների ցանքերում, ենթալպյան և ալպյան գոտու խոտհարքներում ու արոտավայրերում միկրոպարարտանյութերից առավել արդյունավետ է մոլիբդենի կիրառումը։ Սակայն արտադրության մեջ լայն ներդրմանը խանգարում է դրա բարձր արժեքը, քանի որ օգտագործվում է քիմիապես մաքուր աղի ձևով։ Մեր հանրապետությունը հարուստ է մոլիբդենի հանքերով ու դրա արդյունաբերական մնացորդներից քիմիապես ոչ այնքան մաքուր, սակայն կենդանիների ու բույսերի համար անվնաս ու մատչելի մոլիբդենային պարարտանյութի ստացման տեխնոլոգիայի մշակումը մեր քիմիկոսների առջև որոնումների լայն ասպարեզ է բացում։

Գյուղատնտեսական գիտության և կազմակերպվող միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայության ուշադրության կենտրոնում պետք է լինի պարարտանյութերի օգտագործման գործակցի հետագա բարձրացման հարցը։ Բազմաթիվ ուսումնասիրությունների շնորհիվ պարզվել է, որ պարարտանյութերի մեջ պարունակվող սննդանյութերը տարբեր չափով են օգտագործվում, որը զգալիորեն պայմանավորված է խոնավապահովվածությամբ և որոշակի սննդանյութերի պակասությամբ, ինչպես նաև ագրոտեխնիկական մի-

ջրցատումների ճշգրիտ կատարմամբ, վնասատուների ու մոլախոտերի դեմ տարվող պայքարով:

Սննդանյութերի հաշվեկշռի տվյալները ցույց են տալիս, որ հանրապետությունում դեռևս շատ են անելիքները պարարտանյութերի ճիշտ բաշխման առումով: Արարատյան հարթավայրը մեր հանրապետության ամենաինտենսիվ քիմիացման գոտին է բարձր բերքատվությամբ, սակայն պետք է հոգալ, որպեսզի բույսերի չօգտագործած պարարտանյութերի քանակը բացասաբար չազդի բերքի որակի վրա և չաղտոտի շրջակա միջավայրը, վերերկրյա և ստորերկրյա ջրերը: Միաժամանակ անհրաժեշտ է պարարտանյութերի հետագա ավելացման հաշվին աստիճանաբար բարձրացնել նաև լեռնային շրջանների ցանքատարածությունների քիմիացման մակարդակը:

Ինչպես հայտնի է, մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում բնության պահպանության և շրջակա միջավայրի բարելավման հարցերին:

Գյուղատնտեսության քիմիացման մակարդակի հետագա աճը չպետք է շրջակա միջավայրի աղտոտման պատճառ հանդիսանա: Մինչդեռ շատ տեղերում ականատես ենք այն բանին, որ պարարտանյութերի հախուռն ու անտնտեսվար օգտագործումը աղտոտում է շրջակա միջավայրը: Միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայության գործունեության պայմաններում, երբ պարարտանյութերի կիրառումը իրագործվում է միայն գիտականորեն, հնարավոր կլինի կանխել նման բացասական երևույթները:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն առավելապես աճում է ազոտական պարարտանյութերի հաշվին, սակայն դրա ավելցուկը կամ մոխրային տարրերի (ֆոսֆոր, կալիում) օպտիմալ հարաբերակցության խախտումը նվազեցնում է բույսերի դիմացկունությունը և իջեցնում ստացվող արտադրանքի որակական ցուցանիշները: Հատկապես վտանգավոր է ազոտական պարարտանյութերի միակողմանի կիրառությունը, լինի դա ձյան վրա, թե ամառային սնուցումներով: Ինչպես խմելու ջրերում, այնպես էլ բանջարեղենի ու բոստանային կուլտուրաների պտուղներում կուտակված ազոտի բարձր պարունակությունը վտանգավոր է կենդանիների ու մարդկանց համար: Դա հանքային պարարտանյութերի անխնա կիրառման հետևանք է:

Բերրիության միասնական ծառայությանն անհրաժեշտ են որակյալ մասնագետներ: Միայն համապատասխան կադրերի առկայության պայմաններում հնարավոր կլինի իրականացնել այդ ծառայության հստակ աշխատանքը: Նման մասնագետ կադրեր կարելի է պատրաստել ինչպես հանրապետության գյուղատնտեսական ինստիտուտում, համապատասխան տեխնիկումներում, այնպես էլ կոլտնտեսություններում և սովխոզներում: Տեղին է հիշել սովետական ագրոքիմիայի հիմնադիր, ակադեմիկոս Դ. Ն. Պրյանիշնիկովի խոսքերը. «Գյուղատնտեսության քիմիացման գործը պետք է սկսել մասնագետների քիմիացումից»:

Նորաստեղծ ագրոքիմիական ծառայության սիստեմում մեծ են հանրապետության ագրոքիմիկոսների անելիքները: Նրանց պարտքն է օգնել կազմակերպվող քիմիացման կետերը մասնագետներով համալրելուն, ինչպես նաև պարարտանյութերի ճիշտ կիրառումը կազմակերպելու գործին: Քիմիացման կետերի կազմակերպման ընթացքում պարարտանյութերի պահեստների ու արտադրական շենքերի կառուցման և նյութատեխնիկական բազայի ստեղծման գործին շատ բանով կարող են օգնել արդյունաբերական ձեռնարկությունները ու շինարարական կազմակերպությունները:

Միասնական մասնագիտացված ագրոքիմիական ծառայության կազմակերպումը գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման հուսալի երաշխիքներից մեկն է:

# ՀԱՆՈՒՆ ԻՆՏԵՆՍԻՎ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ

**Ս. Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ**
խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության հայկական գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեծ խնդիրներ առաջադրեց գյուղատնտեսության տարբեր ճյուղերի, այդ թվում նաև խաղողագործության հետագա զարգացմանը՝ արտադրության ինտենսիվացման, զանգվածային տարածություններով արդյունաբերական այգիներ հիմնելու և մյուս կոմպլեքս միջոցառումների հաշվին զգալի չափով ավելացնելու խաղողի արտադրությունը:

Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության խաղողագործները ձեռք բերեցին զգալի հաջողություններ: 1976—78 թթ. խաղողի արտադրության միջին տարեկան ծավալը կազմեց 220,6 հազար տոննա: Զգալիորեն բարձրացել է այգիների մշակության կուլտուրան:

Խաղողագործությունը Հայաստանի գյուղատնտեսական արտադրության ավանդական ճյուղերից է, որի զարգացմանը նպաստում են հանրապետության բնակլիմայական պայմանները: Հայկական ՍՍՀ-ն մտնում է խաղողի համաշխարհային մշակության ինտենսիվ գոտու մեջ: Սակայն հարկ է նշել, որ ծովի մակերևույթից հանրապետության հողատարածությունների նկատելի բարձրության և ռելիեֆի խիստ կտրտվածության պատճառով խաղողի կուլտուրայի տարածման տերիտորիան սահմանափակ է:

Ներկայումս խաղողի այգիները մեր հանրապետությունում կազմում են մշակելի հողատարածությունների մոտ երեք տոկոսը և տեղաբաշխված են հիմնականում Արարատյան հարթավայրում, նախալեռնային գոտում, հյուսիս-արևելյան շրջաններում և մասամբ Դարալագյազի ու Զանգեզուրի գյուղատնտեսական գոտիներում: Տարիների ընթացքում խաղողի այգիների պլանավորված ընդարձակումը հանգեցրեց նրան, որ խաղողագործությունը դարձավ ապրանքային գյուղատնտեսական արտադրության առաջատար ճյուղ, որով բնորոշվում է ոչ միայն առանձին տնտեսության կամ շրջանի, այլև գյուղատնտեսական տվյալ գոտու մասնագիտացման բնույթը:

Հայկական ՍՍՀ-ում խաղողագործության հետագա զարգացումն առաջին հերթին պայմանավորված է ոռոգման ցանցի ընդլայնմամբ: Վերջին տարիներին հանրապետությունում խոշոր աշխատանք է ծավալվել ջրամբարների և ոռոգման ցանցի կառուցման, զանգվածային հողատարածությունների ջրարբիացման և մելիորացման նպատակով: Ազատի, Ջողազի և Ախուրյանի ջրամբարների շահագործումից հետո նախատեսվում է Արարատյան հարթավայրում և նախալեռնային գոտիներում (Հոկտեմբերյանի և Թալինի շրջաններում) ոռոգելի դարձնել ևս 30 հազար հեկտար հողատարածություն և այն հատկացնել խաղողագործությանը:

Հայտնի է, որ Արարատյան հարթավայրում շուրջ 30 հազար հեկտար հողեր աղակալված են: Մելիորացումից և գյուղատնտեսական շրջանառության մեջ դնելուց հետո դրանց մի մասը ևս կօգտագործվի խաղողագործության նպա-

տակներով: Հյուսիս-արևելյան, Դարալագյազի և Զանգեզուրի գոտիներում տարբեր կողմնադրություն և թեքություն ունեցող լանջերը նույնպես կարող են օգտագործվել խաղողի այգիների տարածությունների ընդարձակման համար, մանավանդ որ խաղողագործության հետագա զարգացման հնարավորությունները սահմանափակ են հատկապես այդ գոտիներում:

ՀԿԿ Կենտկոմի 1974 թ. ապրիլյան պլենումը առաջադրեց մի կարևոր խնդիր՝ բազմամյա տնկարկների տարածությունների հետագա ընդարձակումը կատարել գյուղատնտեսական այլ կուլտուրաների համար սակավ պիտանի հողերի հաշվին:

Տասներորդ հնգամյակի անցած չորս տարիներին բավական ընդարձակվեցին խաղողի այգիների տարածությունները: Զգալի աշխատանք կատարվեց ցածրարժեք, ծերացած, հին թմբային սիստեմի այգիների վերակառուցման և նոր, ժամանակակից արդյունաբերական այգիների հիմնման նպատակով: Հանրապետության խաղողագործների առջև կուսակցությունը նոր խնդիրներ է դնում: ՀԿԿ XXVI համագումարը նշեց, որ տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարումն ապահովելու համար պետք է լուծվի եռմիանական մի խնդիր՝ բարձրացնել այգիների մշակության կուլտուրան, կիրառելով ագրոտեխնիկական միջոցառումների ողջ կոմպլեքսը, վերացնել նոսրությունը և հիմնել նոր այգիներ:

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման պայմաններում, որի նպատակը ողջ այդ ճյուղի ինտենսիվացումն է, խաղողագործության՝ որպես հանրապետության գյուղատնտեսության առաջատար բնագավառներից մեկի, մասնագիտացումը դառնում է առաջնահերթ խնդիր: Հայկական ՍՍՀ-ում խաղողագործության հետագա զարգացումը պայմանավորված է ինչպես դրա նկատմամբ ազգաբնակչության, այնպես էլ վերամշակող արդյունաբերության պահանջով, որն իր արտացոլումն է գտել կուսակցության և կառավարության պլաններում:

Մեր հանրապետության խաղողագործության մեջ նախապատվությունը տրվում է խաղողի տեխնիկական սորտերին: Բավական է ասել, որ խաղողի համախառն բերքի մոտ 90—95 տոկոսը վերամշակվում է ալկոհոլային խմիչքների համար: Առաջիկա տասնամյակում նախատեսվում է մեծացնել վերամշակող արտադրության ծավալները: Ելնելով գինեգործության պահանջներից և զարգացման հեռանկարներից, վերջին տարիներին ճշտվել են տեխնիկական խաղողի արտադրության մասնագիտացման ուղղությունը և մշակող սորտերի կազմը: Ըստ դրա, Արարատյան հարթավայրի տարբեր ենթագոտիներում հիմնականում առաջարկվում է մշակել կախեթ, մսխալի, կարմրահյութ, ռքածիթելի և այլ սորտեր, որոնցից ստացվում են թնդեցրած, մասամբ էլ սեղանի գինիներ, ինչպես նաև կոնյակի հումք: Արարատյան հարթավայրի նախալեռնային գոտում կմշակվեն ոսկեհատ, արենի, կարմրահյութ, հադիսի և մուսկատային այլ սորտեր, որոնցից ստացվում են քաղցր աղանդերային, սեղանի գինիներ և կոնյակի հումք: Հյուսիս-արևելյան գոտում կգերակշռեն ալիգոտե, պինո սև, ռքածիթելի, լալվարի սորտերը, որոնք լավ հումք են սեղանի թեթև և շամպայն գինիների արտադրության համար: Դարալագյազում կբազմացվեն արենի, կարմրահյութ սորտերը, որոնք սեղանի կիսաքաղցր գինիների, մասամբ էլ կոնյակի հումքի արտադրության համար են: Զանգեզուրի գոտու կլիմայական պայմանները շատ խայտաբղետ են: Մեղրու շրջանում լավ է աճում սպիտակ ալդարան, արևիկը, Ղափանում՝ կախեթը, իսկ Գորիսում՝ պինո սևը, որոնցից ստացվում են հիմնականում սեղանի թեթև գինիներ:

Այսպիսով, հանրապետության տարբեր գոտիներում խաղողի շուրջ 30 սորտերի և սելեկցիոն եղանակով ստացված նոր բարձրարժեք տեսակների մշակումը հնարավորություն կընձեռի առաջիկայում ևս գինեգործությունը զարգացնելու թնդեցրած գինիների, ինչպես նաև կոնյակի սպիրտի արտադրության նպատակով:

Սրան զուգահեռ, ճիշտ օգտագործելով խաղողագործական շրջանների կլիմայական պայմանները և լավ արտահայտված ուղղաձիգ գոտիականությունը,



առաջիկայում լայն թափ կստանա նաև սեղանի և շամպայն (կարմիր և սպիտակ) գինիների արտադրությունը:

Ինչպես տեսնում ենք, հանրապետությունում մշակված է խաղողի սորտերի ընտրության և տեղաբաշխման ամբողջական համակարգ: Սակայն պրակտիկայում քիչ չեն դեպքերը, երբ առանձին տնտեսությունների ղեկավարներ տնկում են իրենց ցանկացած սորտերը կամ խախտում են սորտերի տոկոսային համամասնությունը: Դա բավական բարդացնում է գինեգործական արտադրության աշխատանքները և խոչընդոտում սահմանված քանակի ու տեսակի բարձրորակ գինիների պատրաստմանը: Մասնավորապես դա վերաբերում է Արարատյան հարթավայրի և նախալեռնային գոտիների այն վարչական շրջաններին ու տնտեսություններին, որտեղ առաջարկվում է տարածել ոսկեհատ և մուսկատ սորտերը: Տնտեսությությունների որոշ ղեկավարների ոչ լուրջ վերաբերմունքի հետևանքով տարեցտարի նվազում են ոսկեհատ սորտի տարածությունները, մի սորտ, որը 17 տեսակի գինենյութի հումք է տալիս: Նույնը պետք է ասել ճիլարի մասին: Իսկ մուսկատների նկատմամբ ունեցած «անբարյացակամ» վերաբերմունքը հանգեցրեց նրան, որ խիստ սահմանափակվել է այդ մակնիշի գինու արտադրությունը: Ժամանակն է, որ այս կարևոր հարցերի նկատմամբ դրսևորվի պետական մոտեցում և ճշտորեն պահպանվեն տեխնիկական սորտերի ընտրության և շրջանացման համակարգի պահանջները:

Անհրաժեշտ է մեծ ուշադրություն նվիրել նաև տարբեր ժամկետներում հասունացող սեղանի սորտերի արտադրության կազմակերպմանը: Խաղողի օգտագործման ժամանակաշրջանը կարելի է երկարաձգել նախ ամենավաղահասից մինչև ամենաուշահաս սեղանի սորտերի ընտրությամբ: Ընդ որում, այդ սորտերը պետք է մշակվեն խաղողագործական հիմնական շրջանների ցածրադիր գոտիներում, որտեղ վեգետացիայի ընթացքում ջերմաստիճանի ռեժիմը լավագույնն է: Այդ ուղին հնարավորություն կընձեռի թարմ խաղողի օգտագործման ժամանակաշրջանը (բերքահավաքից մինչև սպառելը) երկարաձգել մոտ 1,5—2 ամիս: Մյուս ուղին բերքահավաքից հետո սառնարանային պահպանումն է, որը թարմ խաղողի օգտագործման ժամանակաշրջանը կերկարաձգի ևս 4—5, իսկ լավ պահպանելու դեպքում մինչև 6—7 ամիս: Հանրապետության խաղողի այգիներում սեղանի սորտերը կազմում են 5—7 տոկոս: Եթե նկատի ունենանք, որ առաջիկայում սեղանի խաղողի պահանջարկը զգալիորեն ավելանալու է, ապա պարզ կդառնա այդ սորտերի այգիների տարածության հետագա ընդարձակման անհրաժեշտությունը:

Ներկայումս, ըստ գյուղատնտեսական գոտիների, ճշտվել են նաև սեղանի խաղողի տեսականին և մասնագիտացման ուղղությունը: Սեղանի խաղողի հիմնական արտադրանքը կենտրոնացվելու է Արարատյան հարթավայրում և նախալեռնային գոտում, որտեղ այդ սորտերը կազմելու են այգիների ընդհանուր տարածության մինչև 20 տոկոսը: Մնացած գոտիներում (Դարալագյազ, Զանգեզուր) սեղանի խաղողի արտադրությունը կունենա տեղական նշանակություն և ամբողջովին ի սպաս կդրվի տեղական ազգաբնակչության կարիքների բավարարմանը:

Սեղանի խաղողի արտադրությունը պատշաճ մակարդակով կազմակերպելու նպատակով անհրաժեշտ է ձեռնարկել այնպիսի արմատական միջոցառումներ, ինչպիսիք են մաքրասորտ տնկանյութի արտադրությունը, մաքրասորտ ղանգվածային այգիների հիմնումը, տնկարկների հատուկ խնամքը, ընտրովի բերքահավաքը:

Անհրաժեշտ է նշել, որ հանրապետության սառնարանային տնտեսությունները դեռևս չեն բավարարում այսօր դրանց ներկայացվող պահանջները: Ուստի սեղանի խաղողի արտադրությունն ավելացնելուն զուգահեռ անհրաժեշտ է հետևողական աշխատանք կատարել այդ տնտեսությունների ընդլայնման նպատակով: Դա հնարավորություն կընձեռի լուծելու ուշ աշնան, ձմռան և գարնան ամիսներին ազգաբնակչությանը խաղողով ապահովելու հարցը:

Խաղողագործության հետագա զարգացման բնագավառում մեծ է գիտության դերը: Խաղողագործության վերաբերյալ գիտական հետազոտությունները Հայաստանում սկիզբ են առել 100 տարի առաջ, սակայն միայն սովետական

կադրերի հաստատումից հետո մեր հանրապետությունում ծավալվեց պլանաչափ և հետևողական գիտահետազոտական աշխատանք։ Խաղողագործ գիտնականների գործունեության շնորհիվ ձեռք են բերվել որոշակի հաջողություններ։ Հանրապետության խաղողագործության ապագայի համար առավել նշանակություն ունեն ցրտերի և հիվանդությունների նկատմամբ դիմացկուն սորտերի ստեղծման, աշխատատար գործողությունների համակողմանի մեքենայացման, առաջավոր տեխնոլոգիաների մշակման հարցերը։

Գիտական հիմնական ուժերը, ինչպես նաև նյութական միջոցներն ու տեխնիկական հնարավորությունները մոբիլիզացվել են այդ կարևոր պրոբլեմների լուծման շուրջը։ Խնդրի կարևորությունը ցույց տալու համար նշենք միայն մի օրինակ. խաղողի ցրտադիմացկուն սորտերից ստացված տնտեսական արդյունավետությունը հեկտարի հաշվով կազմում է 240—260 ռուբլի՝ ի հաշիվ այգեթաղի և այգեբացի բացառման։ Իսկ եթե սորտը ցրտադիմացկունության հետ միասին օժտված է նաև սնկային հիվանդությունների նկատմամբ դիմացկունությամբ, ապա ստացված արդյունքն ավելի կմեծանա։

Հարկ է նշել, որ ցրտադիմացկունության պրոբլեմը բարդ է ու դժվարլուծելի, քանի որ, ինչպես ցույց են տալիս երկրի խաղողագործական շրջաններում տարվող հետազոտությունները, այդ հատկանիշը չափազանց դժվար է համատեղվում պտղահյութի բարձր որակի հետ։ Սրանով է բացատրվում այն փաստը, որ, չնայած սելեկցիոներների հսկայական աշխատանքին, այդ բնագավառի տեղաշարժերն այսօր դեռևս գոհացուցիչ չեն։ Խնդրի լուծման ճանապարհին մեր ինստիտուտի գիտնականները հասել են որոշակի հաջողությունների։ Ինստիտուտի խաղողի սելեկցիայի և ամպելոգրաֆիայի բաժնի վարիչ, Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական համամիութենական ակադեմիայի թղթակից-անդամ, պրոֆեսոր Ս. Պողոսյանի ղեկավարությամբ վերջին տարիներին ստեղծվել և պետական սորտափորձարկման են հանձնվել խաղողի տեխնիկական ցրտադիմացկուն նոր սորտեր (կարմրենի, նորակերտ, մեղրաբույր, մերձավան, դիմացկուն, լեռնատու, աշտարակի կարմիր, բուրմունք և այլն), որոնց մի մասը միաժամանակ դիմանում է վտանգավոր սնկային հիվանդություններին։

Այս սորտերի բաց ձմեռող վազերը դիմանում են համարյա մինչև 30 աստիճան ցրտերի և հեկտարից ապահովում են 160—200 ց բերք։ Ցրտադիմացկուն նոր սորտերը տալիս են բարձրորակ սպիտակ և կարմիր աղանդերային գինիներ, որոնք միջազգային մի շարք համտեսներում արժանացել են ոսկյա մեդալների։ Վերջին տարիներին ցրտադիմացկուն բարձր բերքատու սորտեր են ստացել նաև Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի այգեգործական ամբիոնի գիտնականները։

Հանրապետության խաղողագործության զարգացման ներկա փուլում անհետաձգելի խնդիր է ցրտադիմացկուն սորտերի ավելի համարձակ, լայն արտադրական փորձարկումն ու ներդրումը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշման համաձայն, նախատեսված է մինչև տասներորդ հնգամյակի վերջը ցրտադիմացկուն սորտերի մայրուտները հանրապետությունում հասցնել 135, իսկ 1985 թվականին՝ 685 հեկտարի։

Ինստիտուտում հետաքրքրական հետազոտություններ են տարվում խաղողի և պտղատու այգիների համար կիսանապատային քարքարոտ տարածությունները յուրացնելու ագրոտեխնիկայի մշակման, մեքենայացված այգեթաղի և այգեբացի համար խաղողի վազերի միակողմանի ձևավորման սիստեմի, խաղողի այգիների միջշարքերում հիմնաշրջման շերտի թարմացման ժամկետների սահմանման, այգիների միջվազային տարածությունների մեքենայական մշակման և բազմաթիվ այլ ասպարեզում։

Կարևոր նշանակություն ունի հանրապետության տարածքի թեք լանջերի իրացման (մինչև 20—22 աստիճան) և այգիների լայնաշարք, բարձրաբուն ձևավորման սիստեմների արդյունավետության ուսումնասիրումը։ Խաղողի լայնաշարք այգիների հիմնման և բարձրաբուն ձևավորման մեթոդը ներկայումս լայնորեն ներդրվում է երկրի մեղմ կլիմա ունեցող մի շարք այգեգործական գոտիներում։ Մեր հանրապետությունում այդ տեսակետից մեծ հեռա-



նկարներ կան հյուսիս-արևելյան (Շամշադին, Իջևան, Նոյեմբերյան, Թումանյան) և հարավ-արևելյան (Եղեգնաձոր, Մեղրի, Գորիս) գոտիներում, որտեղ կլիման համեմատաբար մեղմ է, և վազերը ձմռանը չեն թաղվում։ Այդ գոտիների ցածրադիր մասում, ինչպես և դարավանդներում հնարավոր է հիմնել խաղողի լայնաշարք բարձրաբուն տնկարկներ, որոնց բերքատվությունը, ըստ նախնական տվյալների, 2—3 անգամ կգերազանցի տվյալ գոտու միջին ցուցանիշը։ 1978 թվականից հիշյալ գոտիներում մեր ինստիտուտի գիտնականները աշխատանքներ են տանում մշակության նոր եղանակը արտադրության մեջ ներդնելու նպատակով։ Սակայն ներդրման տեմպերը դեռևս հեռու են բավարար լինելուց։

Ուսումնասիրվել և ըստ հանրապետության գյուղատնտեսական գոտիների արտադրությանն են առաջարկվել հանքային, օրգանահանքային բարդ և համակցված պարարտանյութերն օգտագործելու օպտիմալ ժամկետներ ու դոզաներ։

Ինստիտուտը որոշակի գործ է կատարում խաղողի վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի արդյունավետ միջոցառումների մշակման ու արտադրության մեջ ներդնելու նպատակով։

Ուսումնասիրվել են խաղողի ցրտադիմացկունության ֆիզիոլոգիական-կենսաքիմիական առանձնահատկությունները, միջոցառումներ են մշակվել ցածր ջերմաստիճանների վնասակար ազդեցությունից վազերը պաշտպանելու համար, տրվել են խաղողի աճի պրոցեսների կարգավորիչ պրեպարատների կիրառման հանձնարարականներ։ Հայտնաբերվել են խաղողի վազի ցրտադիմացկունության առանձնահատկությունների կանխագուշակման կենսաքիմիական ուղիները։ Վերոհիշյալ միջոցառումների լայն արտադրական փորձարկումը վկայում է դրանց բարձր արդյունավետությունը։

Հանրապետության խաղողագործների առջև դրված խնդիրների կենսագործման համար մեծ է կադրերի դերը։ Բարձրորակ կադրերի պատրաստման նպատակով հանրապետությունում բավականին գործ է կատարվել։ Սակայն նույնը չի կարելի ասել միջին և ցածր օղակի կադրերի պատրաստման վերաբերյալ։ Ամենօրյա հետևողական աշխատանք պետք է տարվի յուրաքանչյուր տնտեսությունում, մասնագիտացված այգեգործ բանվորների կոմպլեկտավորման և նրանց որակավորման բարձրացման նպատակով, այն հաշվով, որ տարեցտարի ամրանա և մեծանա մասնագիտացված բանվորական կորիզը։ Մասնագետ այգեգործ բանվորները պետք է մշտապես ամրացվեն բրիգադներին։ Մենք դեռևս չունենք մասնագետ էտվորներ և հաճախ այդ պատասխանատու աշխատանքը, որով պայմանավորված է այգիների բերքատվությունը, հանձնարարվում է պատահական, գործին անտեղյակ մարդկանց։

Մեր ինստիտուտը կադրերի պատրաստման ասպարեզում քիչ անելիքներ չունի. այդ խնդիրը մեզ մոտ իրագործվում է հասարակական համալսարանների, գիտաարտադրական սեմինարների, դասախոսությունների ու տեղերում կազմակերպվող անմիջական մասնագիտական օգնության ձևով։ Վատն այն է, սակայն, որ ունկնդիրների կազմը տարեցտարի փոփոխվում է, իսկ դա բացասաբար է անդրադառնում կադրերի պատրաստման որակի վրա և այն դարձնում քիչ արդյունավետ։ Կայուն ունկնդիրների կազմի դեպքում կարելի է հասնել փորձի և գիտելիքների կուտակման, որը կնպաստի սահմանված ագրոտեխնիկական միջոցառումները գործիմացորեն, ճիշտ և ժամանակին կատարելուն։

Խաղողագործության հետագա ինտենսիվացումը և արդյունավետության բարձրացումը հանրապետության գյուղատնտեսական արտադրության հարաճուն վերելքի երաշխիքներից է, գյուղի աշխատավորության պատվի գործը։

## Տնտեսական մեխանիզմի արդյունավետությունը

# ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՊՐՈԳՐԵՍԻՎՈՒԹՅԱՆ ԳՆԱՀԱՏՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Բ. Հ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ դինամիկ ու համամասնական զարգացման և արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը իրականացնելու հիմնական ուղիներից մեկը, ինչպես մատնանշեց ՍՄԿԿ XXV համագումարը, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումն է, գիտական հետազոտությունների արդյունքների ավելի արագ ներդրումը և գիտության ու արտադրության կապի ամրապնդումը։

Այդ խնդիրների լուծմանը էապես կնպաստի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործումը։ Այդ որոշման մեջ մշակված է գիտության ու տեխնիկայի զարգացման և նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման աշխատանքները պլանավորելու, կազմակերպելու և խթանելու գիտականորեն հիմնավորված մի ամբողջ համակարգ։

Տեխնիկական առաջընթացի կառավարման և տեմպերի արագացման գործում կարևոր է նաև նոր տեխնիկայի մշակման ու արմատավորման տնտեսական պրոբլեմների լուծումը, որոնցից շատերը դեռևս անբավարար են ուսումնասիրված։ Տարակարծություններ կան անգամ «նոր տեխնիկա» բուն հասկացության տնտեսական էության հարցի շուրջ, որը կարող է պայմանականություն մտցնել նոր տեխնիկայի պլանավորման ու արդյունավետության գնահատման մեջ։

Տնտեսագիտական գրականության մեջ կարելի է հանդիպել «տեխնիկա» հասկացության բազմաթիվ մեկնաբանությունների։ Լայնորեն տարածված է այն կարծիքը, թե տեխնիկան նյութական արտադրության մեջ աշխատանքի միջոցների ամբողջությունն է։ Առարկելով հասկացության այդպիսի նեղացման դեմ, շատ տնտեսագետներ որպես տեխնիկա են դիտում աշխատանքի այն միջոցները, որոնք օգտագործվում են արտադրության մեջ լայն իմաստով, ներառելով նաև ծառայությունների ոլորտը։ Կան տեսակետներ, որոնց համաձայն իրեղեն տարրերից բացի տեխնիկայի կատեգորիայի մեջ հարկավոր է մտցնել նաև տեխնոլոգիան և արտադրության եղանակները, գիտական հայտնագործությունները՝ մինչև դրանց նյութականացումը։ Ոմանք էլ ավելի են ընդլայնում «տեխնիկա» հասկացությունը, ընդգրկելով նաև աշխատանքի առարկաները, իսկ առավել լայն իմաստով՝ տեխնիկայի կարգն են դասում ոչ միայն աշխատանքի, այլև մարդկանց պահանջմունքների բավարարման միջոցներն ու առարկաները։



Այն տնտեսագետները, որոնք առարկում են տեխնոլոգիան, ինչպես նաև արտադրության կազմակերպման եղանակները «տեխնիկա» հասկացության մեջ ընդգրկելու դեմ, ելնում են այն բանից, որ դրանց միջև կա փոխադարձ կապ, դրանք լրացնում են միմյանց, ուստի անհրաժեշտություն չկա աշխատանքի միջոցների հետ «տեխնիկա» հասկացության մեջ մտցնել նաև դրանց օգտագործման եղանակը՝ տեխնոլոգիան։ Սակայն այդ փաստարկը համոզիչ չէ, քանի որ ոչ միշտ գոյություն ունեն այդպիսի միանշանակ կախում ու փոխկապվածություն աշխատանքի միջոցների և տեխնոլոգիայի միջև։ Աշխատանքի ունիվերսալ շատ միջոցներ կարող են օգտագործվել տեխնոլոգիական տարբեր պրոցեսներում, իսկ գործունեության տարբեր ոլորտներում միջոցների օգտագործման դեպքում միանգամայն հավանական է տեխնոլոգիայի փոփոխությունը։ Բացի դրանից, շատ արտադրություններում, ինչպես, օրինակ, քիմիական արդյունաբերության մեջ, տեխնոլոգիան որոշիչն է, նորամուծություն են արտադրությունը վարելու նոր սկզբունքները, որոնց հիման վրա նախագծվում են աշխատանքի միջոցները՝ դրանց իրագործման համար, և է՛լ ավելի մեծ չափով արտադրության տեխնիկա է տեխնոլոգիան, քան այդ միջոցները։ Տեխնոլոգիայի մասին վերը ասվածը վերաբերում է նաև արտադրության կազմակերպման եղանակներին։

Կանգ չառնելով «տեխնիկա» հասկացության բազմաթիվ մեկնաբանությունների վերլուծության վրա, նշենք միայն, որ այն, մեր կարծիքով, անհրաժեշտ է կապել մարդու պրակտիկ գործունեության հետ, տեխնիկա պետք է անվանել այն ամենը, ինչ օգնում է մարդուն նրա պրակտիկ գործունեության ասպարեզում և, ընդսմին, ակտիվ դեր է կատարում այդ պրոցեսում։ Այս տեսակետից աշխատանքի առարկաների, առավել ևս անձնական պահանջմունքների բավարարմանը ծառայող առարկաների վերագրումը տեխնիկային, տրնտեսապես հիմնավորված չէ։ Ելնելով մեթոդական նման մոտեցումից, կարելի է առաջարկել հետևյալ բնորոշումը. տեխնիկան մարդու գործունեության կազմակերպման ու իրականացման միջոցների և եղանակների ամբողջությունն է, որտեղ և ինչ նպատակով էլ որ այն իրականացվի։ Հասկանալի է, որ դա առաջին հերթին վերաբերում է մարդու արտադրական գործունեությանը։ Աշխատանքի միջոցներն ու եղանակները տեխնիկա են դառնում այն բանից հետո միայն, երբ դրանք արդեն կան և նախատեսվում են գործունեության կոնկրետ բնագավառներում օգտագործելու համար։

Այժմ քննարկենք «նոր տեխնիկա» կատեգորիայի էությունը, որը թեև տնտեսագիտական գրականության մեջ ունի բավական շատ բնորոշումներ, բայց առայժմ լիովին բացահայտված չէ։ Նոր տեխնիկան միայն տեխնիկական բնութագրերի առումով բնորոշելու փորձերը քննադատել են շատ տնտեսագետներ։ Այժմ նրանցից շատերը հակված են այն համարել տնտեսագիտական կատեգորիա և որպես հիմք չընդունել «տեխնիկա» հասկացությունը։

ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, գիտության ու տեխնիկայի և գյուտերի ու հայտնագործությունների պետական կոմիտեների՝ 1977 թվականին հաստատած մեթոդիկայում ասված է. «Սույն մեթոդիկայով տնտեսական արդյունավետության հաշվարկներ կատարելիս նոր տեխնիկայի կարգն են դասվում գիտական հետազոտությունների ու կիրառական մշակումների՝ ժողովրդական տնտեսության մեջ առաջին անգամ կիրառվող արդյունքները, որոնք պարունակում են գյուտեր և գիտատեխնիկական այլ նվաճումներ, ինչպես նաև արտադրության նոր կամ ավելի կատարյալ տեխնոլոգիական պրոցեսներ, աշխատանքի գործիքներ և առարկաներ, արտադրության և աշխատանքի կազմակերպման եղանակներ, որոնք կառավարման բոլոր մակարդակների գիտության ու տեխնիկայի զարգացման պլաններին համապատասխան օգտագործելիս ապահովում են արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշների բարձրացումը կամ սոցիալական և ժողովրդական տնտեսության զարգացման այլ խնդիրների լուծումը»։ Այստեղ հասկացության բնորո-

չում չի առաջարկվում, այլ միայն մատնանշվում է, թե որ դեպքերում կարող են օգտագործվել մեթոդիկայի դրույթները, սակայն պարզ է, որ հեղինակները զգալիորեն ընդլայնում են «նոր տեխնիկա» հասկացության շրջանակները։ Ավելի բարձր արդյունավետության պահանջը իրավացիորեն լրացվում է «սոցիալական և ժողովրդական տնտեսության զարգացման այլ խնդիրների» լուծման պայմանով։

Ինչպես տեսնում ենք, շատ դեպքերում, այդ թվում և մի քանի պաշտոնական մեթոդիկաներում «նոր տեխնիկա» ասելով հասկանում են նորը, պրոգրեսիվը, ավելի արդյունավետը։ «Նոր տեխնիկա» տերմինը օգտագործվում է «նոր պրոգրեսիվ (արդյունավետ) տեխնիկա» հասկացության փոխարեն։ Եթե ելնենք նոր տեխնիկայի այդպիսի բնորոշումից, ապա սկզբունքորեն նոր բազմաթիվ կոնստրուկցիաներ, մեքենաներ կամ սիստեմներ նոր տեխնիկայի կատեգորիայի մեջ չեն մտնի, եթե դրանք անարդյունավետ են (կամ առայժմ անարդյունավետ են)։ Այսպես, օրինակ, ծանր տարրերի ճեղքման շնորհիվ էլեկտրաէներգիայի ստացումը չէր կարելի նոր տեխնիկա համարել, քանի որ ատոմային էլեկտրակայանների (ԱԷԿ) տեխնիկատնտեսական ցուցանիշները մինչև վերջին ժամանակներս ավելի ցածր էին ջերմային և հիդրավլիկ էլեկտրակայանների ցուցանիշներից։ Սակայն ատոմային էլեկտրակայանների շինարարությունն ու տարածումը ատոմային էներգետիկային հնարավորություն ընձեռեցին զարգանալու այն աստիճան, որ ատոմային էլեկտրակայաններն այժմ արդեն տնտեսապես մրցում են ջերմաէլեկտրակայանների և հիդրոէլեկտրակայանների հետ։ Ամենայն հավանականությամբ, նույնը կլինի նաև կառավարվող ջերմամիջուկային պրոցեսների հետ։ Իսկ այն դեպքերում, երբ նոր միջոցները ծառայում են սկզբունքորեն նոր որակ ունեցող և նախկինում գոյություն չունեցած պրոցեսի համար (օրինակ, հեռուստատեսության արմատավորումը սկզբում, անցումը գունավոր հեռուստատեսությանը), դժվար է խոսել նախկին տեխնիկայի համեմատությամբ էֆեկտի ապահովման մասին, քանի որ այդպիսի բազա չկա, ուստի դրանք կարծես նոր տեխնիկային չեն վերաբերում։ Բացի դրանից, գտնում են, որ տեխնիկան նոր է, եթե այն ոչ միայն ավելի արդյունավետ է, քան փոխարինվողը, այլև իր տեխնիկատնտեսական ցուցանիշներով աշխարհի համանման լավագույն նմուշների մակարդակից ցածր չէ (Правовые вопросы научно-технического прогресса в СССР. М., 1967, стр *328*)։ Դա նշանակում է, որ տվյալ արտադրությունում առաջին անգամ օգտագործվող և նախկինի նկատմամբ տնտեսապես օգտակար տեխնիկան, որն այլ տեղ արդեն օգտագործվում է, նոր համարվել չի կարող։ Այս տեսակետը հիմնավոր չէ։ Կարծում ենք, նպատակահարմար է տարբերել «նոր տեխնիկա» և «նոր պրոգրեսիվ (արդյունավետ) տեխնիկա» հասկացությունները։ Նոր պետք է համարել այն տեխնիկան, որը տարբերվում է նույնանման պրոցես կատարող նախկին տեխնիկայից իր աշխատանքի սկզբունքներով, որակով, օգտագործվող նյութերով և դրանց ծախսի չափով, կարողությամբ և այլ հատկություններով։

Նոր տեխնիկայի արմատավորումն արդյունավետության հարց է, որը չի բնութագրվում նրա հասկացությամբ, այլ ամեն անգամ որոշվում է կոնկրետ պայմաններով։ Նոր մեքենայի արմատավորումը մի դեպքում կարող է լինել նպատակահարմար, քանի որ հանգեցնում է հասարակական աշխատանքի խնայողության, իսկ մի այլ դեպքում, գուցե և նույն ձեռնարկությունում՝ անշահավետ, օրինակ, երբ ֆիզիկապես անբավարար մաշված մեքենան փոխարինվում է այդ նորով։

Այսպիսով, «նոր տեխնիկա» հասկացությունը, որպես տեխնիկական առաջընթացի արդյունք, բնութագրվում է դրա տեխնիկական հատկություններով, իսկ տեխնիկայի պրոգրեսիվությունը՝ տեխնիկատնտեսական ցուցանիշներով։ Ուստի «նոր տեխնիկա» և «նոր պրոգրեսիվ (արդյունավետ) տեխնիկա» երկու հասկացություններն էլ ունեն օգտագործման հավասար իրավունք։ Առաջինը ելնում է նախորդից տարբերվող տեխնիկայի առկայությամբ, իսկ երկրորդը՝ դրա կիրառման նպատակահարմարությամբ։ Իսկ եթե «նորությունը»



կարող է դրսևորվել որևէ պարամետրի փոփոխությամբ, ապա «պրոգրեսիվության» մեջ պետք է արտացոլվեն բուն տեխնիկայի բոլոր բնութագրերը և դրա օգտագործման պայմանները։ Առաջինը տեխնիկական կատեգորիա է, երկրորդը՝ տնտեսագիտական։

Միջոցները նոր տեխնիկա են դառնում այն դեպքում միայն, երբ դրանք օգտագործվում են մարդկային գործունեության կոնկրետ բնագավառներում։ Մինչ այդ դրանք արտադրվող արդյունք են։ Անհրաժեշտ է սահմանազատել այդ երկու հասկացությունները, նոր տեխնիկա չանվանել այն արդյունքը, թեկուզ և նորը, որը միայն հետո, իր օգտագործման պայմանով է նոր տեխնիկա դառնում։ Նոր արտադրանք հասկացությունը վերաբերում է արտադրության պրոցեսին, իսկ նոր տեխնիկայինը՝ օգտագործման պրոցեսին, ըստ որում արտադրատեսակների ընդգրկման իմաստով նոր արտադրանքը ավելի լայն հասկացություն է, քանի որ արտադրված նոր արդյունքի միայն մի մասն է նոր տեխնիկա դառնում։ Նշենք, որ սխալ է այն կարծիքը, թե նոր տեխնիկան նաև նոր արդյունք է։ Որևէ ձեռնարկության համար արտադրանքը նոր է համարվում դրա արտադրությունն սկսելուց հաշված որոշ ժամանակահատվածի (ասենք՝ մեկ տարվա) ընթացքում, որից հետո, եթե դրա արտադրությունը շարունակվում է, այն նոր արդյունք չէ, սակայն, ձեռք բերվելով և օգտագործվելով այլ ձեռնարկություններում, դրանց համար դառնում է նոր տեխնիկա։

Նոր տեխնիկայի արդյունավետության որոշումը հարկավոր է բաժանել երկու մասի՝ արտադրության, ապա և՝ կիրառման արդյունավետության։ Այդ երկու խնդիրներն իրենց բովանդակությամբ, ժամանակով և լուծման սկզբունքներով արմատապես տարբերվում են, և դրանց առանձին քննարկումը ոչ միայն լիովին հիմնավորված է, այլև անհրաժեշտ։ Տեխնիկան՝ դրա արտադրության պրոցեսում, շրջանառու միջոցների տարր է (անավարտ արտադրություն, պատրաստի արտադրանք մինչև իրացումը), միանվագ ներգործության օբյեկտ, իսկ կիրառման պրոցեսում այն շատ հաճախ հիմնական ֆոնդ է, երկարատև ժամանակաշրջանում բազմակի օգտագործման օբյեկտ։ Առաջին պրոցեսում այն արդյունք է, իսկ երկրորդում՝ ռեսուրս՝ նպատակամղված արդյունքի հասնելու համար։ Ուստի գտնում ենք, որ նոր տեխնիկայի ընդհանրացված ժողովրդատնտեսական արդյունավետության որոշումը, դրա արտադրության և օգտագործման պրոցեսների հետ միասին, որն առաջարկվում է մեթոդիկաների մեծ մասում, ճիշտ է միայն տվյալ նոր տեխնիկայի ստեղծումը, այլ ոչ թե դրա արտադրությունը և օգտագործումը հիմնավորելու համար։

Վերոհիշյալ բացատրությունները ցույց են տալիս, որ տեխնիկայի նորությունն ու պրոգրեսիվությունը գնահատվում են արդեն կիրառվող տեխնիկայի ցուցանիշների համեմատությամբ, որը պայմանականորեն կարելի է անվանել «նախկին տեխնիկա»։

Քանի որ տեխնիկայի պրոգրեսիվությունը որոշվում է դրա օգտագործման արդյունավետությամբ, ապա որպես պրոգրեսիվության մակարդակը սահմանելու ցուցանիշ կարելի է առաջարկել նոր և նախկին տեխնիկայի արդյունավետության ցուցանիշների հարաբերությունը։ Եթե այն մեծ է մեկից, այսինքն՝ նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետությունը բարձր է նախկինի արդյունավետությունից, ապա նոր տեխնիկայի ներդրումը նպատակահարմար է, ըստ որում, ինչքան մեծ է հարաբերությունը, այնքան բարձր է և նպատակահարմարությունը։ Իսկ եթե այն փոքր է մեկից, ապա նոր տեխնիկայի ներդրումը տնտեսապես ձեռնտու չէ, դրա հետևանքով արտադրության արդյունավետությունը կարող է նվազել, ըստ որում, այնքան ավելի, ինչքան փոքր է պրոգրեսիվության ցուցանիշը։

Օգտագործելով արդյունավետության տարբեր ցուցանիշներ, կստանանք պրոգրեսիվության ցուցանիշների մի ամբողջ համակարգ։ Այդ, ինչպես և արդյունավետության ցուցանիշների համակարգը կարելի է դասակարգել տարբեր հատկանիշներով։ Մասնավորապես, տարբերվում են պրոգրեսիվության գլխավոր և օժանդակ ցուցանիշները, եթե օգտագործվում են նոր տեխնիկայի արդյունավետության համապատասխանաբար հիմնական և օժանդակ ցուցա-

նիշները։ Նույն կերպ էլ կարելի է տարբերել նոր տեխնիկայի պրոգրեսիվության ընդհանուր և մասնավոր ցուցանիշները, որոնք համապատասխանում են արդյունավետության ընդհանուր կամ մասնավոր ցուցանիշների օգտագործմանը։ Հասկանալի է, որ պրոգրեսիվության մակարդակն առավել լրիվ ու ճիշտ կարելի է բնութագրել այն դեպքում, եթե օգտագործենք արդյունավետության հիմնական ընդհանուր ցուցանիշը, այսինքն՝ նոր տեխնիկայի արդյունավետության չափանիշը, որի մեջ հաշվի են առնված նոր տեխնիկայի վրա կատարված բոլոր ծախսումները, իսկ որպես էֆեկտ քննության է առնված այն նպատակը, որին հասնելու համար ներդրվում է տվյալ տեխնիկան։

Արտադրական ոլորտում որպես նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետության այդպիսի չափանիշ շատ դեպքերում կարելի է վերցնել նոր տեխնիկայի համար կատարվող ծախսումների ու դրա օգնությամբ շահույթի տարեկան աճից ստացվող էֆեկտի հարաբերությունը։

Նախորդ շարադրանքի մեջ օգտագործեցինք «նախկին տեխնիկա» հասկացությունը. այն համեմատության բազա է և դրա ընտրության հետ է կապված նաև նոր տեխնիկայի պրոգրեսիվության հաշվարկված աստիճանը։ Փաստորեն համեմատության բազայի ընտրությունը պայմանավորվում է այն բանով, թե ինչ տեխնիկայի համեմատությամբ ենք գնահատում նոր տեխնիկայի պրոգրեսիվությունը։ Այդպիսի համեմատություններ կարելի է կատարել՝ ելնելով նոր տեխնիկայի ստեղծման կամ արմատավորման հիմնավորման կոնկրետ դեպքերից։ Մի դեպքում համեմատությունը կարելի է կատարել գործող, մի այլ դեպքում համաշխարհային պրակտիկայի լավագույնի հետ, իսկ առանձին դեպքերում՝ թե՛ մեկի և թե՛ մյուսի, ինչպես նաև նույն պահանջմունքների բավարարման մնացած հնարավոր տարբերակների հետ, որպեսզի հնարավոր լինի ընտրել դրանցից ամենից ավելի նպատակահարմարը։ Այդ նպատակով հարկավոր է հաշվի առնել ոչ միայն նոր տեխնիկայի մասին ինֆորմացիան, այլև այն ձեռք բերելու հնարավորությունը և դրա արմատավորման ու օգտագործման համար համապատասխան պայմանների առկայությունը։

Նկատի ունենալով վերը ասվածը, ինչպես նաև ելնելով «նոր տեխնիկա» հասկացության էությունից, մեր կարծիքով, հարկավոր է տարբերակել բացարձակ և համեմատական նոր տեխնիկան, հետևաբար և՝ բացարձակ ու համեմատական պրոգրեսիվ նոր տեխնիկան։

Առավել ճիշտ կլինի բացարձակ նոր տեխնիկա ասելով հասկանալ այնպիսի նոր միջոցների ստեղծումը, որոնք իրենց ցուցանիշներով գերազանցում են աշխարհում առկա համանման միջոցներին։ Սակայն հաշվի առնելով տեխնիկական և տնտեսական սպառիչ ինֆորմացիա ձեռք բերելու դժվարությունները, երբեմն բացարձակ նոր տեխնիկայի հասկացությունը պայմանականորեն կարելի է կիրառել նաև առանձին վերցրած երկրի համար։ Այդ դեպքում տեխնիկայի պրոգրեսիվությունը կարելի է որոշել տվյալ երկրում գոյություն ունեցող համանման, առավել առաջավոր միջոցների համեմատությամբ, որոնք և համեմատության բազա են դառնում ցուցանիշի օգտագործման ժամանակ։

Նոր տեխնիկայի երկրորդ ձևը տեղական բնույթի առաջընթացն է, երբ կիրառվում են աշխատանքի ավելի առաջավոր և խնայողական միջոցներ։ Դրան է վերաբերում նաև այն դեպքը, երբ արմատավորվում են այնպիսի նոր միջոցներ, որոնք արդեն կիրառվում են համանման այլ օբյեկտներում։ Դրա պատճառը կարող է լինել ավելի պրոգրեսիվ միջոցների անմատչելիությունը, տեխնիկական դժվարությունները, ֆինանսական հնարավորությունների սահմանափակվածությունը, ժամանակի գործոնը և այլն։ Այս ձևն առաջընթաց է տեխնիկատնտեսական ցուցանիշների առկա մակարդակի համեմատությամբ միայն, ուստի և, ի տարբերություն բացարձակ նոր տեխնիկայի, նպատակահարմար է կիրառվող այդպիսի տեխնիկան անվանել «համեմատական նոր տեխնիկա»։

«Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ անհրաժեշտ է համարվում գնահատել թողարկվող մեքենաների, սարքավորումների և այլ միջոցների տեխնիկական ու տնտեսական մակարդակը։ Այս տեսակետից կարևոր է նաև թողարկվող տեխնիկայի պրոգրեսիվության գնահատման մեթոդի կատարելագործումը։

Հայտնի է, որ տվյալ ճյուղում տեխնիկական առաջընթացի և նոր, ավելի կատարյալ ու շահավետ միջոցների երևան գալու հետ մեկտեղ, գործող տեխնիկան աստիճանաբար հնանում է, բարոյապես մաշվում, կորցնում այն առավելությունները, որ ունեցել է արմատավորման ժամանակ։ Այդպիսի տեխնիկայի փոխարինումը նորով կարող է տնտեսական արդյունք ապահովել ժողովրդական տնտեսության համար և այնքան ավելի էական, որքան ավելի շատ է բարոյական մաշվածքը։ Փոխարինման նպատակահարմարությունը որոշելու և դրա իրականացման հերթականությունը սահմանելու համար անհրաժեշտ է գնահատել գործող տեխնիկայի պրոգրեսիվության կորստի աստիճանը։ Այդ բանը կարելի է իրականացնել տեխնիկայի պրոգրեսիվության վերն առաջարկված ցուցանիշի օգնությամբ, դրանում նոր տեխնիկայի արդյունավետության փոխարեն դնելով այն գործող տեխնիկայի արդյունավետությունը, որի պրոգրեսիվությունն է գնահատվում, իսկ նախկին տեխնիկայի փոխարեն վերցնել ճյուղում միջին պայմաններում տվյալ աշխատանքների կատարման արդյունավետությունը։ Վերջինս համեմատության բազա է ընդունվում, որովհետև տեխնիկայի մաշումը և դրա փոխարինման հարցը ծագում է այն պահից միայն, երբ տվյալ տեխնիկայի արդյունավետությունն իջնում է ճյուղի միջին արդյունավետության մակարդակից։

Կարծում ենք, պրոգրեսիվության մակարդակը գնահատելու այստեղ առաջարկված մեթոդը կօգնի նոր տեխնիկայի ստեղծումն ու ներդրումը ճիշտ հիմնավորելուն և դրանով իսկ կնպաստի հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԽԹԱՆՈՒՄԸ

Մ. Գ. ՎԱՍԻԼՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ տնտեսական քաղաքականության բաղկացուցիչ մասը, նրա կարևորագույն ուղղություններից մեկը էկոնոմիկայի կառավարման, սոցիալիստական տնտեսավարման մեխանիզմի կատարելագործումն է։ Ելնելով կուսակցության XXV համագումարի, Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումների դրույթներից, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ընդունեցին «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» որոշումը։

Ծրագրային այդ որոշմամբ նախատեսվում է իրականացնել էկոնոմիկայի պլանային ղեկավարումն է՛լ ավելի կատարելագործելու, արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքները զարգացնելու, աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնությունը բարձրացնելու միջոցառումների համակարգ։ Որոշմամբ խնդիր է դրված զգալիորեն ուժեղացնել տնտեսական լծակների դերը, նյութական խթանումն ուղղակի կախվածության մեջ դնել աշխատանքի արդյունավետությունից ու որակից, պլանային առաջադրանքների կատարումից և տնտեսական գործունեության վերջնական արդյունքներից։ Այդ նպատակով նախատեսված է բարձրացնել աշխատավարձի խթանիչ դերը, կատարելագործել պարգև-հավելավճարների համակարգը, աշխատողների պարգևատրման և արտադրական կոլեկտիվների գործունեության վերջնական արդյունքների փոխպայմանավորվածությունը։

Ինչպես հայտնի է, սոցիալիստական հասարակարգում աշխատողների նյութական շահագրգռությունն իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ իրականացվում է հիմնական և լրացուցիչ աշխատավարձի վճարման միջոցով։ Աշխատավարձի հիմնական մասը կազմում են տարիֆային դրույքներն ու ռոճիկները, իսկ լրացուցիչ մասը՝ պարգև-հավելավճարները։ Վերջինիս տնտեսական անհրաժեշտությունը պայմանավորված է նրանով, որ տարիֆային և հաստիքային դրույքների համակարգը գործնականում լիովին չի կարող կատարել աշխատանքի վարձատրման ֆունկցիան։ Որպես աշխատավարձի լրացուցիչ ձև՝ պարգևը կոչված է խթանելու աշխատանքի և արտադրության որակը բնորոշող ցուցանիշների կատարումն ու գերակատարումը։ Ըստ որում, պարգևատրումն իրականացվում է ինչպես անհատական, այնպես էլ կոլեկտիվ արդյունքների համար։

Կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշման հիման վրա մեր երկրում իրականացված տնտեսական ռեֆորմի պայմաններում զգալիորեն մեծացավ պարգևատրման դերը արտադրության արդյունավետության և որակի խթանման գործում։ Տնտհաշվարկով աշխատող բոլոր ձեռնարկություններում և միավորումներում շահույթի հաշվին ստեղծվում են նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդեր, որոնք միասին կոչվում են խրախուսման ֆոնդեր։

Աշխատողների նյութական խրախուսման նոր համակարգի կիրառման



ավելի քան տասնամյա փորձը վկայում է, որ այն ստեղծում է ավելի մեծ շահագրգռություն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXV համագումարում շեշտվեց, որ «ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման տնտեսական լծակների դերի ուժեղացումը վերջին տարիներս նկատելիորեն բարձրացրել է ձեռնարկությունների և միավորումների շահագրգռությունը արտադրական ռեսուրսների լավագույն օգտագործմամբ և շահութաբերության բարձրացմամբ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 196)։

Նյութական խրախուսման ֆոնդի կազմավորումն ու օգտագործումը կատարելագործելու նպատակով էական միջոցառումներ են իրագործվել հատկապես ընթացիկ հնգամյակում։ Ելնելով արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման խթանումն ուժեղացնելու անհրաժեշտությունից, տասներորդ հնգամյակում մի շարք նոր, սկզբունքային փոփոխություններ կատարվեցին խրախուսման ֆոնդերի կազմավորման կանոնադրության մեջ։ Նախկինում օգտագործվող ֆոնդակազմավորման ցուցանիշներից բացի (իրացված արտադրանքի ծավալը, շահույթը, շահութաբերությունը, աշխատանքի արտադրողականությունը և որակի բարձր կարգ ունեցող արտադրանքի տեսակարար կշիռը) մտցվեցին նաև նոր ցուցանիշներ՝ ֆոնդահատույցը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և արտադրական կարողությունների (նախագծային տեխնիկատնտեսական ցուցանիշների) յուրացումը։ Տասներորդ հնգամյակում խրախուսման ֆոնդերի կազմավորման գլխավոր առանձնահատկությունը դարձան տնտեսական գործունեության գնահատման որակական ցուցանիշները։

Այնուհետև, խրախուսման ֆոնդերի չափերն առավել պայմանավորվեցին կնքված պայմանագրերին ու պատվերներին համապատասխան արտադրանքի մատակարարման առաջադրանքների կատարմամբ։ Ընթացիկ հնգամյակում խրախուսման ֆոնդերի ծավալում միավորումների ու ձեռնարկությունների գործունեության արդյունավետությունն ու որակը բնութագրող ցուցանիշների բաժինը, որն իններորդ հնգամյակում կազմել էր 45—60 տոկոս, պետք է հասնի մինչև 70—80 տոկոսի։ Զգալիորեն մեծացել է նյութական խրախուսման ֆոնդի դերը նաև արտադրանքի տեխնիկական մակարդակի աճը խթանելու գործում։ Այժմ արտադրության ընդհանուր ծավալում որակի բարձր կարգի արտադրանքի տեսակարար կշիռը ֆոնդակազմավորման գլխավոր ցուցանիշներից է։ Խրախուսման ֆոնդերի պլանային ծավալի և դրա փաստացի մեծության վրա ազդում է նաև ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների թողարկման առաջադրանքների կատարումը։

Խրախուսման ֆոնդերի նոր կանոնադրության ընդունումից հետո անցած ժամանակամիջոցում կուտակված փորձը մտորելու զգալի նյութ է տալիս՝ այդ ֆոնդերի կազմավորման և օգտագործման սիստեմի հետագա կատարելագործման համար։ Այսպես. պրակտիկան վկայում է, որ այդ ֆոնդի կազմավորման նոր կարգը, իր էական առավելություններով հանդերձ, հնարավորություն չի ընձեռում լուծելու արտադրական կոլեկտիվների նյութական խթանման արդյունավետության բարձրացման որոշ կարևոր խնդիրներ։ Ամենից առաջ նշենք, որ նյութական խրախուսման ֆոնդի պլանային չափերն անմիջականորեն կապված չեն արտադրամիավորումների գործունեության վերջնական արդյունքները բնութագրող ցուցանիշների մակարդակի և աճի տեմպերի հետ։

Նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման նոր կարգը ըստ ամենայնի չի ապահովում ձեռնարկությունների շահագրգռությունը լարված պլանային առաջադրանքների ստանձնման և կատարման գործում։ Խրախուսման ֆոնդերը հնգամյա պլանում սահմանված են հավասար համամասնությամբ (մեկ աշխատողի հաշվով), որի հետևանքով զգալիորեն թուլանում է այդ ֆոնդերի խթանիչ դերը։ Դա բացատրվում է նրանով, որ, ըստ նյութական խրախուսման ֆոնդակազմավորման այժմյան սիստեմի, ֆոնդի միջոցների բաշխման որոշ հավասարեցում է կատարվում արդյունաբերական ճյուղերի և միավորումների միջև։

Այսպես, նշված տնտեսական օղակների նյութական խրախուսման ֆոնդերի պլանավորումն իրականացվում է՝ ելնելով երկու գործոնից։ Նախ, հաշվի

է առնվում յուրաքանչյուր տնտեսական օղակի ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատավարձի ֆոնդի տեսակարար կշիռը տվյալ օղակի աշխատավարձի ընդհանուր ֆոնդում։ Այնուհետև նկատի է առնվում աշխատողների նշված կատեգորիաների պարգևի առավելագույն չափը (տոկոսներով) նրանց աշխատավարձի նկատմամբ։

Այդ միջոցառումն իրականացվում է արդյունաբերության տարբեր ճյուղերի միջև խրախուսման ֆոնդերի միջոցների չհիմնավորված տարբերությունները վերացնելու համար։ Սակայն այդ դեպքում անհրաժեշտ կապ չի ապահովվում խրախուսման ֆոնդերի և արտադրության արդյունավետության բարձրացման միջև։ Նյութական խրախուսման ֆոնդի հատկացումների նորմատիվներն օգտագործվում են ոչ թե ֆոնդի կազմավորման, այլ արդեն պլանավորված ֆոնդերի վերահաշվարկման համար, եթե պլանային առաջադրանքների նկատմամբ ֆոնդակազմավորման ցուցանիշները գերակատարվում կամ թերակատարվում են։ Այլ խոսքով, նորմատիվների և ֆոնդակազմավորման ցուցանիշների դերը սահմանափակվում է բավական նեղ շրջանակներով։ Հնգամյակի պլանային առաջադրանքների լարվածության աստիճանը և ֆոնդակազմավորման ցուցանիշների մակարդակը նյութական խրախուսման ֆոնդի պլանավորման ժամանակ ինչպես հարկն է չի որոշվում և ցածր պլանային առաջադրանքների գերակատարման միջոցով ֆոնդի լրացուցիչ հատկացումների տեղիք է տրվում։ Այդ պատճառով ձեռնարկությունները հաճախ շահագրգռված չեն լիովին բացահայտելու ներարտադրական ռեզերվները, ուստի և ստանձնում են ցածր պլանային առաջադրանքներ։ Մյուս կողմից, ֆոնդակազմավորման ցուցանիշների փաստացի աճը կամ նվազումը էական ազդեցություն չի գործում նյութական խրախուսման ֆոնդի մեծության վրա, քանի որ լրացուցիչ հատկացումների կամ նվազման տեսակարար կշիռը ֆոնդի ընդհանուր գումարում սովորաբար աննշան է։ Այսպես, հանրապետության մեքենաշինական արդյունաբերության ինը խոշոր արտադրամիավորումներից 8-ում նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման արդյունքների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ պլանային առաջադրանքների գերակատարման համար այդ միավորումների նյութական խրախուսման ֆոնդերի լրացուցիչ հատկացումները 1978 թ. կազմել են փաստացի հատկացված ֆոնդերի ընդհանուր գումարի 0,3—12,9 տոկոսը միայն, իսկ պլանային առաջադրանքների թերակատարման հետևանքով ֆոնդերը նվազել են 2,6—2,9 տոկոսով։ Մինչդեռ նյութական խրախուսման ֆոնդի պլանավորված միջոցները, որոնք կազմում են այդ ֆոնդի ընդհանուր գումարի 87,1—99,7 տոկոսը, գոյացել են անկախ արտադրամիավորումների արտադրության արդյունավետությունը բնութագրող ցուցանիշների աճի կամ նվազման տեմպերից և սահմանվել արտադրամիավորումների ֆինանսական պլաններում որպես շահույթի գումարի մի մաս՝ աշխատողների նյութական խրախուսման նպատակով։

Նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման սիստեմի մասին լրիվ պատկերացում ունենալու համար նպատակահարմար է ցույց տալ նաև այդ ֆոնդի կազմավորման աղբյուրների բացարձակ չափերը։ 1978 թ. «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում նյութական խրախուսման ֆոնդի փաստացի հատկացումների ընդհանուր գումարը կազմել է 2.852 հազար ռուբլի, որի 77,7 տոկոսը՝ պլանային առաջադրանքների կատարման, իսկ 22,3 տոկոսը՝ ֆոնդակազմավորման ցուցանիշների գերակատարման համար։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմել են՝ 1.849 հազար ռուբլի, 94,9 և 5,1 տոկոս, «Հայէլեկտրասարքավորում» [?: «Հայէլեկտրասարքարատ»] միավորումում՝ 901 հազար ռուբլի, 93,6 և 6,4 տոկոս, իսկ «Անդրկովկասկաբել» միավորումում՝ 645 հազար ռուբլի, 87,1 և 12,9 տոկոս։

Ֆոնդակազմավորման այդ մեթոդի կիրառումը որոշ չափով նսեմացնում է նյութական խրախուսման ֆոնդի խթանիչ դերը արտադրական կոլեկտիվների լարված պլանային առաջադրանքների ստանձնման և կատարման գործում։ Ավելին, ֆոնդակազմավորման ցուցանիշները սահմանափակվում են խթանման նեղ շրջանակներով, քանի որ ֆոնդի լրացուցիչ հատկացումները կամ դրա



նվազումը չնչին գումարներ են ֆոնդակազմավորման յուրաքանչյուր ցուցանիշի գերակատարման (թերակատարման) ժամանակ։

Անհրաժեշտ է ուղիներ որոնել նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման համակարգի հետագա կատարելագործման համար։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXV համագումարում ընկ. Ա. Ն. Կոսիգինը նշեց, թե խնդիրն այն է, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում և միավորումում խրախուսման ֆոնդերի չափերը ուղղակի կախման մեջ դրվեն արտադրության ինտենսիվության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, տեխնիկական առաջընթացի գործում ձեռք բերված արդյունքներից։

«Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում տնտեսական խթանման երեք ֆոնդերի, այդ թվում՝ նյութական խրախուսման ֆոնդի, կազմավորման համակարգում կատարել նոր փոփոխություններ։ Ֆոնդակազմավորման նշված ցուցանիշներից բացի, արդյունաբերության առանձին ճյուղերում պետք է օգտագործվեն նաև արտադրության և աշխատանքի այնպիսի որակական ցուցանիշներ, ինչպիսիք են՝ զուտ արտադրանքը, նյութական ռեսուրսների տնտեսումը, հերթափոխության գործակցի բարձրացումը, բնաիրային արտահայտությամբ արտադրանքի աճը։ Արտադրական կոլեկտիվների տնտեսական նախաձեռնության զարգացման և իրավունքների ընդլայնման նպատակով նախատեսվում է այդ ֆոնդը կազմավորել կայուն նորմատիվներով՝ դրանց չափերը շերտավորելով ըստ հնգամյակի տարիների։ Նյութական խրախուսման և աշխատավարձի ֆոնդից վճարվող պարգևները պետք է օգտագործվեն նախ և առաջ որակական ցուցանիշների բարելավումը և արտադրանքի մատակարարման պարտավորությունների կատարումը խրախուսելու նպատակով։

Ներկայումս նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման համակարգի կատարելագործման նպատակով գիտահետազոտական և պրակտիկ աշխատանքները շարունակվում են։ Այսպես, կուսակցության և կառավարության նոր որոշման ընդունումից հետո վերադաս տնտեսական մարմինները միջոցներ են ձեռնարկել արդյունաբերության մեջ զուտ արտադրանքի ցուցանիշի կիրառման վերաբերյալ մեթոդական ցուցումների հրատարակումն արագացնելու, ինչպես նաև որոշելու համար, թե այդ ցուցանիշը որ ճյուղերում և երբ պետք է կիրառվի պլանավորման ու տնտեսական խթանման համակարգում։ Բացի դրանից, այդ ֆոնդի հատկացումների նորմատիվները սահմանվելու են շահույթի (հաշվարկային շահույթի), իսկ արդյունաբերության առանձին ճյուղերում՝ հնգամյակի բազիսային տարվա աշխատավարձի ֆոնդի համեմատ։ Ըստ որում, ֆոնդագոյացման նորմատիվները պետք է հաստատվեն հնգամյակի համար և տարեկան պլաններում չեն վերանայվելու։ Զուտ արտադրանքի ցուցանիշի կիրառումը և ֆոնդագոյացման նորմատիվների նշված համակարգը հնարավորություն կընձեռեն նյութական խրախուսման ֆոնդի աճի դինամիկան ուղղակի կախման մեջ դնելու ֆոնդագոյացման ցուցանիշների մակարդակից ու աճի տեմպերից, որն ըստ ամենայնի կխթանի արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռությունը բարձր պլանային առաջադրանքներ ստանձնելու և կատարելու ասպարեզում։

Փաստերը վկայում են, որ նյութական խրախուսման ֆոնդի գերակշռող մասն օգտագործվում է աշխատողների ընթացիկ պարգևատրման և տարեկան ընդհանուր արդյունքների համար պարգև-հավելավճարներ տալու նպատակով։ Այսպես, հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրամիավորումներում 1976—1978 թթ. նշված երկու ուղղություններով օգտագործվել է նյութական խրախուսման ֆոնդի 38,7 և 37,4 տոկոսը։ Ֆոնդի մնացած միջոցները հատկացվել են հատուկ կարևորություն ունեցող առաջադրանքների կատարման միանվագ խրախուսման (3,7 տոկոս), մրցության մեջ հաղթողների պարգևատրման (4,2 տոկոս), աշխատողների միանվագ նյութական օգնության (6,6 տոկոս) և այլ նպատակներով։

1978 թ. «Հայէլեկտրամեքենա» միավորման խրախուսման ֆոնդի գումա-

րը, 1975 թ. համեմատությամբ, ավելացել է 4,4, «Հայէլեկտրաշարժիչ» միավորմանը՝ 2,4 անգամ, «Հայէլեկտրալույս» միավորմանը՝ 33,4, իսկ «Հայէլեկտրաապարատ» միավորմանը՝ 17,7 տոկոսով: Այդ ֆոնդի միջոցները զգալիորեն մեծացել են նաև հանրապետության արդյունաբերության մյուս ճյուղերի արտադրամիավորումներում ու ձեռնարկություններում: Դրա հետ միասին, նյութական խրախուսման ֆոնդի օգտագործման վերլուծությունը ցույց է տալիս, որ տարեկան արդյունքների համար վճարվող գումարներն ավելի արագ են աճում, քան մյուս նպատակներով տրվող պարգևատրումը, թեև խրախուսման այդ ձևն անմիջականորեն պայմանավորված չէ աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման գործում աշխատողների անձնական ներդրմամբ:

Տարեկան ընդհանուր արդյունքների համար վճարվող պարգևները կոչված են բարձրացնելու աշխատողների նյութական շահագրգռությունն արտադրական կոլեկտիվի աշխատանքի վերջնական արդյունքներում, նպաստելու կադրերի ամրացմանը ձեռնարկություններում, ամրապնդելու արտադրական և աշխատանքային կարգապահությունը: Սակայն, տարեկան արդյունքների համար աշխատողների պարգևատրման գումարի չափը որոշելիս, որպես կանոն, ելակետ են ընդունվում միայն նրանց միջին աշխատավարձը և տվյալ ձեռնարկությունում աշխատանքի անընդհատ ստաժը, թեև ստաժն ինքնին դեռևս պատկերացում չի տալիս տվյալ աշխատողի անձնական ներդրման մասին:

Պրակտիկան ցույց է տալիս, որ հաճախ միավորումների և ձեռնարկությունների եռամսյակային պլանների թերակատարման պատճառով ընթացիկ պարգևատրման միջոցները տարվա ընթացքում կուտակվում և օգտագործվում են տարեկան արդյունքների համար պարգևատրելու նպատակով, որի հետևանքով նյութական խրախուսման ֆոնդի բաշխման նախահաշվում այդ առնչությամբ առանձնացված գումարներն ավելանում են 1,5—2 անգամ: Ակնհայտ է, որ տվյալ պարագայում ըստ աշխատանքի քանակի և որակի վարձատրության սկզբունքը փոխարինվում է պարգևատրման միջոցների մեխանիկական բաշխմամբ:

Տարեկան արդյունքների համար նախատեսված պարգևատրման միջոցների օգտագործումը բարելավելու նպատակով անհրաժեշտ է հաշվի առնել մի շարք հանգամանքներ: Հաճախ ձեռնարկություններում մշակված տարեկան պարգև-հավելավճարների չափերի սանդղակներն ընդգրկում են մեծ քանակությամբ ստաժային խմբեր, որի հետևանքով պարգևատրման նվազագույն և առավելագույն չափերի հարաբերակցությունը կազմում է 1 : 5, 1 : 6 և ավելի: Դրա հետևանքով տարեկան արդյունքների համար տրվող պարգև-հավելավճարների միջոցների գերակշռող մասը բաժին է ընկնում 15—30 տարվա անընդհատ ստաժ ունեցող աշխատողներին, որոնք պարգևներ են ստանում 2—3 ամսվա աշխատավարձի չափով: Մինչդեռ երիտասարդ աշխատողները, որոնց ստաժի տևողությունը, բնականաբար, փոքր է, պարգևատրվում են աննշան չափերով, իսկ դա գործնականում չի նպաստում տեղերում երիտասարդ կադրերի ամրացմանը:

Որպես կանոն, բանվորների միջին ստաժը ցածր է ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների ստաժից, իսկ հոսունությունը՝ բարձր: Ահա թե ինչու ստաժային շատ խմբերի առկայության դեպքում ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների պարգևատրման միջոցների բաժինը մեխանիկորեն ավելանում է, իսկ բանվորներինը՝ նվազում:

Տարեկան արդյունքների համար տրվող պարգև-հավելավճարների խթանիչ դերը ձեռնարկությունների աշխատանքի վերջնական արդյունքների բարելավման, կադրերի հոսունության կրճատման և նրանց նախաձեռնության զարգացման գործում ըստ ամենայնի բարձրացնելու համար նպատակահարմար է մշակել միասնական կանոնադրություն և սահմանել, որ տարեկան արդյունքների համար վճարվող պարգևի նվազագույն չափը փոքր չլինի աշխատողի ամսական դրույքից և չգերազանցի դրա 1,5 չափից:

Ընթացիկ պարգևատրումն ունի մի շարք առավելություններ, քանի որ այն անմիջական կապ է ստեղծում աշխատավարձի աճի և աշխատանքի արդյունքների միջև: Ուստի ընթացիկ պարգևատրմանը նպատակահարմար է հատկացնել նյութական խրախուսման ֆոնդի գերակշռող մասը: Այդ ֆոնդի խթանիչ դերը բարձրացնելու համար կարևոր նշանակություն ունի նաև աշխատողների տարբեր կատեգորիաների՝ բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների և ծառայողների միջև ֆոնդի միջոցների բաշխման ճիշտ հարաբերակցության սահմանումը: Տնտեսավարման նոր պայմաններում բանվորները պարգևատրվում են երկու աղբյուրից՝ աշխատավարձի ֆոնդից և նյութական խրախուսման ֆոնդից, իսկ ինժեներատեխնիկական աշխատողները՝ միայն նյութական խրախուսման ֆոնդից: Այդ պատճառով ընթացիկ պարգևատրման միջոցների գերակշռող մասը վճարվում է ինժեներատեխնիկական աշխատողներին և ծառայողներին, իսկ տարեկան ընդհանուր արդյունքների համար նախատեսված միջոցները՝ բանվորներին: Այսպես, 1976—1978 թթ. «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում ընթացիկ պարգևատրման միջոցների միջին հաշվով 81 տոկոսը վճարվել է ինժեներատեխնիկական աշխատողներին և ծառայողներին, իսկ 17,6 տոկոսը՝ բանվորներին: Նույն ժամանակաշրջանում տարեկան արդյունքների համար նախատեսված միջոցների գերակշռող մասը՝ 72,4 տոկոսը, վճարվել է բանվորներին, իսկ 26,3 տոկոսը՝ ինժեներատեխնիկական աշխատողներին և ծառայողներին:

Քանի որ վերադաս տնտեսական մարմինների հրահանգներում սահմանված չէ, թե որ աղբյուրից, ինչպիսի չափերով և որ ցուցանիշների հիման վրա պետք է պարգևատրել բանվորներին, այդ պատճառով նրանց պարգևատրման համակարգերում դեռևս գոյություն ունեն թերություններ:

Նպատակահարմար է աշխատավարձի ֆոնդից բանվորներին պարգևատրել միայն արտադրանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների կատարման, գերակատարման և անհատական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, քանի որ այդ ցուցանիշների կատարման և գերակատարման շնորհիվ տնտեսվում է աշխատավարձի ֆոնդը: Նյութական խրախուսման ֆոնդից (շահույթից) բանվորներին նպատակահարմար է պարգևատրել հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, այսինքն՝ կենդանի աշխատանքի, հումքի և նյութերի տնտեսման, սարքավորումների ռացիոնալ օգտագործման, արտադրանքի որակի բարելավման, պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման համար, քանի որ դրա շնորհիվ աճում են շահույթի գումարն ու նյութական խրախուսման ֆոնդի միջոցները:

Արտադրության աշխատողների նյութական շահագրգռությունն իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ տարեցտարի բարձրանում է: Այսպես, «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում բանվորների պարգևների տեսակարար կշիռը իրենց հիմնական աշխատավարձի նկատմամբ 1975 թվականին կազմել է 19,3 տոկոս, այդ թվում՝ աշխատավարձի ֆոնդից 10,6, իսկ շահույթից՝ 8,7 տոկոս: 1978 թ. այդ տվյալները կազմել են համապատասխանաբար 35,5, 26 և 9,5: «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորումում բանվորների պարգևների աճի տեմպերն ավելի բարձր են. դրանց տեսակարար կշիռը բանվորների հիմնական աշխատավարձի նկատմամբ 1975 թ. կազմել է 9,2 տոկոս, 1977 թ.՝ 32,2, իսկ 1978 թ.՝ 36,5 տոկոս:

Նյութական խրախուսման ֆոնդից (շահույթից) մեկ աշխատողին ընկնող պարգևը «Հայէլեկտրալույս» միավորումում 1968 թ. կազմել է 151 ռուբլի, 1975 թ.՝ 221, իսկ 1978 թ.՝ 268 ռուբլի, այսինքն՝ տասը տարվա ընթացքում ավելացել է մոտ երկու անգամ: «Հայէլեկտրաշարժիչ» միավորումում մեկ աշխատողին ընկնող պարգևը 1975 թ. կազմել է 75 ռուբլի, 1978 թ.՝ 152 ռուբլի, իսկ «Հայէլեկտրամեքենա» և «Հայէլեկտրաապարատ» միավորումներում համապատասխանաբար՝ 71 և 175, 159 և 248 ռուբլի: Այսպիսով, ոչ մեծ ժամանակահատվածում նյութական խրախուսման ֆոնդից արտադրական կոլեկտիվների մեկ աշխատողին ընկնող պարգևների գումարը կրկնապատկվել է, իսկ առանձին արտադրամիավորումներում՝ եռապատկվել:

Նյութական խրախուսման ֆոնդի կազմավորման և օգտագործման սիստեմի հետագա կատարելագործումն է՛լ ավելի կբարձրացնի այդ ֆոնդի դերը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում:

# ԵՐԳԻ ՃԱՄՓԱՆԵՐԸ

Գ. Գ. ԱՍԱՏՈՒՐՅԱՆ
«Հայհամերգի» գլխավոր դիրեկտոր,
ՀՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ

**ԱՐՎԵՍՏԱԳԵՏԸ ՄԵՐ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ** կյանքի առաջամարտիկն է, իսկ դա նշանակում է, որ միայն գիտական աշխարհայացքով, հասարակական զարգացման օրենքների իմացությամբ զինված լինելու դեպքում նա կարող է հասկանալ ժամանակակից կյանքի բարդ պրոցեսներն ու երևույթները, կերտել մարդկանց սիրտն ու միտքը հուզող գործեր: Վլադիմիր Իլյիչ Լենինը խորիմաստ կերպով նշել է, որ մասսաների գիտակցության զարգացումը, ինչպես միշտ, մնում է մեր ողջ աշխատանքի հիմքը, գլխավոր բովանդակությունը: Ինչպես նշվեց Մոսկվայում կայացած գաղափարախոսական աշխատողների համամիութենական խորհրդակցությունում, մեծ է գրականության ու արվեստի գործիչների ավանդը սովետական մարդու հոգևոր զարգացման, նրա բարոյական կատարելագործման ու գեղագիտական դաստիարակության մարզում: Մեր գրականության և արվեստի զարգացումն ընթանում է ժամանակակից հերոսի՝ կոմունիզմ կառուցողի, խառնվածքի ավելի ու ավելի խոր ու արգասավոր հետազոտման և մեր ժամանակի բարդ, հրատապ պրոբլեմներին համարձակորեն դիմելու ուղիով:

Ժողովրդի գեղագիտական դաստիարակության, նրան արվեստի աշխարհին ակտիվորեն հաղորդակից դարձնելու շնորհակալ գործում մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված «Հայհամերգ» պետական համերգային միավորման կոլեկտիվի առջև: «Հայհամերգի» գործունեության կարևորագույն բնագավառն է ֆիլհարմոնիական ժանրի համերգների կազմակերպումը: Սովետական նշանավոր կոլեկտիվների ու կատարողների ելույթները մեզ մոտ մշտապես ջերմ ընդունելության են արժանանում: Արդեն ավանդական են դարձել կամերային երաժշտության ամենամյա փառատոնը, սիմֆոնիկ համերգների աբոնեմենտային համերգաշարը ուսանողների, երաժշտական դպրոցների սովորողների համար և այլն: Միաժամանակ պայմանագրեր են կնքվել կոլտնտեսությունների ու սովխոզների հետ՝ գյուղի աշխատավորության համար ֆիլհարմոնիական համերգներ կազմակերպելու նպատակով:

Մեր ֆիլհարմոնիական ժանրի համերգներից հիշարժան է սիմֆոնիկ նվագախմբերի փառատոնը՝ նվիրված մեծ Հոկտեմբերի 60-ամյակին: Փառատոնին մասնակցեցին կենտրոնական հեռուստատեսության և համամիութենական ռադիոյի սիմֆոնիկ մեծ նվագախումբը, Վրաստանի, Լատվիայի և Հայաստանի մի շարք սիմֆոնիկ մեծ նվագախմբեր: Քսանհինգ օր շարունակ Արամ Խաչատրյանի անվան մեծ դահլիճի բեմահարթակից հնչում էին Մոցարտի, Բարտոկի, Սիբելիուսի, Հայդնի, Ստրավինսկու, Շտրաուսի, Բրամսի, Վագների, Բեթհովենի, Չայկովսկու, ինչպես և Գ. Սվիրիդովի, Ն. Գաբունիայի, Բ. Կվերաձեի, Ռ. Կարլսոնի, Յու. Իվանովի, Ա. Հարությունյանի, Է. Հովհաննիսյանի և ուրիշների ստեղծագործությունները:

Մեծ հաջողությամբ անցան նաև սովետական կամերային երաժշտության փառատոնները, որոնց, բացի մեր հանրապետության կամերային նվագախմբերից, մասնակցեցին նաև Ռոսկոնցերտի, Տանեևի անվան պետական, Վրաստանի պետական, Գլինկայի անվան, Մոսկվայի, Լենինգրադի ու այլ քաղաքների կամերային նվագախմբերը, ինչպես նաև մենակատարներ՝ երկրի տարբեր քաղաքներից:

Մեր մայրաքաղաքում մեծ իրադարձություն էր երգչախմբային երաժշտության փառատոնը: Մեր հյուրերն էին Լենինգրադի Գլինկայի անվան պետական ակադեմիական կապելլան, ռուսական ակադեմիական պետական երգչախումբը և ճանաչված այլ երգչախմբեր:

Մեր լավագույն կատարողները՝ Ժ. Տեր-



Մերկերյան, Ռ. Ահարոնյան, Մ. Աբրահամյան,
Ս. Նավասարդյան, Վ. Ստամբոլցյան, Կ. Օ-
հանյան, Մ. Աբովյան և ուրիշներ, շատ բան
են արել և անում են ո՛չ միայն իրենց երգա-
ցանկը հարստացնելու, կատարողական ար-
վեստը կատարելագործելու նպատակով, այլև
դասական երաժշտության, սովետական կոմ-
պոզիտորների լավագույն ստեղծագործություն-
ների պրոպագանդմանը զուգընթաց տարա-
ծում են հայկական երգն ու երաժշտությունը:
Օմսկ, Ուլյանովսկ, Ուֆա, Կուրգան, Չելյա-
բինսկ, Բառնաուլ, Նովգորոդ, Կրասնոդար,
Ալմա-Աթա, Իրկուտսկ, Յակուտսկ, Կեմերովո,
Տոմսկ, Մուրմանսկ, Աստրախան, Մագադան,
Վլադիվոստոկ... ահա «Հայհամերգի» կոլեկ-
տիվների շրջագայությունների աշխարհագրու-
թյունը:

Ֆիլհարմոնիական ժանրում իր որույն տեղն
ունի մեր կամերային երաժշտության տունը,
ուր ելույթներով հանդես են եկել հռչակավոր ու
սիրված շատ երաժիշտներ:

Այն ողջ լավը, որ կատարվել է ֆիլհարմո-
նիական ժանրի պրոպագանդման ասպարե-
զում, պարտավորեցնում է առավել պատաս-
խանատու և ուշադիր լինել, քանզի գնալով
բարձրանում են մեր օրերի ունկնդրի ճաշակը,
կուլտուրական մակարդակը և պահանջները:

**ԱՇԽԱՏԱՎՈՐ ՄԱՐԴՈՒ ՍՐՏԻՑ Է ԲԽՈՒՄ**
ժողովրդական երգը, որի պրոպագանդմանն է
նվիրել իր ողջ գործունեությունը Թաթուլ Ալ-
թունյանի անվան երգի-պարի վաստակավոր
անսամբլը: Քառասնամյա կոլեկտիվին այժմ
ղեկավարում է հանրապետության ժողովրդա-
կան արտիստուհի Է. Ծատուրյանը: Գլխավոր
բալետմայստեր, արվեստի վաստակավոր գոր-
ծիչ Ա. Ղարիբյանի հետ մեկտեղ նրանք կարճ
ժամանակամիջոցում կարողացան պատրաս-
տել նոր ծրագիր և հուսախաբ չարին հանդի-
սատեսին: Ծրագիրը հայկական ժողովրդական
երգերի ու պարերի մի գեղեցիկ ընտրանի է:

Թե՛ Միությունում և թե արտասահմանում
լայն ճանաչում, մեծ համարում ունի Հայաս-
տանի պարի պետական անսամբլը: Անսամբլի
գեղարվեստական ղեկավար, ՀՍՍՀ ժողովըր-
դական արտիստ Վ. Խանամիրյանը կարողա-
ցել է հայկական պարարվեստի լավագույն ըն-
մուշների հիման վրա բեմադրել նոր, արտա-
հայտիչ պարեր: Պարի անսամբլը պրոֆեսիո-
նալ կուռ կոլեկտիվ է՝ ստեղծագործական
թռիչքներով լի: Անսամբլին հատկապես հա-
ջողվում են թեմատիկ պարերը, ժողովրդական
նուրբ հումորով լեցուն համարները:

Դոնի Ռոստովում, Վիլնյուսում, Մոսկվայում,
Լենինգրադում անսամբլի հյուրախաղերը նրա
ստեղծագործական մեծ հաջողությունների վառ
ապացույցն էին: Պարի պետական անսամբլը
վերջերս ելույթներով հանդես եկավ Ֆրանսիա-
յում, Դանիայում և այլուր: Առաջին անգամը
չէ, որ հայ պարողները հիացնում են արտա-
սահմանյան հանդիսատեսին: Արժանի հաջո-
ղությունը նրանց ուղեկցեց նաև այս անգամ:

Ազգային երաժշտական արվեստի պրոպա-
գանդման գործում զգալի ավանդ ունի Հա-
յաստանի ժողովրդական գործիքների պետա-
կան նվագախումբը, որի գեղարվեստական
ղեկավարն է Հայաստանի լենինյան կոմերիտ-
միության մրցանակի դափնեկիր Կ. Միրզոյա-
նը: Նվագախումբն ունկնդիրներին ներկայաց-
նում է հայկական հին երգերի մի ծաղկեփունջ,
մեր գուսանների հին ու նոր շատ գործեր, գոր-
ծիքավորել և հնչեցրել է մոռացված ստեղծա-
գործություններ: Բեմահարթակից կրկին հըն-
չեցին բլուլը, պկուն, պարկապզուկը, ուդը...

Ժողովրդական երգի ու պարի շատ խմբեր,
կոլեկտիվներ, անհատ կատարողներ կան մեր
միավորումում: Հիշենք «Մեղեդի» (ղեկավար՝
վաստակավոր արտիստ Ս. Սիմոնյան) ան-
սամբլը, որը հետևողականորեն պրոպագան-
դում է մեր երգն ու պարը:

Այսօր առանց էստրադայի դժվար է պատ-
կերացնել մեր համերգները: Էստրադային
խմբեր, վոկալ-գործիքային անսամբլներ մեզ
մոտ քիչ չեն ստեղծվում, և դրանց մի մասը ար-
ժանի հաջողության է հասել: Հիշենք, օրինակ,
Գ. Մինասյանի ղեկավարած վոկալ-գործիքա-
յին անսամբլը: Այն մեծ համարում ունի՝ շնոր-
հիվ երգչի լայն դիապազոնի, երգարվեստի,
արտիստականության և ընտրված երգացանկի:
Գ. Մինասյանի համերգային ծրագրերի հիմքը
հայկական ժողովրդական երգերն են, հայ կոմ-
պոզիտորների գործերը: Չի կարելի չնշել նաև
մեր մյուս՝ «Արմինա», «Էրեբունի», «Առա-
գաստ» վոկալ-գործիքային էստրադային խըմ-
բերը:

«Հայհամերգ» հյուրախաղային-համերգային
միավորման մեջ մտնող ստեղծագործական
պրոֆեսիոնալ կոլեկտիվներն ու անհատ կա-
տարողներն իրենց կարևոր խնդիրն են հա-
մարում ամեն կերպ նպաստել գյուղական բը-
նակչության կուլտուրական սպասարկման բա-
րելավմանը: Մեզ մոտ միշտ էլ ուշադրության
կենտրոնում է ամառային դաշտային աշխա-
տանքներին մասնակցող աշխատավորների
սպասարկումը: Այդ նպատակով կազմված հա-
տուկ գրաֆիկի համաձայն գյուղական համա-
րյա բոլոր շրջաններում, ցերեկը՝ դաշտում, ե-
րեկոյան՝ ակումբներում կամ մշակույթի տնե-
րում ելույթներ էին ունենում մեր գեղարվես-
տական խմբերը, կոլեկտիվները, մենակատար-
ները: Արդեն չորրորդ տարին է, ինչ գյուղա-
կան շրջկենտրոններում անց են կացվում «Աշ-

խատանքի ու արվեստի» փառատոներ: Համերգային բրիգադների ու մենակատարների համար ավանդույթ է դարձել մասնակցությունը «Բերքի տոներին» և «Փառք աշխատանքին» ամենամյա փառատոներին: Ով գեթ մեկ անգամ եղել է ոսկե աշնան այդ ներկայացումներին, չի կարող մոռանալ դրանք: Ծրագրում հատուկ համարներ են նախատեսվում՝ նվիրված սոցիալիստական դաշտերի հերոսներին, հողին, հայրենիքին, բնությանը, աշխատանքին:

Գյուղի աշխատավորության կուլտուրական սպասարկման գործը բարելավելու նպատակով «Հայհամերգի» նախաձեռնությամբ հանրապետության մի շարք կոլտնտեսություններում բացվել են միավորման մասնաճյուղեր: Նրանց համար ելույթ են ունենում ինչպես մեր հանրապետության, նույնպես և Հայաստան ժամանած պրոֆեսիոնալ երաժշտական խմբերն ու մենակատարները: Մեր մասնագետները մշտապես օգնում են գյուղական վայրերի գեղարվեստական ինքնագործունեության խմբերին՝ նրանց մակարդակը բարձրացնելու, համերգային ծրագրերը նորացնելու և հարստացնելու նպատակով:

Գյուղի աշխատավորության համար կազմակերպված համերգներից հիշարժան են մանկան միջազգային տարվան նվիրված փառատոնը Սևանի, Շամշադինի, Ստեփանավանի, Թումանյանի, Սպիտակի, Իջևանի, Դիլիջանի, Վարդենիսի, Մարտունու և Կամոյի շրջաններում, բազմաթիվ կոլտնտեսություններում ու սովխոզներում: Փառատոնը, որն սկսվեց մայիսին և շարունակվեց մինչև սեպտեմբերի վերջը, մի իսկական տոնահանդես էր հողի աշխատավորության համար:

Անմոռաց էին արվեստի վարպետների հանդիպումները Ղափանի շրջանի աշխատավորության հետ: Այս տոնահանդեսին մասնակցում էին նաև Ղափանի մարզիկները, երաժշտական ուսումնարանի, երաժշտական, հանրակրթական դպրոցների համահավաք երգչախումբը, փողային նվագախմբերը: Արվեստի վարպետները հանդես եկան նաև Քաջարանի մշակույթի պալատում, շրջանի մի շարք գյուղերում:

Օգտվելով առիթից, կուզենայի անդրադառնալ նաև հեռավոր շրջանների ու գյուղերի աշխատավորների հետ մեր կապի ամրապնդմանը խոչընդոտող մի շարք հանգամանքների: Ամենից ավելի դժվարությունների ենք հանդիպում... տրանսպորտի խնդրում: Հայտարարված համերգը գյուղում կամ յայլաղում կարող է չկայանալ (այդպիսի դեպքեր եղել են) համապատասխան տրանսպորտ չունենալու պատճառով: Մեր մեքենաները հին են, անսարք, երբեմն պակասում են և տեխնիկական մասերը, իսկ ճանապարհները լեռնային են, ավտոբուսների համար դժվարանցանելի:

Տարրական հարմարություններից զուրկ են մեր գյուղական մի շարք ակումբներ. իրենց անհրապույր տեսքով՝ անբավարար լուսավորվածությամբ, կոտրված աթոռներով ու կիսամութ բեմով, դրանք, մեղմ ասած, չեն նպաստում համերգային մթնոլորտի ստեղծմանը: Եվ ինչ-որ տեղ խունանում են պարի գույները, ինչ-որ տեղ մեր երգը դժվարությամբ է ճանապարհ բացում իր համար դեպի հանդիսատեսի սիրտը:

Գեղեցիկ ազդ ունենալը ևս եղել և մնում է մեր երազանքը: Համերգը ներկայացնելու, ունկնդրին, հանդիսատեսին դրան նախապատրաստելու և տրամադրելու միջոցներից մեկն է ազդը, որի պատշաճ տպագրումը ևս էական նշանակություն ունի:

Համերգը մարդուն պատճառում է գեղագիտական հաճույք, լիցքավորում նրա հուզաշխարհը: Լավ համերգը երկար է մնում հիշողության մեջ: Հնարավորություն ստեղծել այդ համերգների մակարդակը բարձրացնելու, երաժշտական արվեստը պրոպագանդելու համար՝ ահա թե ինչը պետք է դառնա հասարակական կազմակերպությունների, կուլտուրայի մարմինների առաջնահերթ խնդիրը:

Արվեստի ճամփաները նոր հանդիպումներ են բերում մեր արտիստներին: Մեծ հաջողությամբ անցան «Առագաստ» վոկալ-գործիքային անսամբլի ելույթները հեռավոր արևելքի քաղաքներում: Գարնանը «Էրեբունի» վոկալ-գործիքային անսամբլը հանդես եկավ Սիբիրի տարբեր քաղաքներում ու բանավաններում: Չերեմխովո քաղաքի հանքափորները, Կրասնոյարսկի հիդրոշինարարները, Նովոսիբիրսկի գիտնականները, Նորիլսկի համամիութենական հարվածային կառույցի կոմերիտական շինարարները, բանվորներն ու ինժեներները ծափերով դիմավորեցին հայկական երգերը:

Մոլդավիայում արտակարգ ոգևորությամբ անցավ «Մերցիշոր» ավանդական տոնահանդեսը, որին մասնակցեց «Արմինա» վոկալ-գործիքային անսամբլը. կոլեկտիվն արժանացավ փառատոնի մրցանակին և Մոլդավական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության պատվոգրին: Մեր միավորումում նոր է մասսայական միջոցառումների և հատուկ համերգների բաժինը, որի նպատակն է հարստացնել համերգների թեմատիկան, նոր թափ հաղորդել մասսայական միջոցառումներին: Այդ բաժնի գործունեությանը լայն ճանաչում բերեցին «Արարատյան դաշտի մեղեդիները» էստրադային համերգները Մոսկվայի էստրադայի կենտրոնական թատրոնում: Բոլոր համերգներին մասնակցում և նվագակցում էր Մոսկվայի պետական էստրադային թատրոնի նվագախումբը՝ ՌՍՖՍՀ վաստակավոր արտիստ Վ. Ստարոստինի ղեկավարությամբ: Ռ. Ամիրխանյանի, Մ. Մավիսակալյանի, Մ. Վարդազարյանի, Յու. Ղազարյանի և մեր մյուս երիտասարդ կոմպոզիտորների նոր երգերը ջերմությամբ ընդունվեցին երիտասարդ երգիչների կատարմամբ:

Ա. Խաչատրյանի անվան մեծ համերգասրահը, կարելի է ասել, որոշում է մեր միավորման դեմքը: Այստեղ կազմակերպված մի շարք համերգներ աչքի են ընկնում իրենց թեմատիկ բազմազանությամբ: Դրանցից, օրինակ, «Շնորհավոր տոնդ, զինվո՛ր» համերգը նվիրված էր մեր զինված ուժերին: «Հայոց երգի ճամփաներով» համերգը հայ արվեստի վետերանների մի յուրօրինակ հաշվետվություն էր: Պրոպագանդելով հայ ազգային արվեստը՝ մեր համերգներից մեկը նվիրել էինք դուդուկին, նրա վարպետներին: Լենինականից, Կիրովականից, Հոկտեմբերյանից, Ստեփանակերտից, Մասիսից մի հարկի տակ էին հավաքվել հայ դուդուկի լավագույն վարպետները, որոնք ցուցադրեցին այդ գործիքի անսպառ հնարավորությունները: Ջերմորեն ընդունվեցին «Մի քիչ ծիծաղենք, մի քիչ ուրախանանք», «Ախ, կանա՛յք, կանա՛յք», «Ծիծաղելը խստիվ արգելվում է», «Ուրախ ալիք» երգիծական նոր ծրագրերը: «Հաղթանակի սալյուտ», «Էստրադայում են դափնեկիրները», «Դեբյուտ», «Ողջույն, մայի՛ս», «Երիտասարդ ձայներ», «Մեր սուրը փառքով դրեցինք պատյան», «Կրակոտ պարի հրավեր», «Ռեյու», «Իմ սիրո օրը» խորագրերով համերգները միշտ էլ սիրով են ընդունվում:

Թեմատիկ համերգներ են տրվում մեր արտադրության առաջավորների, կոլտնտեսային դաշտերի հերոսների համար: Դրանցից մեկը կոչվում էր «Ձեր պատվերով»: Բաժնի աշխատակիցները եղան Երևանի մետրոշինարարների մոտ, ծանոթացան առաջավորների հետ և համերգ տվեցին նրանց պատվերով: Հանդես եկան ջութակահարների ունիսոնը՝ ՀՍՍՀ ժողովրդական արտիստ Գ. Անեմյանի ղեկավարությամբ, ՍՍՀՄ ժողովրդական արտիստ, կոմպոզիտոր Ա. Հարությունյանը, երգիչներ Ռ. Մաթևոսյանը, Մ. Աբովյանը, Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի բալետի արտիստները:

Հիշում եմ 1958 թվականը, հանրապետական մարզադաշտում կազմակերպված առաջին թատերականացված համերգ-ներկայացումը՝ «Ոսկե աշուն» խորագրով: Ներկա էին 25 հազարից ավելի հանդիսատեսներ: Տարիներ անցան, հարստացավ մասսայական միջոցառումների բովանդակությունը, դրանք դարձան առավել նպատակասլաց: «Ոսկե աշնան» հյուրերի անվանացանկն ավելի ընդարձակվեց. մեզ մոտ հյուրընկալվել են սովետական արվեստի ճանաչված վարպետներ Ն. Չերկասովը, Բ. Անդրեևը, Լ. Ռուսլանովան, Ս. Բոնդարչուկը, Ի. Սկոբցևան, Ա. Լարիոնովան, Ի. Սմոկտունովսկին, Լ. Լյադովան, Շ. Ալեքպերովան, Դ. Գնատյուկը, Լ. Զիկինան, Գ. Խազանովը և շատ ուրիշներ, ինչպես նաև գեղարվեստական կոլեկտիվներ Մոսկվայից, Լենինգրադից, Տալինից, Ռիգայից, Տաշքենդից, Ալմա-Աթայից, Դուշամբեից, Ֆրունզեից, Բաքվից, Վիլնյուսից, մեր հայրենիքի բոլոր ծայրերից, արտասահմանյան նշանավոր խմբեր, մենակատարներ:

Նպատակը ո՛չ միայն միասնական ընտանիքում ապրող եղբայր ժողովուրդների արվեստին հայ հանդիսատեսին ծանոթացնելն է, այլև այսօրվա երաժշտական կատարողական նվաճումներին հաղորդակից դարձնելը, կյանքի այն մեծ առաջընթացը ցուցադրելը, որի շնորհիվ ծաղկում ու բարգավաճում է սովետական արվեստը: Դրանք իրոք ժողովրդական տոնահանդեսներ են, որոնք վերածվում են արվեստի ու բարեկամության իսկական ցույցի:

«Հրազդան» կենտրոնական մարզադաշտը հրաշալի նվեր էր ո՛չ միայն սպորտի, այլև արվեստի սիրահարների համար: Տոնահանդեսների օրերին տասնյակ հազարավոր հանդիսատեսներ ափե-ափ հեղեղում են դեպի մարզադաշտ տանող ուղիները... Ուրախության, ցնծության մի վիթխարի հանդեսի են վերածվում արվեստի տոները «Հրազդանում»:

«Միասնական ընտանիքում». այսպես էր կոչվում այնտեղ կազմակերպված ներկայացում-համերգներից մեկը, որին հրավիրված էին սովետական բոլոր հանրապետությունների արվեստի ներկայացուցիչներ: Նրանք այնտեղ ցուցադրում էին ո՛չ միայն ազգային արվեստը, այլև իրենց հանրապետությունների դեմքը, առօրյան: Լենինյան ազգային քաղաքականության վառ ցույցի վերածվեցին այդ տոնահանդեսները, որոնց մասնակցեցին 2000-ից ավելի արտիստներ, մարզիկներ, զինվորներ, պիոներ-պրոցականներ: Բարեկամության վառ ու կենսահորդ տոնի վերածվեցին Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միանալու 150-ամյա հանդիսությունները: Դրա եզրափակիչ ակորդը եղավ «Հրազդան» կենտրոնական մարզադաշտում տեղի ունեցած ժողովրդական մեծ տոնահանդեսը, որը կրում էր «Հավերժ միասին» խորագիրը: Տոնական մեծ ներկայացումը վերածվեց ռուս և հայ ժողովուրդների, մեր ամբողջ բազմազգ երկրի ժողովուրդների իսկական եղբայրության փառատոնի:

Մեզ մոտ միշտ էլ ուշադրության կենտրոնում է մանուկների գեղագիտական դաստիարակությունը: Այս առիթով սիրով ենք հիշում «դպրոցականի ֆիլհարմոնիայի» ամեն մի համերգաշրջան: Տասնվեց տարեկան է «դպրոցականի ֆիլհարմոնիան», որի հիմնական հանդիսասրահը եղել և մնում է Արամ Խաչատրյանի անվան մեծ համերգասրահը: Այստեղ ամեն անգամ մոտ 1600 դպրոցականներ հանդիպում են ունենում մեծ արվեստի հետ, կազմակերպվում են համերգ-զրույցներ, համերգ-բանավեճեր, օպերային ներկայացումների հատվածների ցուցադրում, գրական-երաժշտական կոմպոզիցիաներ, համերգ-հանդիպումներ կոմպոզիտորների, գրողների, նկարիչների հետ: Շատ բան է արվում նոր տաղանդների հայտաբերման նպատակով. չկա որևէ դպրոց, ուսումնարան, մանկական այգի, պիոներների և դպրոցականների պալատ, որի հետ ստեղծագործական սերտ կապեր հաստատած չլինեն «դպրոցականի ֆիլհարմոնիայի» աշխատողները:

Մանուկ հանդիսատեսի համար կազմակերպվում են բարեկամության համերգներ, հրավիրվում պատանի կատարողներ երկրի այլ քաղաքներից: Մանկական տարվա եզրափակիչ ակորդը եղավ «Թող լինի միշտ արևը» համերգ-ներկայացումը, որը տեղի ունեցավ սեպտեմբերի վերջին, Երևանի հանրապետական մարզադաշտում:

Սովետական Հայաստանի աշխատողները պատրաստվում են նշելու Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակը: Փառապանծ տարելիցի օրերին հայ արվեստի վարպետների կատարմամբ համերգներ տեղի կունենան Մոսկվայում ու Լենինգրադում, Ռիգայում ու Քիշինևում, Թբիլիսիում ու Կիևում, Բաքվում ու Մինսկում: Երիտասարդ ձայներ, նոր տաղանդներ, նոր ստեղծագործություններ՝ սրանք են լինելու այս համերգների նշանաբանը: Նախատեսվում են բազմաթիվ այլ միջոցառումներ: Նոյեմբերյանում կկազմակերպվի «Կարմիր կամուրջը բարեկամության կամուրջ է» մեծ տոնահանդեսը՝ անդրկովկասյան երեք հանրապետությունների արվեստի վարպետների մասնակցությամբ:

Փառատոներ կկազմակերպվեն հանրապետության բոլոր շրջաններում, կանցկացվեն թեմատիկ համերգաշարեր, մրցույթ-համերգներ, ինտերնացիոնալ հավաք-համերգներ: Սովետական Հայաստանի 60-ամյակի օրերին մեր մարզադաշտերում համերգահանդեսների միջոցով հանդիսատեսին կներկայացվի Հայաստան լեռնաշխարհը՝ իր անցյալով, ներկայով ու գալիքով: «Փառք քեզ, միշտ փառք, վերածնված Հայաստան». մեր հանրապետության հիմնից առնված այս տողերը կլինեն հոբելյանական մեր բոլոր համերգների, բոլոր տոնահանդեսների ու փառատոների բնաբանը:

Համերգ... համերգներ են տեղի ունենում ամեն օր: Պահպանել այդ համերգների գեղարվեստական բարձր մակարդակը, հանդիսատեսի բարեհաճ վերաբերմունքը. սրանք հարցեր են, որ մշտապես մեր ուշադրության կենտրոնում են: Շատ կարևոր է հանդիսատեսի համար նոր անուններ գտնելը, նոր որոնումները:

«Հայհամերգը» վերջին տարիներս իր դռները լայնորեն բացել է ստեղծագործող երիտասարդության առջև: Մեր բեմահարթակներում ավելի հաճախ են երևում երիտասարդ երգիչներ, կատարողներ, ասմունքողներ, ինքնատիպ ժանրերի վարպետներ: Պարարվեստի ուսումնարանի շնորհալի սաները, գեղարվեստական ինքնագործունեության շատ մասնակիցներ իրենց առաջին լուրջ քայլերն են անում մեր բեմում: Նրանց հետ աշխատում են փորձառու ռեժիսորներ, բալետմայստերներ, խմբավարներ:

«Հայհամերգը» դեռ շատ հանելի պահեր կպարգևի իր բազմազահար երկրպագուներին: Հարուստ են մեր պլանները ու ծրագրերը: Բայց կարևորը դրանց իրականացումն է, որի համար ջանք չեն խնայի մեր միավորման բոլոր աշխատողները, ստեղծագործական ողջ կոլեկտիվը:

«Հայհամերգի» բովանդակ գործունեության ծավալման համար ծրագրային նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը, որը տոգորված է նաև արվեստի աշխատողների նկատմամբ կուսակցական հոգատարության ու պահանջկոտության ոգով:

---



# ՀԻՄՆ ՄԱՐԴՈՒ, ՀԱՅՐԵՆԻՔԻ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ

Հ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐԻ համամարդկային բարդ պրոբլեմները, հասարակական զարգացման բարդ ընթացքը, բնականորեն, շիկացնում են հասարակական-քաղաքական, գաղափարական մթնոլորտը, գրականությունը տոգորում խոր դրամատիզմով, թելադրում նոր խնդիրներ, սահմանում իրականության գեղարվեստական յուրացման և իմաստավորման նոր չափանիշներ: Կոմունիստական-հումանիստական գեղագիտական իդեալը դառնում է մեր դարաշրջանի ոգին, սոցիալիստական ռեալիզմի սնման, հարստացման անսպառ ակունքը:

Զարգացած սոցիալիզմի փուլում իրավ մեծ է գրող-սուբյեկտի դերը, նախ՝ որպես հեղափոխական, սոցիալիստական իրականությունն արտացոլող, ապա՝ սոցիալիստական-հումանիստական զգացումներ հարուցող ու կազմավորող հզոր գործոն:

Այդ ճանապարհով է ընթանում Հրանտ Մաթևոսյանը, որպես սովետահայ արձակի 60—70-ական թվականների փայլատակումներից մեկը՝ բռնկած պատմական ճշմարտության, սոցիալիստական կյանքի հաստատման հրով, տոգորված մարդու, հայրենիքի, խաղաղության, բարու, գեղեցկի, ճշմարտության պաթոսով:

**Ծառերը** (1978) Հրանտ Մաթևոսյանի երկրորդ գիրքն է (առաջինը՝ **Օգոստոսը**, տպագրվել է 1967-ին): Այստեղ զետեղված վիպակները նոր չեն, տպագրվել են գրական մամուլում: Մաթևոսյանի ստեղծագործությունը լայն ճանաչում է գտել ո՛չ միայն Հայաստանում, այլև Սովետական Միությունում, արտասահմանում: Նրա երկերը լույս են տեսել ՍՍՀՄ ժողովուրդների մի շարք լեզուներով, նաև՝ անգլերեն, իսպաներեն, նորվեգերեն, գերմաներեն, ճապոներեն, լեհերեն, հունգարերեն, չեխերեն, սլովակերեն, բուլղարերեն:

Հենց սկզբից, դեռևս 1961-ին, **Անհիձորը** ակնարկով Հրանտ Մաթևոսյանը մեծ հետաքրքրություն է հարուցում գրական աշխարհում: Նրա ստեղծագործության մեջ Անդրեյ Բիտովը տեսնում է տոլստոյական ապշեցուցիչ ուժ. ամեն տողը կենդանի է, վերջին տառը՝ ծնված սիրուց ու սիրով, իսկ նրա Ծմակուտ հայրենի օջախը՝ գրականության հրաշքներից:

**Կենդանին և մեռյալը** վիպակում (առաջին անգամ լույս է տեսել «Սովետական գրականություն» ամսագրում **Խումհար** վերնագրով, 1970, № 9) կենսական հազարավոր թելերով օրգանապես միահյուսվում են գյուղն ու քաղաքը, Մոսկվան ու Ծմակուտը. եթե գրողի մանկության, պատանեկության տարիներն անցել են հայրենի գյուղում, հայրենի բնությունն իր խոր դրոշմն է դրել նրա ստեղծագործական երևակայության, հուզաշխարհի վրա, ձևավորել նրա գեղարվեստական մտածողության շատ էական առանձնահատկություններ, ստեղծել հայրենի օջախի հարազատ, կենդանի պատկերների, կերպարների մի բազմերանգ բույլ, ապա մայրաքաղաքը՝ Մոսկվան, որտեղ սովորել է նա, առավել զարգացրել, կազմավորել է նրա գեղագիտական-փիլիսոփայական հայացքները, հաղորդել դարաշրջանի բարդ իրադարձություններում կողմնորոշվելու առավել մեծ ուժ, խիզախելու անկոտրում կամք:

**Կենդանին և մեռյալը** վիպակն սկսվում է կապիտալի աշխարհը խորհրդանշող **Գիշերը** իտալական կինոնկարի պատկերով: Մեծ քաղաք է, քաղաքում տիրականորեն իշխող ատոմային սնկի նման շինությունը՝ որպես դարաշրջանի ողբերգության սֆինքս-պատկեր: Քաղաքի մեծ հիվանդանոցում մեռնում է բանաստեղծը: Նրան այցելում են կինը, բանաստեղծի բանաստեղծ ընկերը՝ կնոջ հետ: Այստեղ ամեն ինչ արտասովոր է: Յուրաքանչյուր անկյունից զգացվում է մահվան շունչը: «Եվ ի՞նչ են ասում, և ո՞մ են հարկավոր մեր գրած տողերի շարանները»,— մտորում էր հիվանդանոցից հազիվ դուրս պրծած բանաստեղծ Մարչելոն: Իսկ կինը՝ Ժաննան, սեղմված հիվանդանոցի պատին, «լաց էր լինում այս հիվանդ աշխարհի համար»:

Իտալական նեոռեալիզմի դիրքերից ստեղծ-

րական, բարին խորհրդանշող՝ հայրական տոհմի կերպարները:

«Քո պապ ու իմ հեր Իշխանը,— ասում է մայրը,— արնագույն պուճուր մի ձի ուներ, էնքան պուճուր, որ բանակ չէին տարել— ասում է, չարությունից պայթում էր՝ որ մի ձի իրենից առաջ էր ընկնում: Հնում էր, թոքերը շխկշխկում էին, քթերից կրակ էր թռչում— իր պուճուր տեղով տրաքում էր չարությունից: Քո պապի պահած շունն էլ պիտի էդպես լիներ, նրա զավակն էլ ու չափարի բանջարն էլ ու պատի օձն էլ պիտի էդպես լինեին»: Եվ ապա՝ «Լավությունն բոլորին քո պապ ու իմ պատրոն Ավետիքն է արել: Ուրիշի համար՝ մեղու, պատվաստ, կացնի կոթ, ուրիշի համար՝ սել, ամուսնացած եղբոր փոխարեն՝ բանակ, եղբոր բանտարկված տղայի համար՝ կառավարչի մոտ կոռի— նա ասածս լավությունն էր էս ամբողջ գյուղին... խիղճ, խղճի վրա խիղճ, խղճի վրա խիղճ, ներսից խիղճ, դրսից խիղճ...»:

Որդու բախտով տագնապած մայրը թեև մի պահ տատանվում է, նախընտրում իր հոր՝ Իշխանի գործուն, անհանգիստ և վրիժառու ոգու ժառանգումը, սակայն մի պահ: Իր մեջ խտացնելով ժողովրդի իմաստությունը, հեռատեսությունը, կենսափիլիսոփայությունը, մայրը՝ մի ներքին հզոր մղումով, տառապանքով ու զարմանքով հայտնագործում է կենսական մի մեծ ճշմարտություն: «Քո պապ Ավետիքի քնա՞ծ, դանդա՞ղ, բարի՞, էն էլ ես ինչ իմանամ բարի՞ թե վախկոտ, չեղած մի պուտ արյունը էդ ո՞նց կարողացավ կտրել մերանի պես քո մեջ Իշխանի տված էն կատաղի վարար արյունը, անդադար, խաբեբա, շողոմքոր, համարձակ, անքուն, վրիժառու, զնգուն-զվարթ-ավազակ առնատուի արյունը քո մեջ էդ ո՞նց կտրվեց Ավետիքի քնած մի պուտ արյունից»:

Այդպիսի եզրահանգումը գրողի կենսափիլիսոփայության վեհ իդեալն է: Նա ունի այն խորին համոզումը, որ մեր կյանքի թերությունները կրում են ժամանակավոր բնույթ, հատուկ չեն մեր հասարակությանը: Իրականության մեջ առերևույթ հզոր չարիքն ու չարագործը, ի վերջո, մատնվելու է պարտության, ի վերջո, հաղթանակելու են ավանդական սիրո, բարու, խաղաղության առերևույթ թույլ, բայց իրապես կենսունակ հզոր ուժերը, հաղթանակելու է, ուրեմն, ժողովրդի՝ հազարամյակներ փայփայած հումանիստական-խաղաղասիրական ամենակարող իդեալը:

Ուշագրավ է, որ տակավին 1907 թվականին Վահան Տերյանը գրել է. «Սոցիալիզմը— դա անհատի անսահման ազատությունն է, անհատի, որը սիրում է ուրիշներին, ինքն իրեն զոհաբերում և դրանով իսկ հաստատում է իրեն... Եթե սոցիալիզմը անհատին տար միմիայն նյութական ապահովություն, ես կթքեի նրա վրա, ես երբևէ չէի դառնա սոցիալիստ» (Վ. Տերյան, Երկեր, Ե., 1956, էջ 668): Կոմունիստ բանաստեղծը, **մ**արդու հուզաշխարհի նուրբ քնարերգակը, մարդկային-հումանիստականը որոնում էր սոցիալիստական հասարակության մեջ՝ նյութական հարստությունից առաջ՝ **հոգեկան** հարստություն, **«ուրիշին»** նվիրաբերվելու կարողություն՝ օտարման ծանր իրավիճակի դեմ:

Սիրելի ուսուցչի ճանապարհով էր գնում նաև Եղիշե Չարենցը: Իր գրառումներից մեկում մեծ բանաստեղծը վերստին, ամենից առաջ, որոնում էր մարդկայինը, կյանքի բովանդակ իմաստը տեսնում դրա մեջ: Իսկ եթե այն չկա, այսինքն՝ մարդն աղքատանում է հոգեպես, օտարում «ուրիշին», նշանակում է, իրապես, վրա է հասնում իսկական ողբերգությունը, նշանակում է արվեստը, գիտությունն այլևս դառնում են անիմաստ: ««Մարդկություն» կոչվող կոլեկտիվի մեջ,— գրել է նա 1934-ին,— «տրագեդիա», «ողբերգություն» հասկացողությունը կարող է իմաստ ունենալ այնքա՛ն ժամանակ, որքան ժամանակ որ մարդիկ կդիտեն իրենց կյանքը **անձնական**, մի անկրկնելի **անհատի** տեսանկյունից:— ԱՅՍԻՆՔՆ, տվյալ մարդու մահը ա՛յն պատճառով է ինձ համար ողբերգություն, որովհետև նա ԻՆՁ համար **անկրկնելի** է: Իսկ եթե այդ ամենի վրա նայես **կողմնակի** աչքով.— «Ի՞նձ ինչ, որ ՔՈ հարազատը մահացել է...»— այստեղ վերջանում է **«տրագեդիան»**, և սկսվում է մարդկային կյանքի օրացույցը.

«Երեկ՝ ես, այսօր՝ դու, վաղը՝ նա...»:

Բայց մի՞թե մարդկային կյանքը կարող է բավարարվել «օրացույցով»...

Այդ դեպքում,— ընդհանրացնում էր բանաստեղծը,— ավելորդ է ոչ միայն «արվեստը», այլև **գիտությունը** և այն ամենը, որ կապված է մարդկային կյանքի **տրագեդիայի** հետ» (տե՛ս **Երկերի ժողովածու, հ.** 6, էջ 481):

Հոկտեմբերյան համաշխարհային նվաճումները՝ սոցիալիստական հասարակության ըստեղծումը, կոմունիստական իդեալն այսօր, իրապես դառնում են թումանյանական, տերյանական, չարենցյան հումանիստական վեհ իդեալների կենսագործման ռեալ հող, դառնում մարդու մարդկայնացման ռեալ հիմք:

Թումանյանի, Չարենցի, Բակունցի կրտսերագույն եղբայրը՝ Հրանտ Մաթևոսյանը, իր հումանիստական իդեալը կառուցում է ահա այդ ռեալ հողի վրա՝ սոցիալիստական իրականության, կոմունիստական իդեալի վրա, դարավոր ավանդների, բնության, հասարակական կյանքի կայուն արժեքների վրա:

Մաթևոսյան-արվեստագետն ստեղծում է



խորքային, հիմքային գրականություն, մաքառման գրականություն: Գրողի քննադատությունը ևս տոգորված է մեր, սոցիալիստական հասարակության հաստատման պաթոսով, ամբողջ սրությամբ և ուժով ուղղված է սպառողական հոգեբանության, ընչաքաղցության, կարիերիզմի դեմ, մանր ու մանրատված մարդու, նաև՝ «անօդ, անկյանք», ապազգային գրականության դեմ: Նրա ռեալիստական արվեստը (և ոչ միայն նրա) էապես տարբերվում է դասական, ավելի ճիշտ՝ քննադատական ռեալիզմից, որի պաթոսն էր բուրժուական հասարակարգի բացասումը: Հայրենասեր քաղաքացուն, բնականաբար, մշտապես անհանգստացնում են մեր կյանքում դեռևս նկատվող բացասական երևույթներն ու արատները, որոնք ստվերարկում են մեր հասարակության հարաճուն ընթացքը (**Սկիզբը, Ալխո**): Դրանց վերացումն, անշուշտ, կպահանջի անդուլ ջանքեր, կպահանջի հետևողական, անհաշտ պայքար, որի երդվյալ ջատագովն է Հրանտ Մաթևոսյանը:

Արժե, ուրեմն, մարտնչել մարդու բախտի համար, Արայիկի (**Սկիզբը**) գալիք երջանկության համար, Արայիկ, որ անխոցելի է բնության մեջ, եղնիկների պուրակում, նրանց հետ՝ ներդաշն ու ամբողջական, մաքուր ու անաղարտ, բայց հենց որ դուրս է գալիս հասարակության մեջ, ենթարկվում է քամահրանքի, ծեծկռտուքի, դառնում արնաշաղախ, պղտորվում է նրա պատանեկան հոգու ջինջ երկնակամարը:

Այսօր, արդարև, ստեղծվում են տասնյակ երկեր՝ մարդու նոր սխրանքների, նվիրական ավանդների մասին: Իբրև օրինաչափ մի երևույթ՝ նկատելի է, որ գրականության, արվեստի նոր սերունդը վերստին ավանդներին է դիմում հատկապես հասարակական կյանքի շրջադարձային պահերին: Եվ այդ դիմումը ժողովրդի կենսունակության, գեղարվեստական զարգացման նոր ու բարձր չափանիշներից է:

Գրական նոր սերնդի նման վերաբերմունքը ավանդների հանդեպ, անտարակույս, ուրվագծում է գրականության զարգացման պայծառ հորիզոններ, հաղորդում նրան կենսական հզոր ուժ, ինչպես առասպելական կաթնաղբյուրը՝ վիպական Սասունցի Դավթին: Հրանտ Մաթևոսյանի ուժը դրա մեջ է— ներթափանցումն ավանդների խորքը, կյանքի էության մեջ, գոյի, կեցության հիմքերի պաշտպանության մեջ: «Վարթանես պապի կերպարի բացահայտումը,— ասում է նա,— բացահայտումն է բոլոր անհատների... Ալիխանյանի մեջ կա արդեն Վարթանես պապը, կան նախնիները» («Գրական թերթ», 1968, № 37): Մաթևոսյանն աշխարհը դիտում է ամբողջության մեջ՝ հակադրությունների ու բախումների, բաժանումների ու միացումների մեջ: «Երկպառակությունը, թշնամությունը փորձում են քայքայել նրան, իսկ սերը միացնում է կտրված թելի ծայրերը»: Հոր ու մոր հառաչանքի մեջ արվեստագետը լսում է սերունդների հառաչանքը: «Նրան ցնցում է «տոհմի հառաչանքը»՝ բուն կյանքի հառաչանքը,— իրավացի նկատված է «Լիտերատուրնայա գազետա»-ի 1979 թ. № 13-ում,— դա հակամարտության, արյունների խաչաձևման, նրանց մեջ տարբեր նախահիմքերի մրցության տառապանքների հառաչանքն է... «Տոհմ» բառը, «տոհմ» հասկացությունը Մաթևոսյանի համար ունեն առանցքային նշանակություն: Դա ո՛չ միայն մարդկանց տոհմն է, ընտանիքի պատմությունն է, այլև այն ամենը, ինչ ծնվել է արևի տակ»:

**Մեծամոր** վիպակ-էսսեն կամ էսսե-վիպակը, իրավ, պատմական անցյալի «հին» և նորաստեղծ սոցիալիստական ավանդների օրգանական հյուսվածք է: Հայ ժողովրդի կյանքի հեռավոր ու ներկա էջերը «արյան հիշողությամբ» գալիս, հանգուցվում են, ներթափանցվում ու մերվում, ստեղծելով հինավուրց և վերածնված ժողովրդի ամբողջական, զարմանալի կենդանի ու խոսուն պատկերը՝ լի ողբերգությամբ ու սխրանքներով: **Մեծամորը** Մաթևոսյան-արվեստագետի հայրենասիրական-նվիրական զգացումների հորդում-ընդվզումն է՝ այլազան նվաճողների քամահրանքի, դիվական բռնությունների դեմ, ինչպես և հիմն՝ ազգային ուժի, արժանապատվության, ազգային սոցիալիստական վերածնության: Հայ ժողովրդի անցյալի մենակության ու որբության անմխիթար զգացմունքներն այսօր վերաճել են սովետական բովանդակ երկրի հզորության ներդաշն զգացումների:

«Լուսաստղ մոլորակը, Քաջարանի մոլիբդենը,— ազգային արժանապատվության խոր զգացողությամբ գրում է Մաթևոսյանը,— աստղագնաց հրթիռի զրահի մեջ: Ռուլինի ոսկին, Մարտիրոս Սարյանը, Սարյանի ծաղիկները, Թոնդրակյան համաշխարհային շարժումը: Սասմա խելառ քաջերի վեպը... Չարենցը... մատյանները, երգերը... մեր բանաստեղծությունը, մեր Կոմիտասը...»:

Մաթևոսյանը դրսևորում է պատմական հըստակ կողմնորոշում, խոր գիտակցում, թե ինչպես սոցիալիստական հասարակության մեծ ընտանիքում բարգավաճում է հայ ժողովուրդը՝ պահպանելով իր ազգային դեմքը, հայ մարդը՝ իր ստեղծագործական անհատականությունը, որպես ազգային հարստության օրինական և միակ ժառանգորդն ու վերակերտողը:

«— Հե՞րն անիծած, հիսուն տարվա մեռել Թալիաթն ով է, որ այնտեղից այստեղ թու-

նավորի իմ կենաց բաժակը... ների անիծած, ունես կանգնելու տեղ, այս հազարամյա կավոտ այգիներից պոկիր մի ողկույզ շեկ խաղող, մատներիդ մեջ պահիր մի բաժակ կոնյակ արևի դեմ, կանգնիր լավաշհաց փռած հովտում Նոյի լեռան կողքին և ասա. ես ե՛ս եմ...

...Արեգակի տակ այս շոգ երկիրը լցվել է առողջ աղջիկներով և նրանց ողորկ թևերին ծաղկապատվաստի առողջ հետքերով քաղաքակրթությունը դրել է իր հաղթանակի զույգ կնիքը...»:

Եվ ապա՝ «Վատիկանը բարեհաջող վերադարձ է մաղթում տիեզերագնացներին»: Այնուհետև. «Համաշխարհային մեծ խառնակությունը պարզվել էր, օվկիանոսները հին խաղաղ շեշտով ծեծում էին իրենց ափերը, Գերմանիան գոց աչքերով մարսում էր պարտությունը, ռուսական սոցիալիզմի գոյությունը հանդարտ ներծծվում էր աշխարհի գիտակցությանը, նոր սահմանների մազութած սյուները խամրում էին ու բուրում անսկիզբ մշտականության պատրանք...»:

Պատմության զարգացման անկասելի ընթացքը արվեստագետը պատկերում է ժամանակի երեք չափումների՝ անցյալի, ներկայի, ապագայի մեջ, մարմնավորում իր խորապես ինքնատիպ պատկեր-կերպարներում— մայր Աղունի, պապ Ավետիքի, կրտսեր եղբոր՝ Արայիկի, գոմեշի կերպարներում, որպես հոկտեմբերյան նվաճումների, գիտատեխնիկական հեղափոխության. շրջափուլի գեղարվեստական նշանակալից ընդհանրացումներ՝ ընդդեմ դոգմատիզմի, նահապետական ամեն քարացածության, պատկեր-կերպարներ, որ դրսևորում են արձակագիր Մաթևոսյանի լայն, կենսահաստատ պատմահայացքը:

Ծմակուտն, անկասկած, կդառնա նվիրական անուն, ինչպես Յոկնապատոֆը Ուիլյամ Ֆոլկների, Յասնայա Պոլյանան՝ Լև Տոլստոյի արվեստի հզորության ուժով: «Փոքրիկ Ծմակուտում,— ասված է «Լիտերատուրնայա գազետա»-ի նշված համարում,— կերտվում է մարդկության պատմությունը, թեև դա նաև մեր օրերի պատմությունն է, Հայաստանի պատմությունը, կարելի է ասել պարզապես մի ընտանիքի պատմություն, որը Մաթևոսյանի մոտ ստանում է. մերթ այս, մերթ այլ անուններ... Մաթևոսյանի աշխարհը ճշմարիտ է, բնական... նրա արձակի իմաստությունը բերնե-բերան լցված է կյանքով... խտացած, ինչպես նեկտարն է խտանում մեղրի մեջ... թեև Մաթևոսյանի վիպակներն ու պատմվածքներն ունեն (ձևական) սկիզբ ու ավարտ,— շարունակում է հոդվածագիրը,— սյուժեն, սակայն, նրա համար ոչինչ չի նշանակում... նրա համար կարևորը փիքսել, խտացնելն է ցրիվ եկող կյանքը՝ սեղմել խոսքի մեջ, կերպարում և ամբողջովին մեզ վերադարձնել նրա գույնն ու բույրը...»:

Ծմակուտը՝ հայրենի օջախը, արդարև, դառնում է Մաթևոսյանի ստեղծագործության անսպառ զինանոցը: Այդտեղից է գրողը ճանաչում կյանքը, հասկանում մարդկային հարաբերությունները, տեսնում աշխարհի հեռաստանները, այդտեղից է հայտնագործում իրերի, երևույթների էությունը մարմնավորող ծմակուտյան հարուստ պատկերներն ու կերպարները՝ խորապես ինքնատիպ, խորապես ռեալիստական, որպիսիք հարյուրավոր նուրբ ու աներևույթ թելերով միաձուլվում ու հարազատ ձայներով են խոսում ժողովրդի սրտի հետ:

**Մեծամորը,** ինչպես և Մաթևոսյանի յուրաքանչյուր երկ, առանձնապես **Գոմեշը, Ծառերը,** հզոր տաղանդի արգասիք են, ուր կյանքը նոր տեսանկյունից է դիտված ու իմաստավորված:

«Ամեն դար,— սերունդներին է ավանդել Հայնրիխ Հայնեն,— ձեռք բերելով նոր գաղափարներ, ձեռք է բերում և նոր աչքեր»: Մաթևոսյանը, ահա, նոր դարաշրջանի, նոր գաղափարների, ավելի կոնկրետ՝ կոմունիստական հումանիզմի աչքերով է դիտում մեր կյանքի մեծ ընթացքը, թափանցում պատմական ճշմարտության խորքը և Ծմակուտից ողջ մարդկությանը պարզում իր ստեղծագործության բարոյահումանիստական գոյափիլիսոփայության հզոր փարոսը՝ ընդդեմ էգոիզմի, մեր սոցիալիստական առաջընթացը խոչընդոտող երևույթների:

Հրանտ Մաթևոսյանի ստեղծագործությունները արձագանքում են ժամանակի կենսաթրթիռ պահանջներին: ՍՄԿԿ Կենտկոմն իր **«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին»** որոշմամբ ոգեշնչում, մղում է գրողներին՝ առավել խորությամբ արտացոլելու մեր կյանքը, ստեղծելու սոցիալիստական ռեալիզմի արվեստին արժանի նորանոր գործեր: Գրողի «...գլխավոր խնդիրն է,— ասված է այդ որոշման մեջ,— սովետական ժողովրդին, յուրաքանչյուր նոր սերնդի զինել պատմական ճշմարտության անպարտելի զենքով»:

Արյունով, ավյունով կերտված, մարդու բախտի հանդեպ անկեղծ ջերմությամբ ու մտահոգությամբ տոգորված Մաթևոսյանի ողջ ստեղծագործությունը՝ որպես հաստատումն սոցիալիստական իրականության անկասելի առաջընթացի և որպես հիմն մարդու, հայրենիքի, խաղաղության, որպես հասարակական նոր հոգեբանության, իր ժողովրդի գեղարվեստական նոր մտածողության հարազատ ցոլացում, ճեղքում է ազգային պատնեշները, դուրս գալիս համաշխարհային ասպարեզ:

# 1979 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 109-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ







## ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 60-ԱՄՅԱԿԸ



## ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒԼԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ



## ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 08746 Պատվեր 2841* **Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.:**
**Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:** *Ստորագրված է տպագրության 11/XII 1979 թ.:*


# Նոր գրքեր

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի ակտուալ հարցերը: *Հ. 1, «Հայաստան» հրատ., 1979:*

Ս. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ.— Հայկական ՍՍՀ տնտեսական կապերը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ— Շահութաբերության ցուցանիշները: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ե. ՍՄԻՌՆԻՑԿԻ— Արդյունավետության հնգամյակ, որակի հնգամյակ: *Բառարան-տեղեկատու: «Հայաստան» հրատ., 1979:*

Ս. ԲԵԳՅԱՆ, Ա. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ— Տեղական սովետների գործունեությունը սոցիալիստական օրինականության և քաղաքացիների շահերի պաշտպանության ոլորտում: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Վ. ՊՈՂՈՍՅԱՆ— Ֆրանկֆուրտյան դպրոցի փիլիսոփայական կոնցեպցիաների քննադատության շուրջը: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Իրավաքաղաքական հարցերը Բ. Կնունյանցի և Ալ. Մյասնիկյանի աշխատություններում: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ի. ԲԱԼՅԱՆ— Դմիտրի Ախշարումով: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ա. ՄԱՐՈՒԹՅԱՆ— Եղիշե Չարենցի չափածոյի լեզուն և ոճը: Ե., *«Սովետական գրող», 1979:*

Ն. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Աքովյանի պոետիկան: *Ե., «Սովետական գրող», 1979:*

Հայոց լեզվի համեմատական քերականության հարցեր: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

**История Коммунистической партии Советского Союза.** М., Политиздат, 1979.

**Ф. ЭНГЕЛЬС — Людвиг Фейербах и конец классической немецкой философии.** М., Политиздат, 1979.

**Друг большой, заботливый.** Переписка Н. К. Крупской с пионерами. 1924—1939 гг., М., «Мол. гвардия», 1979.

**Л. КУНЕЦКАЯ, К. МАШТАКОВА — Мария Ульянова.** М., «Мол. гвардия», 1979.

**Об охране окружающей среды.** Сборник документов партии и правительства. 1917—1978 гг., М., Политиздат, 1979.

**Ш. РАШИДОВ — Язык нашего единства и сотрудничества.** М., Политиздат, 1979.

**Социализм и идеологическая борьба: тенденции, формы и методы.** Коллективная монография. М., «Наука», 1979.

**А. РУМЯНЦЕВ — Социальные и экономические проблемы современности.** Изд. 2-е, М., «Наука», 1979.

**Г. КАЗАРЯН — Армянское общественно-политическое движение в 50—60-х годах XIX века и Россия.** Изд. ЕГУ, 1979.

**И. КОВАЛЕНКО — Очерки истории коммунистического движения в Японии до второй мировой войны.** М., «Наука», 1979.

**В. КОЛЫЧЕВ — Партийно-политическая работа в Красной Армии в годы гражданской войны. 1918—1920.** М., «Наука», 1979.

**Н. КРЫЛОВ — Сталинградский рубеж.** («Военные мемуары»), М., Воениздат, 1979.

**А. БОГОМОЛОВ, Н. ГАВРИЛОВА, Г. КОРОЛЕВ — Германская Демократическая Республика.** Справочник. Изд. 2-е, доп., М., Политиздат, 1979.

**Н. ЕРМОШКИН — Бангладеш: годы борьбы и становления** (1966——1974), М., «Наука», 1979.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՔԱՅԼՈՂ ՄԵՔԵՆԱ

*Քայլող մեքենաների սկզբունքորեն նոր կոնստրուկցիա է ստեղծել մեքենագիտության պետական գիտահետազոտական ինստիտուտը: Այն ագապտացիոն ավտոմատների ապագա սերնդից է և նախատեսված է գյուղատնտեսական աշխատատար օպերացիաների համար: Ծալվող վեց «ոտքերով» ռոբոտն ապահովում է շասսիակրի հորիզոնական դիրքը՝ կտրտված տեղանքի բոլոր իրավիճակներում: Այն հեշտությամբ անցնում է փոսերի ու քարերի վրայով: Կարևոր է նշել նաև, որ նման շասսին կառավարվում է առանց ԷՀՄ-ի. ուղղահայաց ոտքերը չեն խանգարում անընդհատ ու սահուն շարժվելու նոր ռոբոտին: Մի խոսքով, լեռնային թեքություններում անվտանգ աշխատանքի համար մեր երկրագործներն իրենց տրամադրության տակ կունենան իդեալական մեխանիզմների մի ամբողջ շարք՝ քայլող ռոբոտներ, որոնց համանմանը չկա համաշխարհային պրակտիկայում:*

## ՎԱՌԵԼԻՔ՝ ԹԱՓՈՆՆԵՐԻՑ

*Ռումինական Յասի քաղաքի հոսող ջրերի մաքրման կայանի աշխատակիցները նկատել են, որ նստվածքի մշակման և զտման համար նախատեսված երկու կոլեկտորներից օրվա ընթացքում արտածվում է 1500 խորանարդ մետր գազ, հիմնականում՝ մեթան: Որոշվեց օգտագործել այդ տաք գազը: Կայանի աշխատողները մոնտաժեցին բիոգազը որսացող մի սարք: Գազն սկսեցին օգտագործել մազութի փոխարեն՝ կայանի ջեռուցման և այլ կարիքների համար: Մեկ տարում տնտեսվեց 220 տոննա մազութ: Առայժմ քաղաքի ոչ բոլոր կեղտաջրերն են մշակվում կոլեկտորներում: Նախատեսվում է կառուցել ես վեց կոլեկտոր և դրանց միջոցով կորզվող բիոգազերի ծավալը մեկ օրում հասցնել 30 հազար խորանարդ մետրի:*

*Կեղտաջրերի նստվածքից գոյացող բակտերիաների արտադրած գազի օգտագործման շրջանակը շուտով էականորեն կընդլայնվի. այն կօգտագործվի ասֆալտի և ապակու ջարդվածքի հալման վառարաններում, որի շնորհիվ քաղաքում կընդլայնվի երկրորդական հումքից ստացվող ասֆալտի և ապակե իրերի արտադրությունը: Այն հնարավորություն կընձեռի տարեկան տնտեսելու ևս 800—1000 տոննա մազութ:*

## ԵՐԿՐԱՇԱՐԺԸ՝ ՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՏԱԿ

*Ճապոնիայում ստեղծվել է երկրաշարժերի կանխագուշակման ստորջրյա սիստեմ: 140 կիլոմետր երկարությամբ ստորգետնյա կաբելի վրա մոնտաժված են երկրաշարժացույցեր և մակընթացությունների ու տեղատվությունները որոշող սարքեր: Կաբելը 2.200 մետր խորության վրա է: Այն Տոկիոյի օդերևութաբանական վարչությանն է հաղորդում ո՛չ միայն ստորգետնյա ամենաաննշան ցնցումները, այլև 2000 մետրից ավելի խորության վրա ջրի տատանումները՝ մինչև 1 սմ ճշգրտությամբ:*

## ԿԱՐԹԱԹԵԼՈՎ ՀՆՁԻՉ ՄԵՔԵՆԱ

*Ամերիկյան «Վիդ Իտեր» ֆիրման մշակել է խոտհնձի նոր, թեթև մեքենա, որը բանում է հզոր գազաշարժիչով: Մեքենան խոտը կտրում է նեյլոնե ամուր կարթաթելով: Այն համեմատաբար ավելի անվտանգ է, քան մետաղաշեղը գործիքը: Դրանով կարելի է աշխատել նույնիսկ այնպիսի տեղանքում, որն անմատչելի է նման այլ սարքերի համար:*

## ԶԱՐԿԵՐԱԿԻ ՊՐՈԹԵԶ

*Ամերիկյան «Գուդիր» ընկերության հետազոտողներն ստեղծել են արհեստական զարկերակի պատրաստման նոր մեթոդ. ծովաոզնուց վերցված ծակոտկեն ասեղների մեջ ներարկում են կաուչուկ: Այդպիսով, ստացվում է կաուչուկե զարկերակի պրոթեզ՝ համանման ծակոտկեն կառուցվածքով: Այն զգալի առավելություններ ունի: Մարմնի առողջ մասի կենդանի հյուսվածքը ներաճում է այդպիսի պրոթեզում և ոչ թե ճնշում այն, ինչպես հասարակ կաուչուկե խողովակներ օգտագործելիս:*